# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**12**

ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

**ИЗДАЕТСЯ С 1922 г.**
**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

С О Д Е Р Ж А Н И Е







# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ

# ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական Միության ղեկավարությունը սովետական մարդկանց և մյուս ժողովուրդներին արդեն ի գիտություն է հայտնել ամերիկյան ներկայիս վարչակազմի միլիտարիստական կուրսի իր գնահականները և ԱՄՆ-ի կառավարությանն ու նրա հետ համտեղ հանդես եկող արևմտյան երկրներին նախազգուշացրել է այդ կուրսի վտանգավոր հետևանքներից:

Սակայն Վաշինգտոնը, Բոննը, Լոնդոնը և Հռոմը չանսացին բանականության ձայնին. ԳՖՀ-ի, Մեծ Բրիտանիայի և Իտալիայի տերիտորիայում սկսվում է միջին հեռահարության ամերիկյան հրթիռների տեղաբաշխումը: Այսպիսով, եվրոպական մայրցամաքում ամերիկյան «Փերշինգների» և թևավոր հրթիռների հայտնվելը կատարված փաստ է դառնում:

Համարյա քառասուն տարի, ավելի, քան երբևիցե ժամանակակից պատմության մեջ, Եվրոպան ապրում է խաղաղ պայմաններում: Դա հնարավոր դարձավ սոցիալիստական ընկերակցության երկրների հետևողական խաղաղասիրական քաղաքականության, մայրցամաքի խաղաղասեր ուժերի ջանքերի, ինչպես նաև Արևմուտքի ողջամիտ քաղաքագետների իրատեսական դիրքորոշման շնորհիվ: Հյուսիսատլանտյան դաշինքի պետությունների և Վարշավայի պայմանագրի պետությունների միջև Եվրոպայում հաստատված ռազմական ուժերի, այդ թվում՝ միջուկային ուժերի մոտավոր հավասարակշռությունն օբյեկտիվորեն ծառայել է Եվրոպայի անվտանգության և կայունության գործին:

Այժմ ԱՄՆ-ը և ամբողջությամբ վերցված ՆԱՏՕ-ն ձեռնարկում են մի քայլ, որի նպատակն է կշեռքի նժարը հակել իրենց կողմը: Սովետական Միության և նրա դաշնակիցների սահմանների մոտակայքում տարածվող միջուկային հրթիռներն ամենևին էլ Արևմտյան Եվրոպայի պաշտպանության համար չեն նախատեսված. նրան ոչ ոք չի սպառնում: Եվրոպական հողում ամերիկյան հրթիռների տեղաբաշխման հետևանքով կմեծանա ոչ թե Եվրոպայի անվտանգությունը, այլ այն բանի իրական վտանգը, որ ԱՄՆ-ը աղետ կբերի Եվրոպայի ժողովուրդների գլխին:

Երկու համաշխարհային պատերազմներում էլ Ամերիկայի Միացյալ Նահանգների տերիտորիային ավերմունքի հրդեհը չդիպավ: Վաշինգտոնում հիմա էլ կուզենային կարծել, թե Եվրոպայում տարածելով միջին հեռավորության իրենց հրթիռները և դրանով իսկ լրացուցիչ միջուկային սպառնալիք ստեղծելով սոցիալիստական երկրների համար, իրենց կհաջողվի սեփական տնից վանել պատասխան հարվածը: Իսկ ինչ վերաբերում է ԱՄՆ-ի արևմտաեվրոպական դաշնակիցների անվտանգությանը, ապա դա, ըստ երևույթին, ամերիկյան ղեկավարներին հետաքրքրում է ճիշտ այնքանով, որքանով արևմտաեվրոպացիները կկարողանան իրենց կյանքով, իրենց քաղաքներով նվազեցնել հատուցումը հենց Միացյալ Նահանգներին, եթե Վաշինգտոնը

գայթակղվեր միջուկային պատերազմ սանձազերծել՝ այն շահելու պատրանքային հույսով:

Արևմտյան Եվրոպայում ամերիկյան միջուկային հրթիռների տարածումը բնավ էլ այնպիսի քայլ չէ, որը թելադրված լինի ի պատասխան Եվրոպայում երկու կողմերի ուժերի ներկայիս հարաբերակցության առթիվ Արևմուտքում իբր գոյություն ունեցող ինչ-որ մտահոգության: Բազմիցս կոնկրետ թվերով ապացուցվել է, և դրան համամիտ են Արևմուտքի քաղաքական շատ գործիչներ ու մասնագետներ, որ ներկայումս Եվրոպայում ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի միջև մոտավոր հավասարություն է պահպանվում միջին հեռահարության միջուկային միջոցների ասպարեզում, իսկ միջուկային լիցքերի ոլորտում էական գերակշռությունը ՆԱՏՕ-ի կողմն է: Այնպես որ, եթե ինչ-որ մտահոգվողներ կարող են լինել, ապա դրանք պետք է լինեն Վարշավայի պայմանագրի երկրները, որոնց սպառնում են ՆԱՏՕ-ի պետությունների ռազմական մեքենաները:

Գնահատելով այս ամենը՝ Սովետական Միությունը, սոցիալիստական ընկերակցության մյուս երկրները չեն կարող աչք փակել նաև այն բանի հանդեպ, որ Վաշինգտոնը «խաչակրաց արշավանք» է հայտարարել սոցիալիզմի՝ որպես հասարակական սիստեմի դեմ, և որ նրանք, ովքեր այժմ կարգադրություն են արել նոր միջուկային սպառազինություններ տեղաբաշխել մեր տան շեմի մոտ, իրենց գործնական քաղաքականությունը կառուցում են այդ անխոհեմ նախադրույթի վրա: Երևում է, որ ՆԱՏՕ-ի մի շարք երկրների կառավարությունները, Եվրոպայում տեղաբաշխելով «Փերշինգ—2» հրթիռներ և թևավոր հրթիռներ, կուզենային այդ արկածախնդրական նախադրույթի համար հրթիռամիջուկային կոնկրետ հիմք ստեղծել:

Սովետական Միությունը, մյուս սոցիալիստական երկրները կարո՞ղ են արդյոք հաշվի չառնել այդ վտանգը: Ո՛չ, չեն կարող: Ահա թե ինչու յոթ սոցիալիստական երկրների բարձրաստիճան կուսակցական ու պետական ղեկավարները 1983 թվականի հունիսի 28-ին Մոսկվայում կայացած հանդիպման ժամանակ հայտարարեցին, որ իրենք ոչ մի պարագայում թույլ չեն տա ՆԱՏՕ-ի բլոկի ռազմական գերազանցություն Վարշավայի պայմանագրի երկրների նկատմամբ:

ԳՖՀ-ի, Անգլիայի, Իտալիայի կառավարությունները, հավաստելով իրենց համաձայնությունը իրենց երկրներում ամերիկյան հրթիռների տեղաբաշխմանը, չէին կարող չիմանալ, որ ԱՄՆ-ը հենց սկզբից չէր ցանկանում Եվրոպայում միջուկային սպառազինությունների վերաբերյալ փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածության գալ և Ժնևի բանակցություններում ու դրանցից դուրս ամեն ինչ արեց, որ այդպիսի պայմանավորվածություն չլինի: Նրանք չէին կարող նաև չիմանալ, որ Սովետական Միությունը, նրա դաշնակիցները անպայման անհրաժեշտ միջոցներ կձեռնարկեն իրենց անվտանգությունը պաշտպանելու համար, ԱՄՆ-ին և ամբողջությամբ վերցված ՆԱՏՕ-ին թույլ չեն տա խախտել Եվրոպայում գոյություն ունեցող ուժերի մոտավոր հավասարակշռությունը:

Մենք նաև պարզորոշ հայտարարեցինք, որ Արևմտյան Եվրոպայում ամերիկյան նոր հրթիռների հայտնվելը անհնար կդարձնի այն բանակցությունների շարունակումը, որ վարվում էին Ժնևում Եվրոպայում միջուկային սպառազինությունների շուրջը:

Վերջին օրերս ԳՖՀ-ի, Անգլիայի և Իտալիայի կառավարությունների ընդունած որոշումները միանշանակ ասում են, որ իրենց սեփական ժողովուրդների կամքին հակառակ, իրենց երկրների անվտանգության շահերին հակառակ և եվրոպական ու ընդհանուր խաղաղության շահերին հակառակ այդ կառավարությունները «կանաչ լույս» տվեցին ամերիկյան հրթիռների տեղակայմանը: Դրանով իսկ նրանք ԱՄՆ-ի կառավարության հետ միասին իրենց վրա վերցրին ողջ պատասխանատվությունը կարճատես քաղաքականության այն հետևանքների համար, որոնցից վաղօրոք նախազգուշացնում էր Սովետական Միությունը:



Հանգամանորեն կշռադատելով ստեղծված իրադրության բոլոր կողմերը՝ սովետական ղեկավարությունն ընդունեց հետևյալ որոշումները:

**Առաջին:** Քանի որ ԱՄՆ-ը իր գործողություններով վիժեցրեց Եվրոպայում միջուկային սպառազինությունների սահմանափակման բանակցություններում փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածության հասնելու հնարավորությունը, և այդ պայմաններում դրանց շարունակումը սոսկ քողածածկույթ կլիներ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մի շարք այլ երկրների՝ եվրոպական ու միջազգային անվտանգությունը խարխլելու նպատակ հետապնդող գործողությունների համար, Սովետական Միությունն անհնար է համարում իր հետագա մասնակցությունը այդ բանակցություններին:

**Երկրորդ:** Վերացվում են միակողմանի կարգով Սովետական Միության ստանձնած այն պարտավորությունները, որոնք նպատակ ունեին ավելի նպաստավոր պայմաններ ստեղծել բանակցություններում հաջողության հասնելու համար: Դրանով իսկ չեղյալ է հայտարարվում ՍՍՀՄ-ի եվրոպական մասում միջին հեռահարության սովետական միջուկային միջոցների տարածման մորատորիումը:

**Երրորդ:** ԳԴՀ-ի և ՉՍՍՀ-ի կառավարությունների հետ համաձայնեցնելով՝ կարագացվեն այդ երկրների տարածքում մեծ հեռահարության օպերատիվ-տակտիկական հրթիռների տեղաբաշխման նպատակով որոշ ժամանակ առաջ սկսված նախապատրաստական աշխատանքները, որոնց մասին արդեն հայտարարվել է:

**Չորրորդ:** Քանի որ Եվրոպայում իր հրթիռները տեղաբաշխելու միջոցով ԱՄՆ-ը մեծացնում է միջուկային սպառնալիքը Սովետական Միության համար, հաշվի առնելով այդ հանգամանքը՝ համապատասխան սովետական միջոցներ կծավալվեն օվկիանոսային շրջաններում ու ծովերում: Մեր այդ միջոցներն իրենց բնութագրերով համարժեք կլինեն այն սպառնալիքին, որ մեզ համար ու մեր դաշնակիցների համար ստեղծում են Եվրոպայում տեղաբաշխվող ամերիկյան հրթիռները:

Բնականաբար, կձեռնարկվեն ՍՍՀՄ-ի և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների անվտանգության ապահովման նաև այլ միջոցներ:

Ձեռնամուխ լինելով մեր ընդունած որոշումների կատարմանը, մենք հայտարարում ենք, որ սովետական կողմից պատասխան միջոցները կկիրառվեն խստորեն այն շրջանակներում, որ կթելադրվեն ՆԱՏՕ-ի երկրների գործողություններով: Սովետական Միությունը, և մենք այդ նորից ենք շեշտում, չի ձգտում ռազմական գերազանցության, և մենք կանենք սոսկ այն, ինչը միանգամայն անհրաժեշտ է, որպեսզի ռազմական հավասարակշռությունը չխախտվի:

Եթե ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի մյուս երկրները պատրաստակամություն ցուցաբերեն վերադառնալ այն դրությանը, որ գոյություն ուներ նախքան Եվրոպայում ամերիկյան միջին հեռահարության հրթիռների տեղաբաշխումն սկսելը, ապա Սովետական Միությունը նույնպես պատրաստ կլինի անելու այդ: Այդ դեպքում վերստին ուժի մեջ կմտնեին նաև Եվրոպայում միջուկային սպառազինությունների սահմանափակման ու կրճատման հարցերի վերաբերյալ ավելի վաղ մեր արած առաջարկությունները: Այս դեպքում, այսինքն՝ նախկին դրության վերականգնման դեպքում, իրենց գործողությունը նաև կվերսկսեին այդ բնագավառում ՍՍՀՄ-ի ստանձնած միակողմանի պարտավորությունները:

Սովետական Միությունն ամենայն որոշակիությամբ ու հաստատակամությամբ հայտարարում է, որ հավատարիմ է մնում սպառազինությունների, ամենից առաջ միջուկային սպառազինությունների, մրցավազքը դադարեցնելու, միջուկային պատերազմի վտանգը նվազեցնելու և վերջին հաշվով լիովին վերացնելու սկզբունքային գծին: Նա այսուհետ ևս իր բոլոր ջանքերը կգործադրի այդ ազնիվ նպատակներին հասնելու համար:

Սովետական Միությունը առաջվա պես հանդես է գալիս Եվրոպայում միջուկային սպառազինությունների հարցի ամենաարմատական լուծման օգտին: Նա կրկնում է Եվրոպան առհասարակ միջուկային զենքից՝ թե՛ միջին հեռավորության և թե տակտիկական զենքից, զերծ դարձնելու իր առաջարկությունը:

Սովետական ղեկավարությունը ԱՄՆ-ի և Արևմտյան Եվրոպայի պետությունների ղեկավարներին կոչ է անում՝ մի անգամ ևս կշռադատել այն բոլոր հետևանքները, որոնցով սպառնում է նրանց սեփական ժողովուրդներին, բովանդակ մարդկությանը Եվրոպայում ամերիկյան նոր հրթիռների ծավալման պլանների իրականացումը:

Մենք արդեն այժմ էլ ապրում ենք չափազանց դյուրաբեկ աշխարհում: Ուստի պատասխանատու պետական գործիչները պետք է գնահատեն տեղի ունեցողը և բանական որոշում ընդունեն: Մարդկությանն ահեղ վտանգից կարող է և պետք է փրկի միայն մարդկային բանականությունը: Նրանց, ովքեր աշխարհը հրում են սպառազինությունների հետզհետե ավելի վտանգավոր մրցավազքի ուղին, կոչ ենք անում հրաժարվել իրենց կամքը մյուս ժողովուրդներին ու պետություններին թելադրելու համար այդ միջոցով ռազմական գերազանցության հասնելու անիրականանալի մտադրություններից:

Սովետական Միությունը համոզված է, որ խաղաղությունը կարելի է կայունացնել և ժողովուրդների անվտանգությունը երաշխավորել ոչ թե սպառազինությունների ուժեղացման և նորանոր զինատեսակների ստեղծման միջոցով, այլ, ընդհակառակը, գոյություն ունեցող սպառազինություններն անչափ ցածր մակարդակների հասցնելու միջոցով: Մարդկությունն ունի չափազանց շատ այնպիսի խնդիրներ, որոնք չեն լուծվում նյութական, մտավոր և այլ վիթխարի ռեսուրսների շեղման պատճառով միայն, և միջուկային ու մյուս սպառազինությունների արմատական կրճատման շուրջը պայմանավորվածությունների հասնելը այս առումով բարօրություն կլիներ բոլոր ժողովուրդների համար:

Սովետական ղեկավարությունը հայտարարում է, որ, կատարելով սովետական ժողովրդի կամքը, ինքն այսուհետ ևս ամեն ինչ կանի, որպեսզի հեռացնի պատերազմի վտանգը, պահպանի խաղաղությունը ներկայիս և գալիք սերունդների համար:

---

# ՈՂՋ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԸ, ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ՊԱՐՏՔԸ

**Կ. ՉԵՌՆԵՆԿՈ**
ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ,
ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐԸ* — *ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐԸ ՄԻՇՏ ԷԼ գրոհել են առաջադիմական գաղափարների օգնությամբ: Աշխարհի հեղափոխական վերակերտման մեջ, սոցիալիստական շինարարության բազմակողմանի պրոցեսում, նոր մարդու դաստիարակման գործում վառ կերպով դրսևորվում է մարքս-լենինյան գաղափարախոսության ստեղծագործական դերը:*

Դա այն գաղափարախոսությունն է, որը լուսավորում ու վեհացնում է մարդու բանականությունը, ազնվացնում նրա զգացմունքները, կազմակերպում միլիոնների կամքը:

Դա այն գաղափարախոսությունն է, որը հաստատում է հեղափոխական մտքի ու հեղափոխական գործողության միասնությունը:

Դա այն գաղափարախոսությունն է, որը սոցիալիստական հասարակությունը համախմբում է կոլեկտիվիստական սկզբունքներով, սոցիալական լավատեսության և խաղաղության գաղափարախոսությունը:

*Իր ողջ դաստիարակչական աշխատանքում ՍՄԿԿ-ն անփոփոխ կերպով ղեկավարվում է մարքսիզմի հիմնարար այն գաղափարով, որ մարդուն կերպավորում են ոչ թե հանգամանքներն ինքնին, այլ դրանց վերափոխմանն ուղղված պրակտիկ գործունեությունը: Հասարակական պրակտիկան մարքս-լենինյան ըմբռնմամբ ընդգրկում է ո՛չ միայն նյութական կենսապայմանների, այլև հենց իր՝ մարդու փոփոխությունը: Ուստի նոր մարդու կերպավորումը կոմունիստական շինարարության և՛ նպատակն է, և՛ պարտադիր պայմանը:*

*Լենինյան կուսակցության ուժի գլխավոր աղբյուրներից մեկը եղել և մնում է յուրաքանչյուր պատմական փուլի առանձնահատկությունները ստեղծագործաբար իմաստավորելու, գաղափարախոսական գործունեության այն կոնկրետ բովանդակությունը, ձևերն ու մեթոդները սահմանելու ունակությունը, որոնք առավել լրիվ չափով են համապատասխանում հասարակության պահանջմունքներին:*

*Մեր կուսակցությունն այդպես է գործել միշտ: Նա այդպես է գործում նաև այսօր:*

*I*

*Կուսակցության կյանքում խոշոր իրադարձություն, սոցիալական առաջընթացի ուղիով մեր երկրի առաջշարժման գործում կարևոր ուղենիշ հանդիսացավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հունիսյան (1983 թվական) պլենումը: Այն հանգամանորեն վերլուծեց մեր հասարակության զարգացման արդի փուլը և տվեց ապագայի պարզ ուղենիշները, նշեց նվաճումները և կուսակցական պահանջկոտությամբ քննության առավ գաղափարադաստիարակչական աշխատանքի թերությունները, հստակորեն որոշեց, թե ինչը և ինչպես պետք է անել*

այդ աշխատանքը զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում լուծվող մեծ ու բարդ խնդիրների մակարդակին հասցնելու համար։

Հենվելով մարքսիզմ-լենինիզմի արմատական սկզբունքների վրա, զարգացնելով ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի նոյեմբերյան (1982 թվական) պլենումի որոշումները, կուսակցությունը հունիսյան պլենումում առաջադրեց տեական նշանակություն ունեցող գաղափարախոսական գործունեության ծավալուն կոնցեպցիան։ Մեր գաղափարատեսական զինանոցը հարստացավ նոր խոր գաղափարներով, որոնք կապված են այսօրվա իրողության հետ և լուսավորում են հետագա առաջընթացի ուղին։

Էկոնոմիկայի, քաղաքականության և գաղափարախոսության բնագավառում հրատապ խնդիրների ու հեռանկարների ըմբռնման համար սկզբունքային նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառը պլենումում։ Այդ ճառն աչքի է ընկնում ներքին և միջազգային քաղաքականության ամենաբարդ պրոբլեմների նկատմամբ նորարարական մոտեցմամբ, ներկայի ռեալիստական գնահատմամբ ու ապագայի համարձակ, ռեալ միտումների վերլուծության վրա հիմնված գիտական կանխատեսությամբ։ Ճառի պարունակած կարևոր ընդհանրացումներն ու հետևությունները սահմանում են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության վրա կատարվող աշխատանքի հիմնական ուղղությունները, սոցիալ-տնտեսական արմատական խնդիրների հետ միասնական կոմպլեքսում խորապես բացահայտում են գաղափարախոսական գործունեության հանգուցային հարցերը։ Կուսակցական կոմիտեները պետք է ելնեն այն բանից, որ տնտեսական, կազմակերպական հարցերի ողջ կարևորությամբ հանդերձ գաղափարախոսական աշխատանքն ավելի ու ավելի է մղվում առաջին պլան։

Հունիսյան պլենումն ընթացավ կուսակցության և ժողովրդի անխախտ միասնության, մեր հասարակության համախմբվածության հետագա ամրապնդման իրադրության մեջ, սովետական մարդկանց հոգում հայրենասիրական ձգտում հարուցեց՝ ավելի եռանդուն ու հետևողական պայքար մղել նախանշված պլաններն իրականացնելու համար, որպեսզի մեր սոցիալիստական հայրենիքը դառնա է՛լ ավելի հզոր ու բարգավաճող։ Նրա գաղափարները բարերար ազդեցություն են գործում երկրի հասարակական-քաղաքական և հոգևոր-բարոյական ողջ մթնոլորտի վրա։ Կուսակցական կազմակերպություններում կոմունիստների ելույթների, բանվորներից, կոլտնտեսականներից, ժողովրդական տնտեսության մասնագետներից, գիտության և կուլտուրայի գործիչներից Կենտկոմում և մամուլի օրգաններում ստացվող նամակների և՛ բովանդակությունը, և՛ տոնը հնարավորություն են ընձեռում լիակատար վստահությամբ ասելու՝ պլենումի որոշումներն ընկալվել են խոր գոհունակությամբ։ Այս ամենը վկայում է այն մասին, որ պլենումում քննարկված հարցերը հրատապ են, մշակված միջոցներն արտահայտում են բոլոր աշխատավորների շահերը։

«ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառում, զեկուցման ու պլենումի որոշման մեջ արտացոլվել են մեզնից յուրաքանչյուրի մտքերն ու խոհերը,— կուսակցության Տոմսկի մարզային ու քաղաքային կոմիտեների միացյալ պլենումում շեշտեց «Սիբէլեկտրոմոտոր» գործարանի փականագործ-գործիքագործ Բ. Ի. Ստեպանովը։— Ինչպես նշվեց պլենումում, մենք պետք է ելնենք այն բանից, որ մեր հասարակության քաղաքացիների գիտակցության ձևավորումը ո՛չ միայն պրոֆեսիոնալների՝ գաղափարախոսների, պրոպագանդիստների, մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողների գործն է։ Դա ողջ կուսակցության խնդիրն է։ Եթե ողջ կուսակցության, նշանակում է նաև անձամբ յուրաքանչյուր կոմունիստի գործը։ Այսպես եմ ես հասկանում։ Համոզված եմ՝ շատ բանի կհասնենք, եթե յուրաքանչյուրն իր տեղում զբաղվի մարդկանց դաստիարակությամբ։ Նախ և առաջ՝ անձնական օրինակով, գործի նկատմամբ վերաբերմունքով»։

Իրենց կուսակցական պարտքն այսպես են հասկանում միլիոնավոր կոմունիստներ։

Պլենումի որոշումների քաղաքական կարևորագույն իմաստն այն է, որ գործադրվեն մասսաների աշխատանքային և հասարակական ակտիվության



պարունակած ստեղծագործական բոլոր ուժերը, հասնել այն բանին, որ բոլոր, այո՛, բոլոր աշխատավորները առավել նախաձեռնորեն մասնակցեն ստեղծարար խնդիրների իրականացմանը, որ յուրաքանչյուրը հարաճուն ավանդ ներդնի ընդհանուր գործում։

Կուսակցական ժողովներում, կուսակցական կոմիտեների պլենումներում և ակտիվի ժողովներում կոմունիստները բարձր պահանջկոտության դիրքերից վերլուծեցին գաղափարադաստիարակչական աշխատանքի վիճակը, ռեալիստորեն գնահատեցին դրա պլյուսներն ու մինուսները, սուր քննադատության ենթարկեցին խոսքի և գործի միջև եղած անհամապատասխանության կոնկրետ դրսևորումները, նշեցին գործողությունների բովանդակալից պլաններ։ Պլենումի արդյունքների գործարար, շահագրգռված քննարկման ժամանակ վառ դրսևորվեցին կոմունիստների կենդանի ստեղծագործական մտքի զգայումը, նրանց կոլեկտիվ բանականությունն ու փորձը, պրակտիկ գործերի նպատակամղվածությունը։

Ուշագրավ է, որ պլենումի նյութերի համակուսակցական քննարկման ընթացքում ընդգրկվել էր գաղափարախոսական պրոբլեմների լայն սպեկտր։ Ջափազանցություն չի լինի ասել՝ գաղափարադաստիարակչական աշխատանքի և ոչ մի հարց տեսադաշտից դուրս չմնաց, կյանքի որ կողմին էլ, որ վերաբերեր այն։ Արտահայտվել են հետաքրքրական նկատառումներ, հանձնարարականներ, դրսևորվել նախաձեռնություններ, որոնք նոր ու արժեքավոր շատ բան են մուծում գաղափարախոսական գործունեության ոլորտում։ Եվ առանձնապես կարևոր է, որ նախաձեռնությունները զարգանան, հանձնարարականները հետևողականորեն իրականացվեն, քննադատական դիտողությունները հաշվի առնվեն։ Կուսակցական կոմիտեները պարտավոր են մշտական վերահսկողություն սահմանել այդ աշխատանքի նկատմամբ։

Պլենումն ընդունել է կարևոր որոշումներ։ Դրանց իրագործման աշխատանքը ծավալվել է բոլոր կուսակցական կազմակերպություններում։ Ինչի՞ վրա է հարկավոր հատուկ ուշադրություն դարձնել այսօր։

Առաջին, պետք է բոլոր կոմունիստների գիտակցության մեջ արմատավորել, որ այդ որոշումները նախատեսված են տևական սիստեմատիկ աշխատանքի համար, որի գլխավոր բովանդակությունն է զարգացած սոցիալիզմի համակողմանի պլանաչափ կատարելագործումը։ Այդ աշխատանքը խարսխվում է այն հիմնարար տեսական ընդհանրացումների ու հետևությունների վրա, որոնք որոշում են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախապատրաստությունը։ Գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքի մակարդակը պայմանավորված է այն բանով, թե կոնկրետ միջոցառումներն ու գործողությունները որքան օրգանապես են կապակցվելու կուսակցության ողջ գործունեության այդ խոր հիմքի հետ։

Երկրորդ, անհրաժեշտ է ելնել այն բանից, որ գաղափարախոսական աշխատանքը կոմունիստական շինարարության անբաժանելի բաղկացուցիչ մասն է. Իսկ այդ նշանակում է, որ դրա բարելավումը դիալեկտիկորեն փոխկապակցված է մեր հասարակության տնտեսական ու սոցիալ-քաղաքական զարգացման հրատապ հարցերի լուծման հետ, սոցիալիստական ապրելակերպի հիմքերի ամրապնդման հետ։ Չէ՞ որ ձևապաշտությունը, շաբլոնը, մակերեսայնությունը, խոսքի ու գործի խզումը սկսվում են հենց այնտեղ, որտեղ դաստիարակչական խնդիրները մեկուսացվում են տնտեսական, սոցիալական, կազմակերպական խնդիրներից կամ լոկ մեխանիկորեն են զուգակցվում դրանց հետ։ Այստեղ հարկավոր է ամենօրյա քրտնաջան աշխատանք, որի էությունն է՝ մարդկանց սովորեցնել մտածելու սոցիալ-տնտեսական և քաղաքական լայն կատեգորիաներով, տնտեսական, սոցիալական և այլ խնդիրները փոխադրել դաստիարակչական գործողությունների լեզվի, իսկ դաստիարակչական խնդիրները՝ տնտեսական և կազմակերպական գործողությունների լեզվի։ Բոլոր կուսակցական կոմիտեները պետք է լրջորեն աշխատեն այս ոգով։

Երրորդ, գաղափարախոսական աշխատանքը միասնական ամբողջություն է։ Այն գործ ունի մարդու գիտակցության հետ, իսկ մարդկանց մտքերն ու զգացմունքները չի կարելի բաժանել զանազան գերատեսչությունների միջև։

Ուստի անհրաժեշտ է կարգավորել գաղափարախոսական հիմնարկների, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների՝ գաղափարադաստիարակչական կոմպլեքսի բոլոր օղակների սերտ փոխգործողությունը, աշխատանքի մեջ ներգրավել ամենալայն ակտիվ և մշտապես հենվել նրա վրա։

Չորրորդ, մասսայական միջոցառումների, ուսուցման զանազան ձևերում ընդգրկվածների միլիոնանոց թվերի ետևում, թերթերի, գրքերի, հանդեսների վիթխարի տպաքանակների ետևում, չխոսելով արդեն հսկայական լսարան ունեցող հեռուստատեսության մասին, միշտ պետք է տեսնել մարդուն՝ իր անկրկնելի անհատականությամբ ու ներաշխարհով, սեփական կենսափորձով, իր ուրախություններով ու դառնություններով, հոգսերով ու խոհերով։ Տեղին է հիշել, որ Լենինի համար բանվորներն ու գյուղացիները եղել են ոչ թե վերացական «պրոպագանդայի օբյեկտներ», «այլ եղել են կենդանի մարդիկ, որոնք շատ բան են ապրել, շատ բաների մասին մտածել և ուշադրություն են պահանջում իրենց կարիքների նկատմամբ» (Н. К. Крупская. О Ленине. Сборник статей и выступлений. М., Политиздат, 1979, стр. 160).

Հարկավոր է զարգացնել և հարստացնել մասսաների շրջանում տարվող աշխատանքի բոլշևիկյան ավանդույթները, բարձրացնել պրոպագանդայի մոբիլիզացնող ու կազմակերպող դերը։ Ագիտատորը, պրոպագանդիստը, կուսակցական հրապարակախոսը այսօր, ինչպես և ինդուստրացման ու կոլեկտիվացման, Հայրենական մեծ պատերազմի և հետպատերազմյան վերականգնման տարիներին, իրենց համոզվածությամբ, ճշմարտասիրությամբ, սկզբունքայնությամբ կոչված են բոցավառելու մարդկանց սրտերը, օգնելու նրանց աշխատանքում և կյանքում։

«Խոսքը,— ուսուցանում էր Լենինը,— նույնպես գործ է» (ԵԼԺ, հ. 11, էջ 73)։ Կուսակցությունը միշտ հենվել է մասսաներին ուղղված ճշմարտացի խոսքի ուժի վրա, որը ոգևորում, համախմբում ու մոբիլիզացնում է մարդկանց՝ լուծելու առաջադրված խնդիրները, որքան էլ բարդ լինեին դրանք։ Սխալ է կարծել, թե իր նախորդներից ավելի կրթված, խորագիտակ ու լավատեղյակ ժամանակակից սովետական մարդն իբր պակաս դյուրազգաց է պրոպագանդիստի, ագիտատորի խոսքի նկատմամբ։ Այո՛, նրա հետ պետք է խոսել լուրջ, նա չի սիրում ընդհանուր տեղեր, չի ընդունում խրատական տոնը։ Հանգիստ, ըստ էության գործարար խոսակցությունը, իրադրության ռեալիստական վերլուծությունը, դատողությունների կշռադատվածությունը նա ընկալում է ավելի խոր, ավելի լրիվ։ Դաստիարակչական աշխատանքն այժմ պահանջում է նաև զգալիորեն ավելի մեծ հոգեբանական նրբություն և մեծ տակտ, դրա համար վնասակար են թմրածությունն ու անտարբերությունը, դրան հարկավոր են մտքի սրություն, խոսքի ճշգրտություն, փաստարկման համոզկերություն։ Այդ դեպքում միայն այն կդառնա իրոք ներգործուն։

Հինգերորդ, մեզ անհրաժեշտ են աղմկարարության ու պարադայնության, թղթարարության իսպառ վերացում, որոնք դառնում են «կենդանի գործի զուտ չինովնիկական սպանում» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 42, էջ 425), գաղափարախոսական գործունեության գնահատում դրա բոլոր մակարդակներում և յուրաքանչյուր օղակում ոչ թե միջոցառումների, նիստերի ու ընդունված որոշումների գումարով, այլ դրա գլխավոր չափանիշով՝ մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվությամբ։

Պլենումի որոշումների ոգին ու էությունը կուսակցական կոմիտեներից պահանջում են քննադատական մոտեցում գաղափարախոսական ոլորտում եղած թերությունների նկատմամբ, պրոպագանդայի ու դաստիարակության գործում առավել թույլ օղակները հայտաբերելու ունակություն, եռանդ ու հետևողականություն գործնական խնդիրների իրականացման ասպարեզում։

Հատկապես պետք է խոսել այն թերությունների հաղթահարման մասին, որոնց վրա պլենումը սրեց ուշադրությունը։ Պետք է խստագույնս պահանջել նրանցից, ովքեր հակված են ցուցաբերելու դանդաղկոտություն, աշխատելու հին ձևով, խույս տալու հասունացած պրոբլեմների լուծումից, տարվելու մանիլովյան բարեհոգությամբ։ Ինչպես ցույց տվեց որոշ կուսակցական կազմա-



կերպությունների և գաղափարախոսական հիմնարկությունների աշխատանքի ստուգումը, նման հարցադրման համար հիմք կա։

Դաստիարակության արդյունավետության բարձրացումը պայմանավորված է օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների փոխադարձ կապի էության ճիշտ ըմբռնմամբ։ Դեռևս կուսակցությունն ստեղծելիս Լենինը «Ի՞նչ անել» աշխատության մեջ գաղափարախոսական գործունեության ըմբռնման հարցում հանդես եկավ երկու սխալ ծայրահեղությունների դեմ. առաջին, երբ այն կտրվում է օբյեկտիվ պայմաններից, իր երկրային հիմքից, որը ծնում է ֆրազաբանություն և պրոժեկտյորություն, և երկրորդ, երբ ապավինում են միայն նյութական գործոններին, որը գաղափարադաստիարակչական աշխատանքը դատապարտում է պասսիվության ու ինքնահոսի։ Պրոպագանդայի և դաստիարակության մարքս-լենինյան կոնցեպցիան, որը զարգացվել է պլենումի որոշումներում, ելնում է նպատակամղված գաղափարախոսական աշխատանքը սոցիալ-տնտեսական ոլորտի վերափոխումների հետ, իր իսկ՝ մարդու աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվ գործունեության հետ օրգանապես զուգակցելու անհրաժեշտությունից։

Հունիսյան պլենումի արդյունքները հսկայական հետաքրքրություն առաջացրին ամբողջ աշխարհում։ Արտասահմանյան արձագանքների վերլուծությունը ցույց է տալիս, որ առաջադեմ հասարակայնությունը նրա նյութերի մեջ տեսավ մեր կուսակցության ու պետության խաղաղասիրական քաղաքականության գաղափարական խոր հիմնավորումը, որը լրիվ չափով հաշվի է առնում արդի իրադրության առանձնահատկությունները, կոնստրուկտիվ և սկզբունքային կուրսը միջազգային հարաբերություններում, որն ուղղված է սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, ջերմամիջուկային պատերազմը կանխելու նպատակին։

Բարեկամները պլենումի որոշումները գնահատեցին որպես սոցիալիզմի առավելությունների իրականացման հստակ ծրագիր, որպես հեղափոխական տեսության նկատմամբ ՍՄԿԿ-ի ստեղծագործական վերաբերմունքի, մարքս-լենինյան մտքի «ճգնաժամի» մասին առասպելների սնանկության մի ծանրակշիռ ապացույց ևս։

Դասակարգային հակառակորդները կարողացան վերստին համոզվել կոմունիստական շինարարության գործին մեր անսասան հավատարմության, համաշխարհային սոցիալիզմի շահերի պաշտպանության գործում մեր հաստատակամության և անդրդվելիության մեջ։ Սովետական ժողովրդին չի կարելի վախեցնել ոչ «հոգեբանական գրոհներով», ոչ իմպերիալիզմի պատվազուրկ և խիղճը կորցրած կամակատարների սանձարձակ զրպարտությամբ։

## II

Հունիսյան պլենումը պատմական լայն հեռանկարի դիրքերից քննության առավ սոցիալ-տնտեսական քաղաքականության արմատական հարցերը։ Առաջադրված են հիմնարար խնդիրներ, որոնք ընդգրկում են մեր հասարակության կյանքի բոլոր կողմերը՝ և՛ արտադրաուժերի զարգացումը, և՛ արտադրահարաբերությունների կատարելագործումը, և՛ փոփոխություններ վերնաշենքի ոլորտում։

Վերջին ժամանակներս կուսակցությունը ձեռնարկել է կարևոր միջոցներ՝ ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի նոյեմբերյան և հունիսյան պլենումների որոշումների հետագա իրականացման նպատակով։

Խոսքը ամենից առաջ աշխատանքի արտադրողականությունն արմատապես բարձրացնելու մասին է, սոցիալիստական կարգի առավելությունները գործնականում գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հետ միացնելու մասին։ «Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի վերջերս ընդունած որոշման մեջ նախատեսված են կոմպլեքս միջոցառումներ, որոնք ուղղված են էկոնոմիկայում գիտության ու տեխնիկայի արդի պոտենցիալի օգտագործման մասշտաբների աճին, որը հնարավորություն կընձեռի խորացնելու ինտենսիվացման պրոցեսը։

Այնուհետև խոսքը պլանավորումն ու կառավարումը լրջորեն կատարելագործելու մասին է, ռեսուրսների չարդարացված փոշիացումը վերացնելու, էկոնոմիկայի հաշվեկշռվածությունը բարելավելու, լավորակ ապրանքների և բարձրորակ սննդամթերքների նկատմամբ բնակչության պահանջարկը ավելի լրիվ բավարարելու մասին։ Կարևորագույն նշանակություն կունենա նաև լայն շրջանի այն խնդիրների լուծումը, որոնք ապահովում են տնտեսական ու սոցիալական քաղաքականության սերտ կապը, սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացումը, խելացի պահանջմունքների ձևավորումը։

Լուրջ գործ պետք է կատարել աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի միջև հիմնավորված հարաբերակցություն ձեռք բերելու համար։ Մենք իրավունք չունենք մոռանալու, որ աշխատավարձի աճի նկատմամբ աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճը, որը սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքն է, ամրապնդում է ժողովրդական բարեկեցության բարձրացման, սոցիալական ծրագրերի կատարման նյութական բազան։ Պլենումը մի անգամ ևս հիշեցրեց այն մասին, որ սոցիալիստական հասարակության կյանքը կարգավորող արմատական սկզբունքների թվում հիմնականներից մեկն է ըստ աշխատանքի բաշխումը։ Աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ վերահսկողության ամեն մի թուլացում կարող է պատճառել ո՛չ միայն տնտեսական կորուստներ, այլև բարոյական ծախքեր։ Մեր պրոպագանդան կոչված է ավելի խոր վերլուծելու և մատչելիորեն ցույց տալու բարեկեցության ու սպառման կախումը ներդրված աշխատանքից, դրա որակից։

Սոցիալիստական շինարարության ողջ փորձը վկայում է, որ առաջընթաց շարժումն անհնար է առանց կառավարման գործում դեմոկրատական ցենտրալիզմի զարգացման, առանց հասարակության հանդեպ իր պարտականությունների կատարման համար յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվության բարձրացման։ Մասսաների նախաձեռնությունն ու ստեղծագործությունը, մրցության տնտեսական ու դաստիարակչական դերի աճը, ցենտրալիզմի հետ զուգակցված լայն դեմոկրատիզմը տնտեսական կյանքի ակտիվացման, տնտեսության սոցիալիստական համակարգում եղած արտադրության արդյունավետության մեծացման վիթխարի հնարավորությունների օգտագործման պարտադիր ու անհրաժեշտ պայմաններն են։

**Մեր սոցիալ-տնտեսական հաջողությունները տանում են դեպի սոցիալիստական գիտակցության զարգացման,** համակողմանիորեն զարգացած անհատի **ձևավորման նյութական հիմքի ամրապնդում,** որը կուսակցության ծրագրային նպատակն է։ «Մենք,— շեշտեց ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— իրավամբ խոսում ենք տնտեսական աշխատանքի գաղափարախոսական ապահովման մասին։ Բայց ոչ պակաս, եթե ոչ ավելի մեծ նշանակություն ունի գաղափարախոսական աշխատանքի տնտեսական կամ, ավելի լայնորեն՝ սոցիալական ապահովումը»։

Պլենումը մատնանշեց արտադրության կառավարումը մշտապես կատարելագործելու անհրաժեշտությունը։ Վերջերս ընդունվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը «Պլանավորման և տնտեսական գործունեության մեջ արդյունաբերության արտադրական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքների ընդլայնման և աշխատանքի արդյունքների համար նրանց պատասխանատվության ուժեղացման լրացուցիչ միջոցառումների մասին», որին համապատասխան մի շարք ճյուղերում կատարվում է տնտեսական փորձ։ Իր էությամբ դա ամենամոտ ապագայի տնտեսական մեխանիզմի մոդելի մշակումն է։

Գիտականությունը, գործարարությունը, արդյունքների օբյեկտիվ գնահատումը փորձի իրականացման անհրաժեշտ պայմաններն են։ Դրա իրականացումը ո՛չ միայն տնտեսական, այլև կուսակցական-քաղաքական խնդիր է, որը պահանջում է գաղափարախոսական աշխատողների ակտիվ մասնակցությունը։ Լրագրողները, պրոպագանդիստները, դասախոսները պետք է մատչելիորեն ու հմտորեն պատմեն ձեռնարկվող քայլերի էության մասին, ավելի օպերատիվորեն արձագանքեն այն իրավիճակներին, որոնք արգելակում են գործը։



Աշխատանքի վերջնական արդյունքների կուրսը արտադրությունը կողմնորոշում է դեպի ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջմունքների ավելի լրիվ բավարարում։ Մերձենում են նաև հասարակության, կոլեկտիվի, անհատի տնտեսական շահերը։ Կարևոր է նշել, որ միավորումների ու ձեռնարկությունների իրավունքների էական ընդլայնումը տանում է դեպի դեմոկրատական հիմունքների հետագա զարգացում՝ արտադրության պրոցեսում ծագող ամենատարբեր հարցերի լուծման գործում։ Միաժամանակ ուժեղանում է պատասխանատվությունը աշխատանքի արդյունքների համար։ Պատահական չէ, որ Լենինը փոխադարձ սերտ կապի մեջ էր դիտում «ամենախիստ պատասխանատվություն սահմանելը» և «այն հրահանգների ու կարգադրությունների... կամավոր... կատարումը, որոնք անհրաժեշտ են, որպեսզի տնտեսական մեխանիզմն աշխատի իրոք այնպես, ինչպես աշխատում է ժամացույցը» (ԵԼԺ, հ. 36, էջ 192—193)։

Բնութագրելով էկոնոմիկայի վճռական դերը սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում, Լենինն առանձնացրել է նրա աճի երկու գլխավոր գործոն՝ պլանը և կարգապահությունը։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հենց սոցիալ-տնտեսական զարգացման պլանների հետևողական իրականացումը, դրանց կատարման խիստ կարգապահությունը մեր երկիրը դուրս բերեցին հասուն սոցիալիզմի բնագծերը։ Պլենումն ընդգծեց, որ կարգապահության ամրապնդումը կարճատև կամպանիա չէ, այլ ամենօրյա սիստեմատիկ աշխատանք։ Եվ հաջողությունն ապահովվում է այն ժամանակ, երբ այդ աշխատանքի անմիջական մասնակիցներն են դառնում բոլոր աշխատավորները, երբ այն խարսխվում է մասսաների գիտակցականության և նախաձեռնության վրա։

**Սոցիալիզմի էությանը հատուկ է աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի վրա հիմնված կարգապահությունը:** Կոլեկտիվիստական գիտակցության ու վարքագծի մշակումն իսկ պահանջում է բարձր մակարդակով պահպանել սոցիալիստական կարգապահությունը, որը համապատասխանում է համաժողովրդական շահերին, պետական պլանների կատարման, արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն պայմանն է։

Կարգապահությունը, դրա լենինյան ըմբռնմամբ, անբաժանելի է երկրի գործերի վիճակի մասին ցուցաբերվող հոգատարությունից։ Պրակտիկան վկայում է՝ որքան բարձր է ձեռնարկությունների կոլեկտիվների պատասխանատվությունը պետական առաջադրանքների կատարման համար, այնքան ավելի փութաջանորեն են նրանք վարում իրենց տնտեսությունը։ Բայց դրա համար անհրաժեշտ է ավելի մեծ կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանք աշխատավորական կոլեկտիվներում։

Մարդկանց դաստիարակել պետական պլանների կատարման, արտադրանքի որակի բարձրացման, արտադրական կարողությունների, հումքի, էներգիայի, աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման, կազմակերպվածության և պատասխանատվության ամրապնդման համար մղվող ամենօրյա պայքարում, պահպանողականության ու բյուրոկրատիզմի, գերատեսչականության ու տեղայնության դեմ մղվող պայքարում՝ հենց այսպես, լենինյան ձևով է դրված հարցը հունիսյան պլենումում։ Այդ աշխատանքը վարելու լավագույն մեթոդն է՝ դաստիարակել դրական օրինակով, առաջավոր փորձի օրինակներով, կոնկրետ բացահայտելով այն գործոնները, որոնց հաշվին ձեռք են բերվել հաջողությունները։

Աշխատավորական կոլեկտիվների մասին ՍՍՀՄ օրենքը նրանց նոր հնարավորություններ է տվել արտադրության կառավարմանը յուրաքանչյուր աշխատողի ակտիվ մասնակցության համար։ Անհրաժեշտ է, որ այդ իրավունքներն արդյունավետորեն օգտագործվեն բարձր պահանջկոտության, պատասխանատվության և կարգապահության մթնոլորտ ամրապնդելու և պահպանելու համար։ Պետական և տնտեսական մարմինները պետք է աշխատավորական կոլեկտիվների համար ստեղծեն լավագույն պայմաններ, որպեսզի նրանք կատարեն արտադրական ծրագրերն ու սոցիալական զարգացման պլանները։ Աշխատավորական կոլեկտիվների քաղաքական կոփիչը սկզբնական կու-

սակցական կազմակերպություններն են։ Նրանց վրա վիթխարի պատասխանատվություն է դրված և՛ արտադրական, և՛ սոցիալ-տնտեսական, և՛ գաղափարախոսական ոլորտներում կուսակցական քաղաքականության իրականացման համար։ Կցանկանայինք, մասնավորապես, ուշադրություն հրավիրել նաև ֆաբրիկագործարանային մամուլի դերի վրա։ Այնտեղ, որտեղ բանվորական թղթակիցները մարտականորեն են մասնակցում իրենց ձեռնարկությունների կյանքին, ավելի շատ կարգուկանոն, հասարակական նախաձեռնություն, կազմակերպվածություն կա։

Արդի պայմաններում աճում է պահանջկոտությունը արտադրության ղեկավարների նկատմամբ։ Նրանց սկզբունքայնությամբ, ձեռնահասությամբ, հետևողականությամբ է մեծապես պայմանավորված գործերի վիճակը ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում։ Ղեկավարի՝ աշխատանքի հանձնարարված տեղամասում անհրաժեշտ կարգուկանոն ապահովելու անընդունակությունը, մատնանշվում է աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման աշխատանքի ուժեղացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի որոշման մեջ, պետք է դիտվի որպես անհամապատասխանություն զբաղեցրած պաշտոնին։

Աշխատավորական կոլեկտիվի աշխատանքի արդյունքների ու կարգապահության ուղղակի կախում գոյություն ունի մարդկանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ ադմինիստրացիայի և հասարակական կազմակերպությունների ցուցաբերած ուշադրությունից։

ՁԻԼ-ի, Լենինգրադի Վ. Ի. Լենինի անվան օպտիկամեխանիկական միավորման, «Կալուգայի տուրբինային գործարան» արտադրամիավորման, Սումիի Մ. Վ. Ֆրունզեի անվան մեքենաշինական արտադրամիավորման, «Լիպեցկստրոյ» տրեստի, Տիրասպոլի Ս. Մ. Կիրովի անվան ձուլման մեքենաների գործարանի և այլ առաջավոր ձեռնարկությունների փորձը համոզում է հենց դրանում։ Կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարներն այստեղ եռանդուն աշխատանք են կատարում բարձրարտադրողական աշխատանքի համար բարենպաստ պայմաններ ստեղծելու, կարգապահությունն ամրապնդելու և կադրերը ձեռնարկություններին ամրակցելու նպատակով, կատարելագործելով արտադրության կազմակերպումը, մեծ ուշադրություն նվիրելով սոցիալական հարցերին։ Տնտեսական, կազմակերպական և գաղափարախոսական միջոցներն ուղղվում են աշխատանքի բարձր արտադրողականության հասնելու, դրա արդյունավետությունը բարձրացնելու, տնտեսման ու խնայողության նպատակին։

Հունիսյան պլենումը կոչ արեց ակտիվորեն ձևավորել տնտեսական մտածողության նոր տիպ, դաստիարակել նախաձեռնություն, սոցիալիստական ձեռներեցություն: Այդպիսի մտածողության և աշխատանքի ոճի անբաժանելի գծերն են գործարարությունը, պատասխանատվությունը, նորի ավելի սուր զգացումը, խնայողական վերաբերմունքը ժողովրդական ունեցվածքին, կողմնորոշումը դեպի որակական ցուցանիշներն ու լավագույն ժողովրդատնտեսական արդյունքները՝ նվազագույն ծախսումներով։ Այդ հատկանիշների դաստիարակումը հավասարապես անհրաժեշտ է ինչպես տնտեսական աշխատողին, այնպես էլ յուրաքանչյուր մասնագետի, բանվորի, կոլտնտեսականի։

Հնարավորություններ դրա համար բավական կան. դրանցից են մասսայական տնտեսագիտական ուսուցումը, արտադրության գործերի ու դրա հեռանկարների մասին կոլեկտիվին մշտապես ինֆորմացիա հաղորդելը, աշխատանքի առաջավոր եղանակների խոր ուսումնասիրումն ու օգտագործումը։ Կենսափորձը ցույց է տալիս, որ գործարանի, կառույցի, կոլտնտեսության էկոնոմիկան հիմնավորապես իմացող աշխատողը ավելի ակտիվ է մասնակցում արտադրության կառավարմանը, ավելի արագ է հաղթահարում կայունացած պատկերացումների ու սովորությունների իներցիան, ավելի եռանդով է որոնում ծագող խնդիրների լուծման ուղիներ, շարունակ հոգում է իրեն հանձնարարված գործի կատարելագործման մասին։

Ուսանելի է, օրինակ, ֆիզիկական ծանր աշխատանքի բաժինը կրճատելու ուղությամբ Զապորոժիեի մարզի կուսակցական կազմակերպությունների աշ-



խատանքի փորձը։ Սոցիալիստական մրցությունը, մասսայական տնտեսագիտական ուսուցումը, ժողովրդական համալսարանների աշխատանքը, մամուլը լավ են ծառայում աշխատավորների մոբիլիզացմանը՝ իրականացնելու աշխատանքի մեքենայացման՝ ձեռնարկություններում մշակված կոմպլեքսային ծրագրերը։ Այդ ծրագրերի կատարման ղեկավարումն ու կոորդինացումն իրականացնում է կուսակցության մարզկոմին կից գործող հատուկ խորհուրդը։ Դրա շնորհիվ տասներորդ հնգամյակում և տասնմեկերորդ հնգամյակի առաջին կեսում մարզում մեքենայացվել է մոտ 20 հազար բանվորի աշխատանք։ Արդիականորեն, տնտեսապես գրագետ մտածելու ունակությունն այստեղ զուգակցվում է գործնական արդյունքների հասնելու հետևողականության, համառության հետ, լավ կարգավորված կազմակերպչական աշխատանքի հետ։

Նոր տնտեսական մտածողությունը չի կարող պարփակվել «իր» արտադրության շրջանակներով։ Այդ մտածողությանը տիրապետող աշխատողները աչքի են ընկնում ուրիշ կոլեկտիվների, ողջ հասարակության շահերի նկատմամբ հարգալից, հոգատար վերաբերմունքով և, անշուշտ, պետական պլանների ու պարտավորությունների ճշգրիտ կատարմամբ։ Որտեղ մոռանում են այդ մասին, գործին մոտենում են գերատեսչական կամ տեղայնական դիրքերից, այնտեղ փոշեցրվում են կոլեկտիվ աշխատանքի ուժերը, խախտվում են պետական կարգապահությունը, սոցիալիստական տնտեսավարության նորմերը։ Դրա հետևանքով խարխլվում է այն հիմքը, որի վրա խարսխվում է մարդկանց գիտակցական, շահագրգռված, պատասխանատու վերաբերմունքը իրենց պարտականություններին։

Ձևավորել նոր տնտեսական մտածողություն՝ ամենից առաջ նշանակում է յուրաքանչյուր արտադրական հարց դիտել համաժողովրդական, պետական շահի լույսի ներքո: «Թող յուրաքանչյուր ֆաբրիկագործարանային կոմիտե,— նշում էր Լենինը,— իրեն զգա ո՛չ միայն իր գործարանի գործերով զբաղված, այլ իբրև ամբողջ պետական կյանքը կարգավորող կազմակերպչական բջիջ» (ԵԼԺ, հ. 35, էջ 170)։ Կոլեկտիվի ջանքերը չպետք է ավարտվեն նրանով, որ արտադրանքը դուրս է գալիս ձեռնարկության կամ տնտեսության դարպասներից։ Հարկավոր է մանրամասն իմանալ այդ արտադրանքի սպառման ոլորտը, օգնել դրա ռացիոնալ օգտագործմանը։ Արդյունքի հարկավոր է ձգտել ո՛չ միայն «իրենց մոտ», այլև սպառողի մոտ, այլ կերպ ասած, հոգ տանել ամբողջ ժողովրդատնտեսական օգուտի մասին։ Այստեղ անպայման անհրաժեշտ են տնտեսական կոնկրետ խոր գիտելիքներ և քաղաքական, պետական լայն մոտեցում պրոբլեմներին։

Կոմունիստներին խորթ է նեղ պրագմատիկ, չարչիական հայացքը էկոնոմիկայի նկատմամբ։ Նոր տնտեսական մտածողության էական գիծն է արտադրական և քաղաքական հարցերի կապը։ Այդ կապը հիանալի ցուցադրեցին Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ մագիստրալային գազամուղի ստեղծողները։ Եզակի գազամուղի ժամկետից շուտ կառուցումը սովետական գիտության ու տեխնիկայի, մեր արդյունաբերության աչքի ընկնող հաղթանակն է, բանվորների, ինժեներների, գիտնականների ո՛չ միայն վարպետության, այլև քաղաքական բարձր գիտակցության ապացույցը։ Դա մի գործնական պատասխան է անդրօվկիանոսյան այն արկածախնդիրներին, ովքեր մտադրվել են մեր ժողովրդի հետ խոսել քաղաքական վերջնագրերի ու տնտեսական սանկցիաների լեզվով։ Դա ո՛չ միայն էկոնոմիկա է, այլև քաղաքականություն, մեծ քաղաքականություն, որը կերտվում է բանվորական ձեռքերով։ Չէ՛ որ որևէ հարց արծարծել քաղաքականապես, ըստ Մարքսի, նշանակում է բացահայտել դրա սոցիալական իմաստը, մոտենալ դրան «ամբողջ պետության տեսակետից» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. I, стр. 360):

Նոր տնտեսական մտածողությունն ինքնաբերաբար չի գալիս։ Այն մշակվում է լարված աշխատանքով, կապված է գիտելիքների մշտական նորացման հետ, մարդկանց հոգեբանության փոփոխությունների հետ։ Գիտելիքների ուժը միացնել պրակտիկ փորձի հետ, գաղափարական համոզվածությունը՝ տնտեսագիտական լուսավորության հետ, աշխատավորների նախաձեռնության ու

եռանդի զարգացման հետ՝ և՛ տնտեսվարության, և՛ ղեկավարության կարևորագույն խնդիրն է։

III

Պլենումի առաջադրած խնդիրների հաջող իրացումն անհնար է առանց դաստիարակության ողջ գործի կազմակերպման նշանակալի բարելավման։ «...Միայն հիանալի կազմակերպության պայմանով,— շեշտում էր Լենինը,— մեր բարոյական ուժը կարող է վերածվել նյութական ուժի» (ԵԼԺ, հ. 9, էջ 299)։ Գործարարությունը, կոնկրետությունը, ձեռք բերված արդյունքների ռեալիստական գնահատականը, մարդկանց գիտակցականության ու քաղաքական կուլտուրայի մակարդակի սթափ հաշվառումը, պրոպագանդայի մշտական համադրումը կյանքի ռեալ ընթացքի հետ, տնտեսական, կառավարչական գործունեության արդյունքների հետ, կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման հետ՝ ահա թե հատկապես ինչ է հարկավոր այժմ։

Կուսակցական շատ կոմիտեներ սկսել են ավելի ակտիվ զբաղվել գաղափարախոսական աշխատանքի կազմակերպման հարցերով, ավելի շատ նախաձեռնություն, ստեղծագործություն և հետևողականություն ցուցաբերել դրա արդյունավետության բարձրացման գործում։ Այդ աշխատանքն ավելի ու ավելի է կենտրոնանում տնտեսական, սոցիալական և դաստիարակչական արմատական խնդիրների լուծման վրա։ Օրինակ, հետաքրքրական է կոմունիստների քաղաքական ուսուցման համակարգի կատարելագործման ասպարեզում Մոսկվայի քաղաքային կուսակցական կազմակերպության փորձը, տնտեսական, կազմակերպչական և քաղաքական աշխատանքի միասնության ապահովման գործում Կիևի կուսակցական կազմակերպության, աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալիստական դաստիարակության ոլորտում Մինսկի, արտադրության մեջ կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման բնագավառում Իվանովոյի քաղաքային կուսակցական կազմակերպությունների և այլոց փորձը։

Պլենումը, ինչպես հայտնի է, մեծ ուշադրություն նվիրեց գաղափարախոսական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործմանը։ Եվ պետք է ասել, մեզ մոտ շատ բան է արվում այդ ասպարեզում։ Հաստատվում է կոմպլեքսային մոտեցումը դաստիարակչական պրոցեսի կազմակերպմանը, գաղափարական ազդեցության բոլոր միջոցների օգտագործմանը, ավելի լավ է վարվում ընթացիկ և հեռանկարային պլանավորումը։ Տարածվում է վարչական շրջանների և աշխատավորական կոլեկտիվների տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների մշակման գործում լենինգրադցիների կուտակած փորձը, պլաններ, որոնք ընդգրկում են ծրագրեր դաստիարակության վերաբերյալ։

Դրական տեղաշարժերի թվին պետք է դասել գաղափարադաստիարակչական աշխատանքի գիտական բազայի ամրապնդումը։ Դա հնարավորություն է ընձեռում ավելի օբյեկտիվորեն դատելու պրոպագանդայի և ագիտացիայի առանձին օղակների արդյունավետության մասին, բնակչության տարբեր խմբերի իրազեկության մակարդակի, կոլեկտիվներում տիրող բարոյահոգեբանական մթնոլորտի մասին։

Առաջիկայում մենք պետք է իրականացնենք պլենումի որոշումը հասարակական կարծիքի ուսումնասիրման համամիութենական կենտրոնի կազմակերպման վերաբերյալ։ Այն պետք է ունենա արմատային ամուր համակարգ կուսակցության երկրամասային, մարզային, քաղաքային կոմիտեներում, աշխատավորական կոլեկտիվներում։ Սակայն պրոբլեմի էությունը ո՛չ միայն հասարակական կարծիքի ուսումնասիրումն է, այլև դրա նպատակամղված ձևավորումը։ Մի խոսքով, անհրաժեշտ են ո՛չ միայն գործնական հանձնարարականներ այսօրվա համար, այլև գիտականորեն հիմնավորված կանխատեսումներ, որոնք ունակ են ժամանակին կողմնորոշելու մեր պրոպագանդան։

Երբ խոսքը վերաբերում է տնտեսական ու սոցիալական պրոբլեմներին, առանձնապես հարկավոր են դրանց էության, ընդունվող որոշումների իմաստի հանգամանալից պարզաբանում, հրապարակայնություն, կառավարման մարմինների գործունեության մասին աշխատավորներին սիստեմատիկ իրազեկ դարձնել։ Կուսակցական շատ կազմակերպություններում այսօր կարգավորված է աշխատանքը այն հարցերի հետ, որոնք աշխատավորները տալիս են դասախոսներին, պրոպագանդիստներին, մասսայական ինֆորմացիայի օրգաններին։ Դրանք ուսումնասիրվում և ընդհանրացվում են, իսկ գլխավորը՝ քննարկվում և լուծվում են իրավասու մարմինների կողմից։ Կարևոր է, որ տրված ոչ մի հարց չմնա առանց պարզ պատասխանի, ոչ մի գործարար առաջարկություն՝ առանց կոնկրետ միջոցների ձեռնարկման։ Այս է ՍՄԿԿ Կենտկոմի պահանջը։

Կուսակցական խիստ վերահսկողությունն աշխատավորների դիտողությունների ու առաջարկությունների իրականացման նկատմամբ տալիս է նշանակալի սոցիալական արդյունք, ամրապնդում է պրոպագանդայի հեղինակությունը։

Հունիսյան պլենումը նշեց, որ գաղափարախոսական աշխատանքի հարցերով մշտապես պետք է զբաղվեն կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարները։ Սա սկզբունքային դրույթ է։ Այնտեղ, որտեղ նրանք խորամուխ են լինում այդ հարցերի մեջ, զգալիորեն բարձրանում է կուսակցական կոմիտեների բոլոր բաժինների պատասխանատվությունը գաղափարադաստիարակչական աշխատանքի նկատմամբ։ Մեզ համար ակնհայտ է, որ քաղաքական ոչ մի գործունեություն հնարավոր չէ առանց դաստիարակության գործին կուսակցական բոլոր կադրերի անձնական մասնակցության։ Մասսաների հետ անմիջական շփումից դուրս, առանց մարդկանց իր կողմը գրավելու կարողության, առանց իր տեսական մտահորիզոնն ընդլայնելու պահանջի՝ լիարժեք կուսակցական աշխատող չկա և չի կարող լինել։

Սա ուղղակի առնչություն ունի տնտեսական ղեկավարների հետ։ Նրանցից շատերն իրենց դրսևորել են որպես լավ դաստիարակներ, որոնք հասկանում են, թե որքան կարևոր է հաշվի առնել տնտեսական-կազմակերպչական պրակտիկայի գաղափարախոսական կողմերը և հետևանքները։ Վերցնենք, օրինակ, Նշանավոր Մագնիտկան։ Այստեղ արտադրամասերի բոլոր ղեկավարներն ու վարպետներն ավարտել են մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանը կամ սովորում են դրա ֆակուլտետներից մեկում։ Հստակ գործող գրաֆիկով կոմբինատի ղեկավարները մարդկանց հետ հանդիպումներ են ունենում արտադրամասերում, բրիգադներում։ Դա հնարավորություն է ընձեռում՝ օպերատիվ կերպով լուծելու ծագող հարցերը, պահպանելու ընկերականության ու փոխադարձ վստահության մթնոլորտը։

Կոլեկտիվի կյանքում էական է ամեն ինչ՝ աշխատանքի ու հանգստի կազմակերպումը, բնակարանների, ուղեգրերի և մանկական հիմնարկությունների տեղերի բաշխումը, կարգուկանոնը հանրակացարաններում և ճաշարանների ճաշացուցակները, ղեկավարների ու ենթակաների փոխհարաբերությունների բնույթը և այլն։ Դժվար է գերագնահատել այդ հարցերի ճիշտ, արդարացի լուծման ներգործությունը մարդու գիտակցության, աշխատանքի որակի, հասարակական վարքագծի ու նրա տրամադրության վրա։

Դրական է այն փաստը, որ կուսակցական շատ կոմիտեներ սկսել են ավելի համարձակ փորձեր կատարել, ստեղծում են ստեղծագործական որոնման մթնոլորտ, գտնում են տնտեսավարման ու դաստիարակության միասնության ամրապնդման ներգործուն միջոցներ։ Դա դրսևորվում է, օրինակ, ագրոարդյունաբերական միավորումների պայմաններում կազմակերպչական և մասսայական-քաղաքական աշխատանքի արդյունավետ ձևերի մշակման ու արմատավորման գործում։

Այսպես, Ստավրոպոլի երկրամասում կուսակցության Բլագոդարնենսկիի շրջկոմը, շրջանային ագրոարդյունաբերական միավորման հետ համատեղ, ընդհանրացրել ու տարածել է «Գիգանտ» կոլտնտեսության փորձը, որտեղ արդեն անցյալ տարի բերքահավաքի բոլոր աշխատանքները կատարվել են բրիգադային կապալի մեթոդով։ Այս տարվա բերքահավաքի աշխատանքների ժամանակ շրջանում այդ մեթոդով էր աշխատում բերքահավաքի ու փոխադրական կոլեկտիվների երկու երրորդը։ Բերքահավաքին մասնակցած կուսակ-

ցության 680 անդամներ միավորվել էին քառասուն ժամանակավոր կուսակցական խմբերում. այդ բարձրացրեց կոմունիստների ազդեցությունը աշխատանքների ընթացքի վրա։ Ագիտացիոն-պրոպագանդիստական օղակները գործում էին հացահատիկի կոնվեյերի բոլոր տեղամասերում՝ դաշտից մինչև էլեվատոր։ Ամեն օր ամփոփվում էին սոցիալիստական մրցության արդյունքները և օպերատիվ կերպով դրանք հաղորդվում ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր ստորաբաժանումներին։ Հայրենիքի շտեմարաններն է լցվել 103 հազար տոննա հացահատիկ, 120 տոկոսով կատարվել է պետությանը հացահատիկի վաճառքի՝ հնգամյակի երեք տարվա պլանը։ Հատկապես արժեքավոր է այն, որ այդ արդյունքները ձեռք են բերվել եղանակային դժվարին պայմաններում։

Ագրոարդյունաբերական միավորումների ստեղծումը պահանջում է հատուկ ուշադրություն նվիրել նոր հարաբերությունների ձևավորմանը այն մարդկանց միջև, որոնք միավորված են ընդհանուր նպատակով ու պատասխանատվությամբ վերջնական արդյունքների համար։ Սա կուսակցության գյուղական շրջկոմների հրատապ խնդիրներից մեկն է ներկա պայմաններում։

Այսօր քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ծանրության կենտրոնը փոխադրվում է աշխատավորական սկզբնական բջիջները՝ արտադրական բրիգադները։ Նպատակահարմար է դրանցում ստեղծել կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններ կամ խմբեր, իսկ փոքրաթիվ բրիգադներն ուղարկել կուսկազմակերպիչներ, ինչպես այդ արվում է Ուկրաինայում, Վրաստանում։ Միաժամանակ հարկավոր է բարելավել հասարակական կազմակերպությունների գործունեության կոորդինացումը աշխատավորական կոլեկտիվներում, թույլ չտալով, որ դրանք կրկնորդեն միմյանց։ Չէ՞ որ կարելի է, ընդ որում ամենևին չնսեմացնելով դրանց դերն ու հեղինակությունը և առանց գործին վնասելու, պակասեցնել դրանց իրականացվող միջոցառումների թիվը, որոնք, մանավանդ, հաճախ հար և նման են լինում։ Յուրաքանչյուր հասարակական կազմակերպություն պետք է կատարի իր ֆունկցիաները՝ առանց հանձն առնելու իրեն ոչ հատուկ խնդիրներ։

**Դաստիարակությունը վարել լայն ճակատով, ընդգրկելով բոլոր այն ոլորտները, որոնցում կերպավորվում է անհատը, հմտորեն օգտագործելով մեր ողջ հզոր ինֆորմացիոն-պրոպագանդիստական զինանոցը,— այս է պլենումի հիմնադրույթը։**

Այս գործում առաջատար դեր է պատկանում մասսայական ինֆորմացիայի միջոցներին։ Նկատելի է մամուլի ձգտումը՝ նյութերն ավելի խոր, հրատապ, բազմազան դարձնելու, սերտ կապ հաստատելու ընթերցողի հետ և գլխավորը՝ հասնելու ելույթների ավելի մեծ ներգործունության։

Պլենումը մատնանշեց շրջանային և քաղաքային թերթերի աշխատանքն դգալիորեն բարելավելու անհրաժեշտությունը։ Կան լավ օրինակներ, երբ դրանք հանգամանորեն լուսաբանում են տեղական կյանքը, շարունակ հոգում հրապարակվող նյութերի պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացման մասին։ Այսպես, Արխանգելսկի մարզի Պլեսեցկի շրջանում լույս տեսնող «Սոցիալիստական կոմունիզմա» թերթը ընթերցողներին գրավում է նրանով, որ, չընդօրինակելով մեծածավալ հրատարակություններին, օպերատիվորեն, կարճ, հետաքրքրական ձևով տալիս է տեղական ինֆորմացիան, այդ ինֆորմացիան հմտորեն զուգակցելով պրոբլեմային ելույթների, քննադատական սուր նյութերի հետ, և կանոնավոր հաղորդում է ձեռնարկված միջոցների մասին։ Մարդիկ սիրով են դիմում այդպիսի թերթին իրենց հոգսերով ու առաջարկություններով, պատմում իրենց գործերից։ Եվ երբ ընթերցողը դրա մասին ասում է «իմ թերթը», դա ցուցանիշ է այն բանի, որ այդ թերթը վարում են հմտորեն, բովանդակալից, հոգով։

Հարկավոր է ամրապնդել ու զարգացնել այն ողջ դրականը, որը երևան է եկել կենտրոնական ու տեղական մամուլի գործունեության ոլորտում, ամենից առաջ կյանքից, մարդկանց հուզող պրոբլեմներից բխող նյութերի հրապարակման արժեքավոր փորձը։

Ավելի քիչ տարտամ դատողություններ, ընդհանուր տեղեր ու անհասցե կոչեր, ավելի շատ առարկայականություն, վերլուծականություն, ուղղակի դի-



մում ընթերցողին՝ այս է մամուլին ուղղված պլենումի կարևորագույն պահանջներից մեկը։

Հարկ է հատկապես նշել, որ գաղափարախոսական աշխատանքը պետք է միշտապես գտնվի մասսայական ինֆորմացիայի միջոցների սևեռուն ուշադրության դաշտում և վերլուծվի նույնքան սիստեմատիկաբար, շահագրգռվածորեն ու խստապահանջորեն, որքան և կուսակցական կազմակերպությունների բազմակողմանի գործունեության մյուս կողմերը։

Հրատապ խնդիր է՝ բարձրացնել հեռուստատեսության ինֆորմացիոն հաղորդումների բովանդակալիությունն ու օպերատիվությունը։ Այդ հարցի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման մեջ սահմանված են կոնկրետ միջոցներ։ Սահմանված են առավոտյան ինֆորմացիոն ծրագիր, նորությունների լրացուցիչ թողարկումներ օրվա ընթացքում։ Երիտասարդներին է հասցեագրվում կոնտրպրոպագանդիստական ուղղվածության շաբաթական նոր հեռուստատեսային հաղորդումը, իսկ մանուկներին ու դեռահասներին՝ ինֆորմացիոն-հրապարակախոսական կանոնավոր հաղորդումը։

Մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը, հրատարակչությունները ամենալայն լսարան են ապահովում գրականության ու արվեստի գործիչների համար։ Ուստի հարկավոր է կուսակցական բարձր պահանջկոտության ու պրոֆեսիոնալ խստապահանջության հիման վրա ամրապնդել ու զարգացնել խմբագրական կոլեկտիվների ստեղծագործական կապերը գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, թատրոնի ու կինոյի աշխատողների հետ, ավելի լայն տարածել սոցիալական պատվերի պրակտիկան։ Մենք այդպիսի փորձ ունենք, և այն արգասավոր արդյունքներ է տալիս։ Գրականության ու արվեստի գործիչների մի մեծ խումբ, հանդեսների և հրատարակչությունների հետ սերտ համագործակցությամբ, ներկայումս աշխատում է առավել հրատապ թեմաների վրա։ Տիեզերքի յուրացման հերոսական էպոպեան, մեր ժամանակակիցների աշխատանքային սքանչելի մեծագործությունները հիանալի նյութ են տալիս դաստիարակչական հսկայական նշանակություն ունեցող գեղարվեստական ու հրապարակախոսական երկեր ստեղծելու համար։

Ստեղծագործական միությունների, համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների, դրանց կուսակցական կազմակերպությունների ողջ գործունեությունն այսօր պետք է ավելի ակտիվ ներազդի թատրոնների ու կինոստուդիաների, հանդեսների ու հրատարակչությունների աշխատանքի գաղափարական ուղղվածության վրա, որպեսզի բացառվեն աշխարհայացքային հարցերում հաշտվողականության, պատմական ճշմարտությունից ամեն տեսակ շեղումների, գեղարվեստական ստեղծագործությունների գնահատման նրկատմամբ մոտեցման սուբյեկտիվիստական կողմնակալության փաստերը։ Ստեղծագործական մտավորականության հետ տարվող աշխատանքը կոչված է նպաստելու գրականության ու արվեստի կարևորագույն խնդրի լուծմանը՝ մեր ժամանակի հերոսի լիարյուն կերպարի ստեղծմանը, որն ընդունակ է խորապես տպավորվելու մարդկանց հոգում, ձգողական օրինակ ծառայելու ամենից առաջ երիտասարդության համար։

Պլենումը սուր կերպով դրեց **քաղաքական լուսավորության ցանցի, մասսայական քաղաքական ուսուցման աշատանքի ոճը փոխելու** հարցը, որպեսզի այն իրոք օգնի յուրաքանչյուր աշխատավորի՝ ավելի խոր հասկանալու կուսակցության քաղաքականությունը, գործնականորեն կիրառելու ստացած գիտելիքները։ Էական ուղղումներ են արվել ուսումնական ծրագրերում։ Պրոպագանդայի և ագիտացիայի գաղափարատեսական մակարդակի հետագա բարձրացման նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը որոշում է ընդունել քաղաքական լուսավորության համամիութենական տուն ստեղծելու մասին։ Գաղափարախոսական կադրերը դրանից սպասում են գիտամեթոդական լուրջ օգնություն, պրոպագանդիստական աշխատանքի փորձի ընդհանրացում, լուրջ հանձնարարականներ պրոպագանդայում հոգեբանության, մանկավարժության և սոցիոլոգիայի նվաճումները կիրառելու վերաբերյալ։

Դաստիարակության ոլորտում հիմքերի հիմքը **հոգատարությունն է անող սերնդի նկատմամբ։** Հունիսյան պլենումն այս պրոբլեմը քննության առավ

ամենալայն պլանով՝ երիտասարդության հայրենասիրական և ինտերնացիոնալիստական դաստիարակությունից մինչև նրա նախապատրաստումը հանրօգուտ աշխատանքի։ Այս կարևոր խոսակցությունը շարունակվեց կուսակցության վետերանների հետ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հանդիպման ժամանակ, կուսակցական կոմիտեների շատ պլենումներում։

Պլենումից անմիջապես հետո քաղբյուրոյի որոշմամբ ստեղծված հանձնաժողովը առաջարկություններ է մշակում դպրոցի և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման համակարգի ռեֆորմի նախապատրաստման վերաբերյալ։ Հանձնաժողովի գործունեությանը մասնակցում են կուսակցական աշխատողներ, խոշոր գիտնականներ, փորձված մանկավարժներ, աշխատավորական կոլեկտիվների ղեկավարներ։ Ներկայումս մշակվում են զանազան տարբերակներ, ուշադիր համադրվում տեսակետներն ու մոտեցումները։ Հանձնաժողովի, մամուլի օրգանների հասցեով ստացվում է նամակների մեծ հոսանք։ Դրանց պարունակած գաղափարները, կարծիքները ամենամանրազնին կերպով վերլուծվում են, ընդհանրացվում և հաշվի են առնվելու։ Պատրաստվող ռեֆորմը սոցիալական մեծ նշանակություն ունեցող հարց է, որը շոշափում է ամբողջ հասարակության շահերը։

Աճող սերնդի հետ տարվող դաստիարակչական աշխատանքում միակ ճիշտ ուղին է՝ ուսուցումը միացնել արտադրողական աշխատանքի հետ, երիտասարդ մարդկանց ավելի ակտիվորեն ներգրավել հասարակական-քաղաքական կյանքի ոլորտը, ավելի համարձակ նրանց վստահել առավել պատասխանատու գործեր, որպեսզի պրակտիկայի բովում նրանք ավելի արագ առնականանան գաղափարապես ու բարոյապես, ձեռք բերելով քաղաքացիական ու պրոֆեսիոնալ վսեմ հատկություններ։

Կուսակցությունն առաջնահերթ նշանակություն է տալիս կյանքի բոլոր ոլորտներում սոցիալիստական սկզբունքների հետագա ամրապնդմանը, դրանց հակոտնյա ամեն ինչի վերացմանը։ Մեզ համար այժմ ակնհայտ է, որ բացասական երևույթների առկայությունը չի կարելի բացատրել միայն անցյալի վերապրուկներով, իներցիայի ուժով։ Ե՛վ տեսականորեն, և՛ գործնականորեն մենք գիտենք, որ այդպիսի երևույթներ առաջանում են նաև հասարակական զարգացման հակասությունների ու բարդությունների հետ, տնտեսական և դաստիարակչական աշխատանքում եղած թերությունների հետ կապված պատճառների հետևանքով։ Դա նշանակում է, որ մեր ապրելակերպի հակոտնյաների դեմ մղվող պայքարը խարսխելով ռեալության հողի վրա, անհրաժեշտ է օգտագործել սոցիալ-տնտեսական, դաստիարակչական, վարչական-իրավական բոլոր միջոցները։ Պետք է նշել, որ ժողովրդական ունեցվածքը հափշտակողների, սպեկուլյանտների ու կաշառակերների հանցավոր գործողությունները անպայման պետք է ստանան դասակարգային հստակ գնահատական, քանի որ խոսքը սոցիալիստական սեփականության, մեր արմատական հիմքերի ու նորմերի պաշտպանության մասին է։ Եվ հակասոցիալական վարքագծի ամեն տեսակ ձևերի դեմ մղվող անհաշտ պայքարում հասարակայնությունը պետք է հենվի օրենքի ուժի վրա, իսկ օրենքը՝ հասարակայնության ուժի վրա։

Պլենումի՝ թշնամական գաղափարախոսության ներթափանցմանն առավել արդյունավետ հակազդելու հիմնադրույթին համապատասխան՝ կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում կենտրոնում և տեղերում։ Դրանք նախատեսում են կոնտրպրոպագանդայի միասնական համակարգ ստեղծել երկրի մասշտաբով, սկսած աշխատավորական կոլեկտիվից։ Գլխավորը նրա աշխատանքում սովետական ապրելակերպի առավելությունների վառ բացահայտումն է, բուրժուական գիտակցության նեխած «արժույթների» խոր, համոզիչ մերկացումը, սոցիալիզմին թշնամի պրոպագանդայի կոնկրետ վերլուծությունը, կանխող կոնտրպրոպագանդիստական միջոցների մշակումն ու կոորդինացումը։ Դասակարգային հակառակորդը դիմում է ամեն տեսակ պրովոկացիաների, ոտնահարելով իրավունքի ու բարոյականության բոլորի կողմից ընդունված նորմերը, չի խորշում ամենալկտի զրպարտությունից ու կեղծիքից, հրահրում է թունդ հակասովետիզմ։ Այդպիսի պայմաններում անհրաժեշտ են խիստ զգո-



նություն, եռանդուն հակահարված գաղափարախոսական դիվերսանտների բոլոր տեսակ մեքենայություններին։

Գաղափարախոսական ինչ ոլորտ էլ, որ վերցնենք, գործունեության լենինյան ոճը, գործի հմուտ կազմակերպումը հաջողության հիմքն է։ Ի՞նչն է ամենից շատ խանգարում կազմակերպչական աշխատանքում։ Առաջին հերթին բովանդակալից հարցերի փոխարինումը գրասենյակայինով, նիստերով ու խորհրդակցություններով հրապուրվելը, ժամանակի ոչ ռացիոնալ բաշխումը։ Կուսակցական որոշ կազմակերպություններ աշխատելու ժամանակ էլ չեն ունենում վերևից ուղարկվող գրությունների շատությունից։ Լինում է այնպես, որ ձեռնարկության, կառույցի կամ սովխոզի կուսկոմիտեն ամեն տարի ստանում է մի քանի հարյուր փաստաթղթեր, հարցումներ ու կարգադրություններ։

Պարզ է, որ միայն կասեցնելով տեղեկանքների, հաշվետվությունների հոսանքը, հրաժարվելով թղթի ուժի նկատմամբ եղած կույր հավատից, զանազան միջոցառումների ու կամպանիաների կուտակումից, կարելի է իսկապես ժամանակը նվիրել գլխավորին՝ մարդկանց հետ տարվող աշխատանքին։ Այսպես, կուսակցության Տոմսկի մարզկոմը դիմեց տեղերից պահանջվող տվյալների ու հաշվետվությունների, ակտիվի հրավիրմամբ գումարվող մարզային խորհրդակցությունների թվի վճռական կրճատման, որն ապարատի աշխատողներին հնարավորություն ընձեռեց ավելի հաճախ լինելու տեղերում, ավելի շատ գործնական օգնություն ցույց տալու սկզբնական կուսակցական կազմակերպություններին, կուսակցության շրջկոմներին և քաղկոմներին։

Գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի ոճի կատարելագործումը ամենից առաջ խստապահանջ վերահսկողությունն է կուսակցության դիրեկտիվների իրականացման նկատմամբ, ընդունված որոշումների կատարման նկատմամբ։ Դրա հիմքում գործերի իրական վիճակի ստուգումն է, ձեռք բերված արդյունքների, և ոչ միայն հաշվետվության ու փաստաթղթերի ձևական որակի վերլուծությունը։ Հակառակ դեպքում անխուսափելի են սխալներն ու հապճեպ գնահատականները։

Վերջերս «Պրավդա» թերթը բերել էր այսպիսի փաստեր։ ՍՄԿԿ Իրկուտսկի մարզկոմի բյուրոն հավանություն տվեց «Ոչ մի ետ մնացող քո կողքին» նշանաբանով ծավալված մրցության գաղափարախոսական ապահովման նպատակով Օկտյաբրսկի շրջանի փորձին և հանձնարարեց այն արմատավորել մարզի բոլոր աշխատավորական կոլեկտիվներում։ Իսկ իրականում շրջանի յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկություն չի կատարում պլանը։ Կուսակցության Չեռեմխովոյի շրջկոմը նշեց տնտեսագիտական ուսուցման լավ դրվածքը հրակայուն նյութերի արևելասիբիրյան գործարանում, իսկ գործարանը մի քանի տարի շարունակ ձախողում է պլանային առաջադրանքները բոլոր ցուցանիշներով։

Այս դեպքերի համար բնորոշ է, որ գաղափարախոսական աշխատանքը գնահատված է գործի արտաքին կողմով։ Նման մոտեցումը՝ ձևական մոտեցումը, չի կարող չհանգեցնել լուրջ վրիպումների։

Հարկավոր է նշել, որ մի շարք կուսակցական կոմիտեների հասցեին պլենումում արված քննադատությունը նրանք ճիշտ ընկալեցին, և գործնական հետևություններ են արվում դրանից։ Բայց անհրաժեշտ է դեռ հիմնավոր աշխատանք կատարել թերությունները վերացնելու, կազմակերպչական և գաղափարախոսական գործունեության մակարդակը էապես բարձրացնելու համար։

Կուսակցական աշխատանքի ցանկացած տեղամասում հաջողությունը որոշում են կադրերը։ Գիտելիքների բազմակողմանիությունն ու խորությունը, քաղաքական փորձը, բարոյական հեղինակությունը, եռանդն ու գործարարությունը, պրոպագանդիստական ու կազմակերպչական տաղանդը այն հիմնական պահանջներն են, որոնք ներկայացվում են գաղափարախոսական աշխատողներին։

Կուսակցության մեջ ստեղծվել է գաղափարախոսական կադրերի պատրաստման ու պարբերական վերապատրաստման ճյուղավորված համակարգ։ Լրացուցիչ միջոցներ իրականացնելով այդ բնագավառում՝ ՍՄԿԿ Կենտկոմն

ընդունեց որոշում մամուլի աշխատողների որակավորման բարձրացման համամիութենական ինստիտուտ ստեղծելու մասին։

Կարևոր է հասնել այն բանին, որ կուսակցական ակտիվի ուսուցման բովանդակությունն իր բոլոր ձևերով տոգորված լինի պլենումի գաղափարներով, իսկ տեսական հարցերի ուսումնասիրումը սերտորեն շաղկապվի գործնական փորձի իմաստավորման, դրա վերլուծման ու ընդհանրացման հետ։ Անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունը վերապատրաստված աշխատողների նկատմամբ, հասնել այն բանին, որ նրանք առավելագույն չափով կիրառեն իրենց ստացած գիտելիքները։

Գաղափարախոսության ու դաստիարակության, պրոպագանդայի ու ագիտացիայի կոնկրետության, կյանքի բոլոր կողմերի վրա գաղափարական ազդեցության ուժեղացման հարցերը մեծ տեղ են գրավում կուսակցության ներկայիս հաշվետու-ընտրական կամպանիայում։ Այն անցնում է կուսակցական շարքերի հետագա ամրապնդման, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման, կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի, սոցիալ-տնտեսական պրոցեսների կուսակցական ղեկավարության ձևերի ու մեթոդների կատարելագործման նշանաբանով, սովետական հասարակության կյանքում ՍՄԿԿ-ի ղեկավար դերի բարձրացման նշանբանով։

IV

Մեր այսօրվա իրականության հետ սերտ կապված նոր գաղափարները, զարգացած սոցիալիզմի կատարելագործման նպատակով տարվող աշխատանքի ուղղությունները սահմանող ծրագրային դրույթները կուսակցությանն ու ժողովրդին զինեցին մերձավոր ու հեռանկարային խնդիրների պարզ պատկերացմամբ։ Մենք սկսել ենք իմանալ ավելի շատ, ավելի խոր հասկանալ երևույթները, ավելի հեռուն տեսնել։

Իհարկե, պլենումի նյութերի պարունակած տեսական ընդհանրացումներն ու հետևությունները չեն կարող սպառիչ պատասխաններ տալ կյանքի, պրակտիկայի հարուցած բոլոր հարցերին։ Այդ ընդհանրացումները լուսաբանում են հասարակական զարգացման արդի փուլի գլխավոր, հանգուցային պրոբլեմները, տալիս են դրանց տեսական լուծումը, այսպես ասած, խոշոր պլանով։ Հարկավոր է, որ դրանք միաժամանակ դառնան նաև գիտական գիտելիքների «աճի կետեր» հասարակագիտության բնագավառում։ Նախաձեռնություն, գիտական համարձակ որոնում, օբյեկտիվ օրենքների գործողության մեխանիզմների մանրամասն վերլուծություն, երևույթները փոխադարձ կապերի մեջ, հակասական զարգացման մեջ տեսնելու, պրակտիկային հիմնավորված հանձնարարականներ և հուսալի կանխատեսումներ տալու կարողություն. ահա թե այսօր ինչ է պահանջվում հասարակագետներից։

Ներկայումս գիտական հիմնարկություններում աշխատանք է ծավալվում պլենումի գաղափարների ու հիմնադրույթների իրականացման նպատակով։ Անհրաժեշտ է իրականացնել ողջ հասարակագիտության վճռական շրջադարձ դեպի ռեալ, գործնական խնդիրները, որ առաջադրում է կյանքը։ Ուստի կարևոր է, որ հասարակագիտական բոլոր գիտական հիմնարկությունները, բուհերի ամբիոնները, գիտահետազոտական ինստիտուտում կամ ուսումնական հաստատությունում աշխատող յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր գիտնական և դասախոս քննադատաբար վերաիմաստավորեն իրենց գործունեությունը պլենումի որոշումների լույսի ներքո և կոնկրետ հետևություններ անեն իրենց համար։

Գիտական որոնումը կարող է արդյունավետ լինել միայն այն ժամանակ, երբ այն ամուր խարսխվում է մարքս-լենինյան աշխարհայացքի և մեթոդոլոգիական սկզբունքների վրա, շարունակ կողմնորոշվում է դեպի դասակարգային չափանիշները և ծառայում տնտեսավարման ու կառավարման սոցիալիստական մեթոդների ավելի խոր իմացությանն ու օգտագործմանը։

Աշխարհայացքի և մտքի մեթոդոլոգիական դիսցիպլինի դերն աճում է նաև այն պատճառով, որ այժմ հետազոտությունների միասնական հոսանքի մեջ ներգրավվում են գիտելիքների ամենատարբեր բնագավառների, այլ ո՛չ



միայն համեմատաբար մոտ բնագավառների, ներկայացուցիչները։ Մենք ականատեսներն ենք այն բանի, թե ինչպես են խորանում փոխադարձ կապերը հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների միջև, բնական գիտությունների հետազոտական մեթոդներն առավել լայնորեն են օգտագործվում հասարակագիտության մեջ, աճում է բնախույզ գիտնականների հետաքրքրությունը աշխարհայացքային պրոբլեմների, գիտության զարգացման սոցիալական և բարոյական ասպեկտների նկատմամբ։ Տարբեր գիտությունների դաշինքի ամրապնդումը պահանջում է խորապես տիրապետել գիտական մտածողության մարքս-լենինյան դիալեկտիկական-մատերիալիստական մեթոդոլոգիային՝ հասարակության ու բնության ճանաչման միակ հուսալի միջոցին։

Սովետական գիտնականը ոչ թե նեղ մասնագետ է, այլ հասարակական լայն հետաքրքրություններ ու աշխարհայացքային մտահորիզոն ունեցող մարդ, հայրենասեր ու քաղաքացի, որն իր աշխատանքը համարում է ծառայություն ճշմարտությանը, ժողովրդի բարօրությանը, կոմունիստական վեհ իդեալներին։

Հասարակական պրոցեսների գիտական կառավարման կատարելագործման համեմատ՝ նոր ձևեր է ընդունում և նոր բովանդակությամբ հագենում պրակտիկայի հետ տեսության կապերի համակարգը։ Այդ կապերը զարգանում և հարստանում են երկու հիմնական ուղղություններով։ Մի կողմից՝ աճում է քաղաքական, տնտեսական և դաստիարակչական գործունեության կախումը գիտական հետազոտությունների արդյունքներից։ Այժմ հատկապես հարկավոր են փիլիսոփայական խոր ընդհանրացումներ, տնտեսական ճշգրիտ հաշվարկներ ու կանխատեսումներ, սոցիոլոգիական ճիշտ հետազոտություններ։ Հարկավոր են նրա համար, որ գործենք անսխալ և հեռանկարով։

Մյուս կողմից՝ աճում է հասարակական պրակտիկայի զանազան բնագավառներից բխող ազդակների նշանակությունը տեսական աշխատանքի համար։ Տնտեսական և կուլտուրական շինարարության հանգուցային տեղամասերում այժմ կարևոր փորձեր են կատարվում, կուտակվել է տնտեսական և սոցիալական բարդ հարցերի, գիտատեխնիկական պրոբլեմների լուծման, արտադրության կառավարման ու կազմակերպման կատարելագործման, բարձր արտադրողական աշխատանքի խթանման, կարգապահության ամրապնդման և դաստիարակչական աշխատանքի բարելավման փորձ։ Կենսական հարուստ բովանդակությամբ հագեցած այդ փորձը պահանջում է համակողմանի գիտական իմաստավորում և ընդհանրացում։

Միևնույն ժամանակ պրակտիկան ևս պետք է դյուրազգաց լինի գիտության նկատմամբ, ուշադիր ունկնդրի դրա հետևություններին ու խորհուրդներին։ Բոլոր արժեքավոր գիտական արդյունքներն անհրաժեշտ է արագ պրակտիկ շրջանառության մեջ դնել, նպատակասլաց օգտագործել արտադրության արդյունավետության բարձրացման, տնտեսական և դաստիարակչական գործունեության համար։

Այդ առնչությամբ անհրաժեշտ է շոշափել նաև գիտության ու գաղափարախոսական պրակտիկայի փոխներգործության հարցը։ Պլենումում խոսվեց գիտական և պրոպագանդիստական օղակների որոշ անջատվածության մասին։ Այդ անջատվածությունը պետք է վճռականորեն հաղթահարել։ Այդ պայմանով միայն կարելի է հասնել այն բանին, որ, ինչպես նշեց ընկեր Յու. Վ. Անդրոպովը, «մարդը մեզ մոտ դաստիարակվի ոչ թե որպես պարզապես գիտելիքների որոշակի պաշար կրող, այլ նախ և առաջ որպես սոցիալիստական հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող, իրեն բնորոշ գաղափարական հիմնադրույթներով, բարոյականությամբ ու շահերով, աշխատանքի ու վարվելակերպի բարձր կուլտուրայով»։

Հասարակական գիտությունները պետք է դառնան մեր գաղափարախոսական կոմպլեքսի «թեժ արտադրամասը», որտեղ ո՛չ միայն դարբնվում են գիտելիքներ, այլև ծրագրվում են ուղիներ ու մեթոդներ՝ գիտելիքները վերածելու «հասարակական պրակտիկայի, ռեալ կենսական պրոցեսի անմիջական մարմինների» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. II, стр. 215). Հասարակագիտության այս երկակի դերը դրված է ո՛չ միայն իր բովանդա-

կությամբ, այլև մասսաների շրջանում տարվող աշխատանքի մեթոդներով մեր գիտական գաղափարախոսության բուն հիմքում: «...Մեր ագիտացիայի և պրոպագանդայի հիմքը դարձնենք վերլուծությունը...»՝ այսպիսի խնդիր էր դնում Լենինը (ԵԼԺ, հ. 40, էջ 293):

Պրոպագանդայի ու դաստիարակության ոլորտում պրակտիկ աշխատանքի համար կարևոր է իմանալ ո՛չ միայն սոցիալ-տնտեսական պրոցեսների էությունը, այլև ինչպես ողջ հասարակության, այնպես էլ բնակչության առանձին խմբերի ու խավերի հասարակական գիտակցության և սոցիալական հոգեբանության մեջ դրանց բեկման առանձնահատկությունները, բնույթը: Այստեղ ևս շատ բան կարող է տալ կոնկրետ-սոցիոլոգիական հետազոտությունների նպատակամետ ու լայն զարգացումը:

Դաստիարակչական գործունեությունն անհատի ձևավորման ու զարգացման ամենանուրբ ոլորտն է: Ուստի նույնիսկ նրա հաջող փորձը, վերցրած լինելով կոնկրետ իրավիճակից և զետեղված լինելով չորացրած սխեմաների «հերբարիումում», հաճախ կորցնում է իր թարմությունը, կենսական համոզկերությունը, ներգործունությունը: Դաստիարակության այս յուրահատկությունը պահանջում է նաև համապատասխան սոցիալ-փիլիսոփայական լայն մոտեցում իր նկատմամբ:

Մեր աշխարհայացքի ու մեթոդոլոգիայի սկզբունքներն ու հասկացությունները Լենինը համարում էր աշխարհի իմացության ու վերափոխման, համաշխարհային-պատմական փորձի, ամբողջ դարաշրջանների ու հասարակական դասակարգերի պայքարի փորձի «արդյունք, գումար, հետևություն»: Մեր գիտության կարևոր հասկացությունները ինչպե՞ս ավելի օրգանապես կապակցենք առանձին անհատի կենսափորձի հետ, նրա առօրյա պրակտիկայի հետ: Այս և նման հարցերին պարտավոր է պատասխանել հասարակական գիտությունը: Այստեղ շատ անելիքներ ունեն և՛ փիլիսոփաները, և՛ սոցիոլոգները, և՛ մանկավարժները, և՛ հոգեբանները: Դրան է կոչում կուսակցությունը հասարակագետ կադրերին:

Բացահայտելով տեսական հետազոտությունների և սոցիալական պրակտիկայի՝ «մեկ աշխատանքում միաձուլվող ներքին փոխադարձ կապը՝ Լենինը շեշտում էր, որ տեսական աշխատանքի ողջ «անհրաժեշտությամբ, կարևորությամբ ու հսկայական ծավալով» հանդերձ, «պրոպագանդայի և ագիտացիայի պրակտիկ աշխատանքն անպայման առաջին տեղն է բռնում» այն պատճառով, որ «տեսական աշխատանքը միայն պատասխաններ է տալիս այն հարցերին, որոնք առաջադրվում են երկրորդի կողմից» (ԵԼԺ, հ. 1, էջ 372—373): Տեսական միտքը, մեր հասարակական գիտությունները կոչված են զգայուն կերպով արձագանքելու պրոպագանդայի և դաստիարակության պահանջներին, իսկ պրոպագանդայի մարմինների խնդիրն է հստակ ձևակերպել այդ պահանջները, հրաժարվելով «ընդհանրապես խնդիրների» տարտամ առաջադրումից, օգնելու հասարակագետների ջանքերը կենտրոնացնելու ամենահրատապ գործնական պրոբլեմների վրա:

Որոշակի քայլեր այս ուղղությամբ արվում են: Այժմ մշակվում է գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ պրոբլեմների գիտական հետազոտությունների կոմպլեքսային պլան մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի համար: Այն իրականացվելու է հասարակական գիտությունների ակադեմիայի և ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կողմից՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի գիտական հիմնարկների հետ համատեղ: Կազմվում է միացյալ խորհուրդ՝ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի գիտական հիմունքները զարգացած սոցիալիզմի պայմաններում», որը պետք է կոորդինացնի այդ պրոբլեմատիկայի վերաբերյալ բոլոր հետազոտությունները:

Պաշտպանության արժանի է այն պրակտիկան, երբ հասարակագետներն անմիջականորեն մասնակից են դառնում պրոպագանդայի արդյունավետության և ընդհանրապես դաստիարակության հետ կապված ամենակենսաթրրթիռ պրոբլեմների մշակմանը, երբ նրանք կուսակցական կոմիտեներից ստանում են իրենց գործունեության կոնկրետ նպատակային ծրագիր: Դա հնարավորություն է ընձեռում կոոպերացնելու զանազան գիտական դիսցիպլինների ներկայացուցիչների աշխատանքը՝ ընդհանուր պրոբլեմի մշակմանը կողմնորոշված կոմպլեքսային հետազոտական խմբեր ստեղծելու միջոցով: Վերջինը նույնպես պակաս կարևոր չէ, քանի որ մեր հասարակագիտական ինստիտուտների կազմակերպական կառուցվածքները ամենևին ոչ միշտ բավականաչափ ճկուն են, որպեսզի ժամանակին վերակողմնորոշվեն դեպի նոր պրոբլեմատիկան:

Ասվածը վերաբերում է նաև միջազգային պրոբլեմների հետազոտմանը: Ժամանակակից համաշխարհային զարգացման հրատապ հարցերի վերաբերյալ մեր պրոպագանդայի ելույթների ներգործունությունը, իմպերիալիզմի արտաքին ու ներքին քաղաքականության ռեակցիոն էության, բուրժուական ապրելակերպի փաստարկված մերկացումը, թշնամական պրոպագանդայի հերյուրանքների համոզիչ հերքումը պահանջում են զգալիորեն բարձրացնել այդ պրոբլեմների գիտատեսական մշակումների մակարդակը: Իսկ դա նաև ենթադրում է համապատասխան գիտական հիմնարկությունների կառուցվածքի և աշխատանքի կազմակերպման բարելավում:

Գիտական հիմնարկությունների կուսակցական կազմակերպությունների դաստիարակչական ու կազմակերպչական ողջ աշխատանքը կոչված է նպաստելու բարոյահոգեբանական այնպիսի մթնոլորտի ստեղծմանը, որն օգներ նոր պրոբլեմների համարձակ, նախաձեռնողական առաջադրմանը, դրանց ստեղծագործական քննարկմանը և դրանով իսկ՝ գիտական գիտելիքների հարստացմանը: Հասարակագետ գիտնականը չպետք է խույս տա սուր հարցերից, շրջանցի ռեալ բախումներն ու հակասությունները: Բանը, իհարկե, այն չէ, որ հավաքենք դժվարություններն ու թերությունները և դրանում տեսնենք «մտածողության արմատականություն» և «մոտեցման քննադատություն», այլ այն, որ հետազոտենք դրանց կոնկրետ ակունքներն ու պատճառները, որոշենք դրանց հաղթահարման առավել արդյունավետ ուղիները:

Պլենումի ողջ ոգին պահանջում է սոցիալական երևույթների լրջմիտ վերլուծություն, նոր լուրջ ընդհանրացումներ, որոնք ունակ են պատասխանելու տնտեսական շինարարության, հասարակական հարաբերությունների, հոգևոր կյանքի զարգացման, գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման գործնական պահանջմունքներին: Եվ մեր գիտության այս գլխավոր խնդիրը պետք է լուծվի եռանդուն և հետևողականորեն:

Մեր լենինյան կուսակցությունը չտեսնված հեղինակություն է նվաճել որպես սովետական ժողովրդի քաղաքական առաջնորդ և նրա համաշխարհային-պատմական հաղթանակների կազմակերպիչ: Իր բոլոր մեծագործություններում նա ղեկավարվում է Մարքսի—Էնգելսի—Լենինի մեծ ուսմունքով: «Մենք՝ սովետական կոմունիստներս,— ընդգծեց ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— հպարտանում ենք, որ պատկանում ենք համաշխարհային քաղաքակրթության ողջ պատմության մեջ ամենաազդեցիկ գաղափարական հոսանքին՝ մարքսիզմ-լենինիզմին»: Եվ կոմունիստի համար չկա ավելի պատվավոր պարտականություն, ավելի վեհ պարտք, քան մասսաներին հաղորդել մարքս-լենինյան գաղափարները, բացահայտել աշխատանքի մարդկանց կենսական շահերի հետ կուսակցության քաղաքականության անխզելի կապը, իր գիտելիքները, եռանդը, փորձը նվիրաբերել նոր մարդու դաստիարակության ազնիվ գործին:

«Коммунист» № 15, 1983

ՍՄԿԿ XXVI համագումարի

որոշումները գործողության մեջ

# ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԸ

**Վ. ՄԵՀՐԱԲՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության
բաժնի վարիչ

*ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԷԼԵԿՏՐԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ արդյունաբերությունը, կենսագործելով ՍՄԿԿ XXVI համագումարի և կուսակցության Կենտրոնական կոմիտեի հետագա պլենումների որոշումները, մշտապես մեծացնում է իր արտադրական հզորությունն ու տեխնիկական հագեցվածությունը։ Ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում էլեկտրասարքավորումները կանխորոշում են գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը։ Ուստի էլեկտրատեխնիկական արդյունաբերության առջև կարևոր խնդիրներ են դրված. ապահովել էկոնոմիկայի պահանջմունքները էլեկտրասարքավորումների նկատմամբ, բարձրացնել դրանց արդյունավետությունը, բարելավել սպառողական հատկանիշները։ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի և գիտատեխնիկական առաջընթացի տեմպերն արագացնելու միջոցառումների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներով խնդիր է դրվում տեխնիկապես վերազինել էլեկտրատեխնիկական ողջ արդյունաբերությունը, որն արմատական վերափոխումների կհանգեցնի ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում, իսկ դա հավասարազոր է երկրի նյութական, ջերմաէներգետիկ և աշխատանքային ռեսուրսների բազմապատկմանը։*

*Մեր հանրապետությունն ունի զարգացած էլեկտրատեխնիկական արդյունաբերություն, որը նկատելի տեսակարար կշիռ ունի երկրում։ Այդ համակարգն ընդգրկում է մեկուկես տասնյակից ավելի միավորումներ ու ձեռնարկություններ, գիտահետազոտական ինստիտուտներ, կոնստրուկտորական բյուրոներ։ Այն մասնագիտացել է 0,25-ից մինչև 100 կվտ և ավելի հզորության փոփոխական հոսանքի շարժիչների, էլեկտրավակուումային վառարանների, լամպերի, լուսատեխնիկական և էլետրաեռակցման սարքավորումների, կիսահաղորդիչ ուժային սարքերի, չմեկուսացված և փաթեթավորված, ինչպես նաև էմալապատ լարերի, բարձր ջերմաստիճանային տաքացուցիչների արտադրության մեջ։*

*Նշված ձեռնարկությունների և կազմակերպությունների ադմինիստրացիաների, կուսակցական կոմիտեների և կոլեկտիվների մշտական ուշադրության կենտրոնում են արտադրության ինտենսիվացման ու արդյունավետության բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի, թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարելավման, աշխատանքային ու արտադրական կարգապահության ամրապնդման հարցերը։ Եվ, միանգամայն օրինաչափորեն, հանրապետության ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղը հաջողությամբ է կատարում արտադրանքի թողարկման և իրացման պետական առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Արտադրանքի աճը հիմնականում ձեռք է բերվում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։*



*Որոշակի աշխատանքներ են կատարվում խնայողության ռեժիմն ուժեղացնելու ասպարեզում։ Այդ նպատակով մի շարք ձեռնարկություններում գործում են նյութական, աշխատանքային և էներգետիկ ռեսուրսների խնայողության կոորդինացիոն խորհուրդներ։ Կատարված աշխատանքի շնորհիվ միայն 1982 թ. տնտեսված է 6 հազար տոննա սև և գունավոր մետաղ, 5,6 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 35 հազար տոննա պայմանական վառելանյութ և այլն։*

*Զգալիորեն ամրապնդվել է աշխատանքային կարգապահությունը, կրճատվել են աշխատաժամանակի կորուստները, ներհերթափոխային և շուրջօրյա պարապուրդները։ Շատ կոլեկտիվներում նկատվում է կադրերի հոսունության նվազեցման միտում։*

*Էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում որոշակի աշխատանքներ են իրականացվում արտադրանքի նոր տեսակների յուրացման և ներդրման նպատակով։ Միայն 1982 թվականին ճյուղի ձեռնարկությունները յուրացրել են երեք տասնյակից ավելի նոր արտադրատեսակ։ Նկատելիորեն բարելավվել են ինքնարժեքի, շահութաբերության, ձեռքի աշխատանքի կրճատման ցուցանիշները։ 1982 թվականին արտադրանքի ինքնարժեքի արտապլանային իջեցումից ստացվել է մեկ միլիոն ռուբլու խնայողություն, իսկ թողարկված արտադրանքի յուրաքանչյուր ռուբլու դիմաց ծախսերը նվազել են 0,21 կոպեկով։ Ստացվել է 1,2 միլիոն ռուբլու գերպլանային շահույթ։ Առավել լրիվ են օգտագործվում արտադրահզորությունները, մեծանում է ֆոնդազինվածությունը, բարելավվում են նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման աշխատանքները։*

*Հնգամյակի առաջին երկու տարում իրացված են մոտ երկու հարյուր միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, որի շնորհիվ նկատելիորեն բարելավվել է ձեռնարկությունների նյութատեխնիկական բազան։ Ընթացիկ հնգամյակում «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումը հագեցվել է 1,3 միլիոն ռուբլու ավելի քան հարյուր միավոր արդիական սարքավորումներով, «Հայէլեկտրապարատ» արտադրամիավորման հավաքման և ներդրման արտադրամասերում տեղակայվել են հոսքային գծեր՝ 60 հազար ռուբլու պայմանական տնտեսական արդյունքով։ «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորումում գործարկված է շարժիչների թողարկման ավտոմատ գիծ, իսկ կիսահաղորդչային տեխնիկայի կոնստրուկտորական-տեխնոլոգիական հատուկ բյուրոյում միայն նորագույն տեխնոլոգիայի ներդրումից ստացվել է 62 հազար ռուբլու տնտեսական արդյունք։*

*Ճյուղի ձեռնարկություններում զգալի տեղաշարժեր են նկատվում աշխատանքի կազմակերպման և խթանման նոր ձևերի կիրառման ասպարեզում։ «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորումների աշխատանքի դրական փորձը տարածվում է մյուս ձեռնարկություններում, այն լայնորեն քննարկվեց բրիգադավարների և արտադրության առաջավորների հավաքներում։*

*Էլեկտրատեխնիկական արդյունաբերության ամենախոշոր արտադրամիավորումը «Հայէլեկտրամեքենան» է, որի գլխավորող ձեռնարկությունը՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը, թողարկում է գեներատորներ, ուժային տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ։ Միավորման արտադրանքը կիրառվում է երկրի գրեթե բոլոր էներգետիկ օբյեկտներում և առաքվում աշխարհի 89 երկրներ։ Ձեռնարկությունը հագեցված է նորագույն սարքավորումներով, նրա արտադրամասերում և տեղամասերում գործում են հարյուրավոր ավտոմատ և կիսաավտոմատ հաստոցներ, հոսքային գծեր։ Այն միաժամանակ հանրապետությունում հումքային, ջերմաէներգետիկ և այլ նյութական ռեսուրսների խոշորագույն սպառողներից է։*

*Առաջնորդվելով ՍՄԿԿ XXVI համագումարի և ՀԿԿ XXVII համագումարի որոշումներով, կենսագործելով հումքային, ջերմաէներգետիկ և մյուս նյութական ռեսուրսները խնայողաբար ծախսելու վերաբերյալ կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշումները և նվազագույն ծախսումներով առավելագույն վերջնական արդյունքի հասնելու վերաբերյալ ընկեր Յու. Վ. Անդրոպովի ցու-*

ցումները՝ միավորման ադմինիստրացիան, կուսակցական կազմակերպու-
թյունը կազմակերպչական ու քաղաքական աշխատանքով մոբիլիզացնում են
կոմունիստների, կոլեկտիվի բոլոր անդամների ուժերը արտադրության ար-
դյունավետությունը բարձրացնելու, նյութական ռեսուրսները խնայողաբար օգ-
տագործելու նպատակով։ Այդ հարցերը մշտապես քննարկվում են կուսկոմի-
տեում, կուսակցական ու բանվորական ժողովներում, դրանք ուսումնասիրվում
են քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգում,
լուսաբանվում պատի թերթերում, «Էլեկտրամեքենաշինարար» բազմատպա-
քանակ թերթի էջերում և ռադիոհանգույցի հաղորդումներում, ցուցադրական
նյութերի միջոցով, բանվոր-ղեկավարակների ամենօրյա աշխատանքում։

Այստեղ լուրջ ուշադրություն է նվիրվում երկրի առաջավոր ձեռնարկու-
թյունների լավագույն փորձի ուսումնասիրմանն ու տարածմանը։ Տարեցտարի
ընդլայնվում են «Հայէլեկտրամեքենայի» փոխադարձ կապերը, տնտեսական
ու ստեղծագործական համագործակցությունը Միության համասեռ ձեռնար-
կությունների և կազմակերպությունների հետ։ Առանձնապես սերտ են հարա-
բերությունները Թբիլիսիի «Էլեկտրաքարշային» արտադրամիավորման, Մինս-
կի տրանսֆորմատորների, Ռիգայի էլեկտրատեխնիկական, Նովոչերկասկի
էլեկտրաքարշաշինական գործարանների հետ, որոնց կոլեկտիվները տարիներ
ի վեր միմյանց հետ սոցիալիստական մրցության մեջ են։

Կիևի Պատոնի անվան էլեկտրաեռակցման և Մոսկվայի համամիութենական
էլեկտրամեքենաշինական գիտահետազոտական ինստիտուտների հետ համա-
տեղ մշակվել է ուժային տրանսֆորմատորների համար պանելային դրոշմող
ռադիատորների արտադրության մեքենայացված հոսքագիծ, որի ներդրումը,
նախնական հաշվարկներով, տասնմեկերորդ հնգամյակում կտա 600 հազար
ռուբլու տարեկան տնտեսական արդյունք, կտնտեսվեն 15 տոննա տրանս-
ֆորմատորային յուղ, մեծ քանակությամբ սև և գունավոր մետաղներ։

Էլեկտրամեքենաշինարարները նույնպես զգալի օգնություն են ցույց տա-
լիս իրենց մրցակիցներին։ Բրեժնև քաղաքի մեծ տարողության ինքնաթափերի
հանգույցների արտադրության և Նովոչերկասկի էլեկտրաքարշաշինական գոր-
ծարաններում հուսալիորեն է գործում բարդ և ոչ ստանդարտ սարքավորում-
ների արտադրությունը, որը ներդրված է «Հայէլեկտրամեքենայի» մասնագետ-
ների օգնությամբ։ Այսպիսի օրինակներ կարելի է շատ բերել։ Դրանք տարբեր
հանրապետությունների և քաղաքների ձեռնարկությունների կոլեկտիվներին
օգնում են լավ ճանաչել միմյանց, նրանց մոտ դաստիարակում ինտերնա-
ցիոնալիզմի և կոլեկտիվիզմի զգացմունք, բորբոքում սոցիալիստական մրցու-
թյունը, որը նրանցից յուրաքանչյուրի համար արտադրության արդյունավե-
տության և աշխատանքի որակի բարձրացման, ժողովրդական հարստության
պահպանման ու բազմապատկման, նյութական, ֆինանսական և աշխատան-
քային ռեսուրսների ռացիոնալ, խնայողաբար օգտագործման հուսալի գործոն է։

Խնայողության համար շարժման կարևոր առանձնահատկությունը մաս-
սայականությունն է։ Միավորման ղեկավարությունը, կուսակցական, արհ-
միութենական կազմակերպություններն արտադրական կոլեկտիվներին նպա-
տակամղում են ռեսուրսների բոլոր տեսակների տնտեսմանը, ռեզերվների ու
հնարավորությունների առավել լրիվ օգտագործմանը։ Միավորման հազարա-
վոր բանվորներ, 540 բրիգադներ, 240 տեղամասեր, արտադրամասեր և բա-
ժիններ այսօր ընդգրկված են խնայողության համար ծավալված սոցիալիս-
տական մրցության մեջ։ Ներդրվում է աշխատանքի կազմակերպման և վար-
ձատրության բրիգադային եղանակը, այդ մեթոդով աշխատում է բանվորների
ընդհանուր թվի 65 տոկոսը։ Ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարում
մշակվել և ներդրվել է նոր տեխնիկայի 324 միջոցառում՝ 4,6 միլիոն ռուբլու
տարեկան պայմանական արդյունքով։ Մեծ քանակությամբ հումքի և նյութերի
տնտեսում և տարեկան 2,7 միլիոն ռուբլու տնտեսական արդյունք է տալիս
նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումը։

Հումքի, նյութերի և ջերմաէներգետիկ ռեսուրսների խնայողության, ներքին
ռեզերվների հայտնաբերման ու օգտագործման նպատակով ակտիվ աշխատանք



են կատարում միավորման կոմպլեքսային էլեկտրասարքավորումների գիտա-
հետազոտական ինստիտուտի ինժեներատեխնիկական աշխատողները և գիտ-
նականները, որոնք անցած երկու տարում մշակել են ութ նոր արտադրատե-
սակներ։ Ժողովրդական տնտեսության մեջ դրանց օգտագործումը տալիս է 12
միլիոն ռուբլու տնտեսական արդյունք։ Ինստիտուտը մետաղի խնայման նոր
ռեզերվների հայտնաբերման նպատակով զգալի աշխատանքներ է ծավալում։
Մշակվում և ներդրվում են անթափոն ու սակավաթափոն տեխնոլոգիաներ։
Առհասարակ, ողջ միավորման բանվորների, մասնագետների, ինժեներատեխ-
նիկական աշխատողների առաջնահերթ խնդիրներից մեկը մետաղի խնայողու-
թյունն է, քանի որ միավորման արտադրանքի արժեքի 70—93 տոկոսը բաժին
է ընկնում սև մետաղներին։ Այդ նպատակով կատարվող հետևողական աշխա-
տանքի շնորհիվ մեկ միլիոն ռուբլու ապրանքային արտադրանքում սև մետաղ-
ների գլանվածքի ծախսումները 1980 թ. 499,7 տոննայից 1981 և 1982 թթ.
համապատասխանորեն իջեցված են մինչև 478,1 և 464,7 տոննայի։ 1975—
1982 թթ. միավորման համախառն ապրանքային արտադրանքի 21,4 տոկոս
աճի պայմաններում սև մետաղների օգտագործումն ավելացել է միայն 9,1
տոկոսով։

Խնայողության համար շարժման մեջ արտադրության մարդկանց ներգրա-
վելուն նպաստում են հումքի, նյութերի և ջերմաէներգետիկ ռեսուրսների ար-
դյունավետ օգտագործման հասարակական ստուգատեսները, որոնց ընթաց-
քում ի հայտ են բերվում խնայողության նորանոր ռեզերվներ։ Այստեղ առա-
վել վառ է դրսևորվում բանվորների սրտացավությունը ժողովրդական ունեց-
վածքի նկատմամբ, նրանց տնտեսավար, հաշվենկատ վերաբերմունքը յուրա-
քանչյուր կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի, տոննա ածխի, երկաթի, մյուս
նյութերի խնայողական ծախսման նկատմամբ։ Բանվորական այդ հոգատա-
րությունը նյութականանում է միավորման արտադրամասերում, տեղամասե-
րում, յուրաքանչյուր աշխատատեղում և ընթացիկ հնգամյակի առաջին երկու
տարում կոլեկտիվին տվել է 4,5 հազար տոննա սև մետաղի և 107 տոննա
գունավոր մետաղների գլանվածքի, 12,6 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներ-
գիայի և 27,8 հազար հեկակալորիա ջերմաէներգիայի, 427 տոննա պայմա-
նական վառելանյութի խնայողություն։ Այդ նույն ժամանակամիջոցում ար-
տադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ տնտեսվել է կես միլիոն ռուբլի։

Աշխատանքային մրցակցության բնորոշ գիծը պետական շահերի պաշտ-
պանությունն է, հասարակական արտադրության արդյունավետության բարձ-
րացման նպատակով նախաձեռնությունների ծնունդը։ Միավորման կոլեկտիվը
հանրապետությունում հանդես է եկել «Արտադրանքի ողջ աճը աշխատանքի
արտադրողականության հաշվին, առանց աշխատողների թվի ավելացման»
շարժման նախաձեռնությամբ։ Արձագանքելով մոսկվացիների՝ «Փառքն ու
պատիվը՝ ըստ աշխատանքի» կոչին, էլեկտրամեքենաշինարարները հանդես
եկան նոր նախաձեռնությամբ՝ «Յուրաքանչյուրի օրինակելի կարգապահու-
թյունից դեպի ողջ կոլեկտիվի բարձր արդյունավետ աշխատանք»։

Կոլեկտիվի ստեղծագործ աշխատանքը տալիս է իր ցանկալի արդյունք-
ները։ Ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարիներին արտադրանքի թո-
ղարկման և իրացման պլանները տեխնիկատնտեսական հիմնական ցուցա-
նիշների գծով գերակատարվել են։ Աշխատանքի արտադրողականության մա-
կարդակը կազմել է 115,9 տոկոս, որը 2,2 տոկոսով գերազանցում է պլանային
առաջադրանքը։ Արտադրության ողջ աճը ձեռք է բերվել աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման հաշվին։ Արտադրական պլանները հաջողու-
թյամբ են կատարվում նաև 1983 թվականին։ Միայն ընթացիկ տարում
երկրին տրվել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու գերպլանային արտադրանք։

Տնտեսական գործունեության բարձր արդյունքների և ստանձնած սոցիա-
լիստական պարտավորությունների կատարման համար միավորման կոլեկ-
տիվը երկու տարի անընդմեջ արժանանում է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիս-
տրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Վերջերս էլեկտրամեքենաշինարարների բազմահազար կոլեկտիվում տեղի
ունեցավ մեծ հանդիսություն։ Բանվոր դասակարգի լավագույն ներկայացու-

ցիչներից մեկին՝ միավորման հավաքող-փականագործ Նորայր Մխիթարյանին, հանձնվեց Փառքի առաջին աստիճանի շքանշան։ Այսպիսով, անվանի փականագործը անձնվեր, բարձր արտադրողական աշխատանքի, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ասպարեզում ձեռք բերած մեծ հաջողությունների, միևնույն ձեռնարկությունում երկարամյա անբասիր աշխատանքի համար հանրապետությունում առաջինը դարձավ Աշխատանքային փառքի շքանշանների լրիվ ասպետ։ Դա նաև ողջ կոլեկտիվի աշխատանքի բարձր գնահատականն է։

Էլեկտրամեքենաշինարարների հայրենանվեր գործերը լայն ճանաչում են ստացել։ Խնայողության ռեժիմի ուժեղացման գործում «Հայէլեկտրամեքենա» միավորման հաջողությունները քաղաքական և կազմակերպչական աշխատանքի մակարդակի բարձրացման, արտադրության բոլոր տեղամասերի վրա կուսակցական ազդեցության ուժեղացման, կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման նկատմամբ իրոք կուսակցական, պետական մոտեցման արգասիքն են։ Միավորման կուսակցական կազմակերպության գործունեությունը նպատակամղված է պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, հանձնարարված տեղամասի համար կոմունիստների, կադրերի պատասխանատվության բարձրացմանը, գործարարության, նախաձեռնության և խստիվ պահանջկոտության մթնոլորտի ստեղծմանը։ Այս ամենը նպաստում է խնայողության ռեժիմի ամրապնդմանը, խնայողաբար տնտեսավարելու մեթոդների լայն արմատավորմանը։

Մինչդեռ ձեռնարկությունում ամենևին էլ ոչ բոլոր ռեզերվներն ու հնարավորություններն են օգտագործված հումքի, ջերմաէներգետիկ և մյուս նյութերի առավել ռացիոնալ օգտագործման ասպարեզում։ Խնայողության խստագույն ռեժիմի պահպանումը դեռևս չի դարձել յուրաքանչյուր արտադրամասային կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպության, արտադրությունների տնտեսական ղեկավարների, արտադրամասերի, տեղամասերի, տեխնիկական, արտադրական և մատակարարող ծառայությունների ամեն մի աշխատողի ամենօրյա հոգածության առարկան։

Տնտեսական ղեկավարները, կուսակցական կոմիտեն նյութական ռեսուրսների ծախսումների վիճակը գնահատելիս հաճախ բավարարվում են ընդհանուր ցուցանիշներով, հարկ եղած խորությամբ ու քննադատաբար չեն վերլուծում այդ աշխատանքների արդյունքներն ըստ արտադրությունների, արտադրամասերի ու տեղամասերի։ Ընդհանուր առմամբ, միավորումն ունի էլեկտրաէներգիայի խնայողություն, մինչդեռ կոմպլեքսային էլեկտրասարքավորումների գիտահետազոտական ինստիտուտը 152,4 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիայի գերածախս է տվել, որի համար հազարավոր ռուբլիների տուգանք է վճարել։ Էլեկտրաէներգիայի անարտադրողական ծախսումները կոմպենսացնող հարմարանքների հզորությունների կարգավորման բացակայության, ռեակտիվ հզորությունների սահմանված աստիճանը չպահպանելու հետևանք են։ Միավորումը խախտում է գազի օգտագործման ֆոնդային կարգապահությունը։ 1981 թ. բնական գազի լիմիտը գերազանցվել է 5,4 հազար խորանարդ մետրով, իսկ 1982 թ.՝ 3,3 հազարով։

Հանրապետության մի շարք ձեռնարկություններում, այդ թվում նաև «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում, անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում նավթամթերքների խնայողաբար օգտագործմանը։ Վառելիքի և քսանյութերի, մասնավորապես ավտոբենզինի պահեստներում պատշաճ կարգով չի վարվում հաշվառման, հաշվետվությունների և գույքագրման գործը, չեն կարգավորված ծախսումների և պահպանման նորմաները։ Առհասարակ, մի շարք դեպքերում խախտվում է նյութական ռեսուրսների պահպանման սահմանված կարգը, որն անխուսափելիորեն հանգեցնում է զգալի կորուստների։ Անթույլատրելի են արտադրության մեջ օգտագործվող հումքի ու նյութերի ծախսումների և մնացորդների վերաբերյալ հաշվետվությունների խեղաթյուրումների դեպքերը։ Միավորումում առկա են ալյումինի, պղնձի, արույրի



գլանվածքի չօգտագործված ռեսուրսների մնացուկներ և անհրաժեշտ միջոցներ չեն գործադրվում դրանք իրացնելու համար։

Մասնագետների հաշվարկներով, միավորումն ունի ռեսուրսապահպանիչ մեքենաների ու ագրեգատների, երկրորդային ռեսուրսների օգտագործման լայն հնարավորություններ։ Միայն վառարաններից հեռացող գազի ջերմության օգտագործումը տարեկան կտա հազար տոննա, իսկ կաթսաների անընդհատ փչամաքրման ջերմության օգտագործումը՝ 90 տոննա պայմանական վառելանյութի տնտեսում։

Դեռևս ցածր է մետաղների օգտագործման գործակիցը, որը կազմում է 0,7, իսկ առանձին իրերի հաշվով՝ ավելի ցածր։ Իսկ դա նշանակում է, որ արտադրության մեջ օգտագործված մետաղի մեկ երրորդը վերածվում է թափոնի և ջարդոնի։ Մետաղի կորուստներ են տրվում արտադրության պրոցեսում, որտեղ թույլ է վերահսկողությունը մշակված ռացիոնալ տեխնոլոգիաների կիրառման նկատմամբ։ Առաջացած բազմապիսի թափոններն ու մնացուկներն արտադրության մեջ չեն կիրառվում։ Առանձին տեղամասերում մետաղի կորուստ է առաջանում ռացիոնալ ձևվածքի մեթոդներն անտեսելու հետևանքով։ Եվ տարօրինակ է, որ այսպիսի պայմաններում միավորումը մշտապես թերակատարում է ինչպես սև, այնպես էլ գունավոր մետաղների ջարդոնի և մնացուկների հանձնման առաջադրանքները։ Միայն անցած երկու տարում, ջարդոնի պլանները չկատարելու համար միավորումը վճարել է 70 հազար ռուբլու տուգանք։

Նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման վրա բացասաբար են անդրադառնում ցածրորակ արտադրանքի թողարկման և անկանոն մատակարարումների դեպքերը։ Միայն անցած երկու տարում ձեռնարկությունը պատվիրատուներից ստացել է 170 վնասապահանջ, որի դիմաց մեկ միլիոն ռուբլու տարբեր տուգանքներ են վճարվել։ 1982 թ., նախորդ տարվա 35 տոկոսի դիմաց պետական որականիշով արտադրանքի բաժինը կազմել է 32 տոկոս։

Դժվար է գերագնահատել նյութական ռեսուրսների տնտեսման, խնայողության ռեժիմի կիրառման, արտադրության արդյունավետության և որակի բարձրացման համար սոցիալիստական մրցության գործուն դերը և նշանակությունը։ Մինչդեռ միավորման կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները լիովին չեն օգտագործում սոցիալիստական մրցության հնարավորությունները, դեռ ավելին, առկա են այդ կարևոր գործի նկատմամբ ձևական մոտեցման փաստեր։ Բնական է, որ մրցության պայմանների մեջ նախատեսվում են՝ աշխատանքի արդյունքներն ամփոփելիս հաշվի առնել նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ցուցանիշները։ Չնայած դրան, երբեմն առանձին արտադրամասեր և տեղամասեր դասվում են սոցիալիստական մրցության առաջավորների շարքում և պարգևատրություններ ստանում այն դեպքում, երբ նրանք չեն ապահովել հումքի և նյութերի խնայողության առաջադրանքները։ Կուսակցական կոմիտեի առաջնահերթ խնդիրն է՝ ավելի ակտիվացնել կազմակերպչական աշխատանքը, առավելագույնս բարձրացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, ապահովել նրանց ներգործությունը աշխատանքի յուրաքանչյուր տեղամասի վրա՝ սոցիալիստական տնտեսավարման սկզբունքների հետևողական կենսագործման, արտադրության արդյունավետության, նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, խնայողության խստագույն ռեժիմի կիրառման նպատակով։

ՍՄԿԿ Կենտկոմի վերջին շրջանում ընդունած որոշումներում լուրջ ուշադրություն է նվիրվում ռեսուրսների ռացիոնալ օգտագործման աշխատանքն ուժեղացնելու հարցին։ Սահմանված են այդ աշխատանքի հիմնական ուղղությունները։ Երկրի էկոնոմիկայի հետագա զարգացումը, դրա ինտենսիվացու-

մը, ՍՍՀՄ էներգետիկ ծրագրի իրացումն անխզելիորեն կապված են նյութական ռեսուրսները խնամքով օգտագործելու հետ։

Կուսակցական, տնտեսական մարմինների խնդիրն է՝ ապահովել ռեսուրսների խնայողության գործնական հարցերի քննարկումը յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, բանվորների ու ծառայողների ջանքերն ուղղել հումքի և մյուս նյութերի տնտեսման ռեզերվների հետագա հայտնաբերմանն ու օգտագործմանը, դրանց կորուստների կտրուկ նվազեցմանը, ուժեղացնել ռեսուրսների տնտեսման ամբողջ աշխատանքի ընթացքի վերահսկումը, ըստ ամենայնի պաշտպանել ու տարածել առաջավոր փորձը, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, ռացիոնալիզատորների և գյուտարարների առաջարկությունները։ Միջոցառումներ նախատեսել աշխատանքի կազմակերպման, էներգետիկ ռեսուրսների խնայողաբար ու ռացիոնալ օգտագործման նպատակով յուրաքանչյուր աշխատատեղում պայմաններ ստեղծելու համար՝ տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Ուշադրություն պետք է դարձնել նյութախնայողական տեխնիկայի ու տեխնոլոգիայի ստեղծման և արտադրության մեջ դրանց ներդրման պլաններն անվերապահորեն կատարելու, նյութերի ծախսման նորմավորման սիստեմը կատարելագործելու անհրաժեշտության վրա։

Էլեկտրամեքենաշինարարների կոլեկտիվը, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մյուս միավորումները, ձեռնարկություններն ու կազմակերպությունները սոցիալիստական բարձր պարտավորություններ են ստանձնել տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները գործի վերածելու համար։ Պետական պլանների և ստանձնած պարտավորությունների անթերի կատարումը ճյուղի արտադրական կոլեկտիվների լուրջ ներդրում կլինի՝ ամբողջությամբ վերցրած հանրապետության արդյունաբերության նոր վերելքի, հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման գործում։

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՊԱԳԱՆ

Հ. ԵՊԻՍԿՈՊՈՍՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ էության մասին շատ բան է ասում արդեն նրա անվանումը։ Ինչպես ամեն մի հեղափոխություն, գիտատեխնիկական հեղափոխությունը նույնպես մի շրջադարձային կետ է, որակապես նոր աստիճան՝ տվյալ դեպքում գիտության ու տեխնիկայի զարգացման գործում։ Այդ աստիճանը բնութագրվում է նրանով, որ միասնական պրոցեսում միաձուլվում են նրանց նոր հասումները, որոնք հեղաշրջում են առաջացնում ինչպես գիտական ճանաչողության հիմունքների մեջ, այնպես էլ արտադրական պրոցեսում։ Մենք համամիտ ենք ակադեմիկոս Բ. Մ. Կեդրովի այն կարծիքին, որ «մեր օրերի բնագիտության ու տեխնիկայի զարգացման էական առանձնահատկությունն այն է, որ մեկ և մյուս բնագավառում տեղի ունեցող հեղաշրջումը միևնույն միասնական պրոցեսի՝ արդի գիտատեխնիկական հեղափոխության տարբեր կողմերն են»։

Այդ հեղաշրջումը կապված է ատոմային էներգիայի հայտնագործության և կիրառման հետ, ավտոմատացման զարգացման, էլեկտրոնային-հաշվիչ մեքենաների, կիբեռնետիկայի ստեղծման, տիեզերական տարածության նվաճման հետ, քիմիայի հաջողությունների, գիտությունների մաթեմատիկացման, կենսաբանության բուռն առաջընթացի հետ, կենդանի օրգանիզմների խորքային կառուցվածքների մեջ ներթափանցման, գիտության ու տեխնիկայի մյուս բնագավառների հայտնագործությունների ու դրանց գործնական կիրառման հետ։

Այս հաջողությունների շնորհիվ նոր աստիճանի է բարձրանում աշխարհի տեսական ու գործնական յուրացումը։ Ընդլայնվում և խորանում են մարդկային գիտելիքները, ընդգրկելով նորանոր բնագավառներ ու ոլորտներ։ Վերափոխվում է գիտության հասկացութային ապարատը, ստեղծվում են նոր գիտություններ, հետազոտության նոր մեթոդներ ու միջոցներ, աննախընթաց թափով աճում է գիտելիքների, գյուտերի ու հրապարակումների թիվը՝ հեղափոխություն առաջ բերելով ինֆորմացիայի ասպարեզում («ինֆորմացիոն պայթյուն»)։

Դրա հետ մեկտեղ հեղաշրջում է տեղի ունենում նաև արտադրության, դրա գործիքների ու աշխատանքի առարկաների ասպարեզում, էներգետիկայում, տեխնոլոգիայում, աշխատուժի ֆունկցիաներում, աշխատանքի ու կառավարման կազմակերպման գործում, որը հանգեցնում է արտադրաուժերի զարգացման վիթխարի թռիչքի և արտադրության նոր՝ ԷՀՄ-ների, ռոբոտատեխնիկայի, կիբեռնետիկայի բազայի վրա ավտոմատացված տեխնոլոգիական եղանակի ստեղծմանը։ Այդ է ԳՏՀ-ի գլխավոր ուղղությունը արտադրաեղանակի անմիջական ոլորտում, որի հետ են կապված նոր որակական փոփոխությունները աշխատանքի բնույթում, արտադրապրոցեսում մարդու ունեցած դիրքում և դերում, որոնք և առաջացնում են նոր տեսակի աշխատողի պահանջարկ։

Այս փոփոխությունների ազդեցության ներքո են ընթանում գիտության, տեխնիկայի և արտադրության ինտեգրացման նոր, ավելի բարդ ձևերի հետագա խորացումն ու զարգացումը, գիտության՝ որպես անմիջական արտադրաուժի, դերի մեծացումը։ Այժմ արտադրապրոցես են թափանցում նաև հասարակական գիտությունները։ Դրանց կիրառումը ժամանակակից արտադրության պրոցեսում նույնպես տեխնիկական անհրաժեշտություն է դառնում, և դրանք բնական ու տեխնիկական գիտությունների կողքին սկսում են ավելի ու ավելի շատ կատարել անմիջական արտադրաուժի ֆունկցիաներ։ Իհարկե, հասարակական գիտությունները չեն կորցնում իրենց հիմնական կոչումը և չեն փոխարինում ինժեներատեխնիկական ու կոնստրուկտորական լուծումներով զբաղվող հատուկ գիտություններին, այլ լրացնում են իրենց բնագավառի գիտելիքներով։ Այդ հիման վրա հասարակական մի շարք գիտություններում արդեն առաջացել ու շարունակում են զարգանալ կիրառական նոր ուղղություններ, որոնք արտացոլում են հասարակական գիտությունների՝ անմիջականորեն արտադրաոլորտը թափանցելու միտումը և պարունակում են բնագիտական ու ինժեներական գիտելիքների որոշակի բաժին (մաթեմատիկական էկոնոմիկա, տնտեսական կիբեռնետիկա, ինժեներական հոգեբանություն, կիրառական լեզվաբանություն, տեխնիկական էսթետիկա և այլն)։

ԳՏՀ-ն, լինելով արդի դարաշրջանի գիտատեխնիկական առաջընթացի արտահայտությունը, միևնույն ժամանակ ծագումնաբանորեն կապված է գիտության ու տեխնիկայի ողջ նախորդ զարգացման հետ։ Այն նախապատրաստված էր դրանց բազմաթիվ նվաճումներով և ողջ հասարակական զարգացման ընդհանուր ընթացքով։ Այս առումով հարկավոր է հատկապես նշել արդյունաբերական հեղափոխության և մեքենայական արտադրության առաջացման, գիտության՝ անմիջական արտադրաուժի վերաճման դերը, ինչպես նաև արտադրության և տնտեսական ռեսուրսների համակենտրոնացումը, որոնք հնարավորություն են ընձեռում ապահովելու ԳՏՀ-ի հետ կապված հիմնարար գիտական պրոբլեմների լուծման համար անհրաժեշտ տեխնիկական բազան և նյութական ծախսումները։

ԳՏՀ-ն, իհարկե, չի սահմանափակվում գիտատեխնիկական առաջընթացի ու արտադրաուժերի ոլորտով։ Այն իր հասարակական կողմն ունի, օժտված է սոցիալ-հեղափոխական պոտենցիալով։ Հեղաշրջում առաջացնելով արտադրապրոցեսի հիմքերում և թափանցելով մարդու կյանքի մյուս բնագավառները՝ այն ուղղակի կամ միջնորդավորված կերպով շոշափում է նաև սոցիալական հարաբերությունները, բազմաթիվ փոփոխություններ առաջացնում դրանց մեջ։ Այդ փոփոխությունները բեկվում են հասարակական սիստեմի, դասակարգային հարաբերությունների կառուցվածքի բարդ մեխանիզմի միջոցով։ Ուստի գիտատեխնիկական և սոցիալական առաջընթացի միջև ավտոմատ փոխգործողություն չկա։

Լինելով համապարփակ երևույթ, շոշափելով բոլոր երկրներն ու մայրցամաքները, ծավալվելով և՛ սոցիալիստական, և՛ կապիտալիստական երկրներում, ԳՏՀ-ն իր վրա կրում է այդ երկու հակադիր սիստեմների կնիքը։ Սոցիալիզմն այս ասպարեզում ևս դրսևորում է իր առավելությունները, ապահովելով ներդաշնակ միասնությունը գիտատեխնիկական և սոցիալական առաջընթացի միջև։ ԳՏՀ-ի առաջադրած սոցիալական նոր խնդիրներն ու պրոբլեմները համընկնում են հասարակության կոմունիստական վերափոխման հեռանկարներին։ Այդ մասին համոզիչ կերպով վկայում է Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների փորձը, որտեղ գիտատեխնիկական առաջընթացի կազմակերպման ողջ համակարգը ենթարկված է սոցիալական առաջընթացի խնդիրներին, աշխատավորների շահերին, նրանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի հարաճուն բարձրացման, անհատի համակողմանի զարգացման շահերին։ Նրանք հաջողությամբ լուծում են ԳՏՀ-ի հասումները սոցիալիզմի առավելությունների հետ օրգանապես միացնելու խնդիրը։ ՍՄԿԿ XXVI համագումարի ընդունած տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների ծրագիրը նոր փուլ կհանդիսանա պատմական այդ խնդրի իրականացման գործում։



Կապիտալիզմը, որպես իր դարն ապրող հասարակարգ, չի կարող ապահովել իր տնտեսական ու սոցիալական կառուցվածքի համապատասխան վերակառուցումը ԳՏՀ-ի պահանջներին համեմատ, թեև փորձում է այն օգտագործել իր շահերի համար։ ԳՏՀ-ի հասումները և դրանց հիման վրա ստեղծված նոր արտադրաուժերը, արագացնելով աշխատանքի ու արտադրության հանրայնացման պրոցեսները, առավել են գերաճում մասնավոր սեփականատիրական կապիտալիստական հարաբերությունների նեղ շրջանակները։ Դրանով իսկ տեղի է ունենում կապիտալիզմին ներհատուկ սոցիալական հակամարտությունների վերարտադրություն առավել մեծ մասշտաբներով և սրությամբ, ծնունդ են առնում նոր հակասություններ։ Առանձնապես վտանգավոր ձևեր է ընդունել գիտության ու տեխնիկայի ռազմականացումը։ Իմպերիալիզմի մեղքով գիտատեխնիկական հեղափոխության մեծագույն նվաճումներն օգտագործվում են ողջ քաղաքակրթության համար սպառնալիք ներկայացնող մասսայական ոչնչացման հրեշավոր միջոցներ ստեղծելու համար։ Աննախընթաց չափերի են հասել ռազմական ծախսերը, որոնք տանում են դեպի նյութական ու հոգևոր ռեսուրսների ամայացում ու հղի են ամենաաղետալի հետևանքներով։

Գիտատեխնիկական հեղափոխության պրոբլեմների շուրջը ծավալվել է անչափ սուր գաղափարախոսական պայքար, որտեղ, ինչպես կիզակետում, արտացոլվում են արդի դարաշրջանի հիմնական հակասությունները և, ամենից առաջ, պայքարը սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև, մարքսիստական և բուրժուական աշխարհայացքների միջև։ Մենք դեռևս ԳՏՀ-ի նախնական փուլերում ենք, և այդ հեղափոխությունը անկասելիորեն շարունակում է զարգանալ, առավել լիովին են բացահայտվում նրա հիմնական ուղղությունները։ Բնականաբար, հարց է ծագում. ապագայում տեղի կունենա՞ն, արդյոք, նոր գիտատեխնիկական հեղափոխություններ և ինչպիսի՞ փոփոխություններ նրանք կառաջացնեն արտադրության մեջ և ողջ հասարակական կյանքում։

Արևմտյան որոշ հետազոտողներ այն կարծիքին են, որ գիտությունը անարգել ընթանում է դեպի «հագեցում», իսկ այստեղից էլ, իբր, առաջանում է նրա զարգացումը կասեցնելու և ԳՏՀ-ի դադարի «անխուսափելիությունը»։

Այս տեսության հեղինակներից մեկը՝ պրոֆեսոր Դ. Պրայսը, փորձում է զուտ քանակական ցուցանիշների հիման վրա ստեղծել գիտության զարգացման վերացական մոդելը, ընդհանուր առմամբ նրա անխուսափելի վերջնակետն ունեցող անհատական օրգանիզմի աճի փուլերի առանձնահատկությունների համանմանությամբ։ Այստեղից էլ նրա այն հետևությունը, որ եթե գիտության աճի կորագիծը մինչև վերջերս ընթացել է ցուցորդով, ապա այժմ ընթանում է լոգիստական կորագծով՝ նկատի ունենալով, որ այն մոտենում է «կրիտիկական կետին», «հագեցման» փուլին։ Այդպիսի շարժման վերջնական արդյունքը կլինի գիտության զարգացման անխուսափելի քարացումը։ Պրայսը դա անվանում է «ծերունական զառամյալություն», «գիտության սև օր», որը, նրա հաշվարկներով, «մեզնից հեռու է մեկ հարյուրամյակից ոչ ավելի» (Д. Прайс. Малая наука, большая наука. В сб. «Наука о науке». М., 1966, стр. 300)։ Նման հայացքներ է արտահայտում նաև ամերիկացի հայտնի ֆիզիկոս Ռ. Ֆեյնմանը։

Գիտության զարգացումը բարդ, հակասական պրոցես է։ Դրա առաջընթացը բուն գիտական ճանաչողության տրամաբանության, ինչպես նաև սոցիալական պրակտիկայի, իշխող դասակարգերի քաղաքականության առանձնահատկությունների հետևանքով միշտ չէ, որ ընթանում է ուղիղ, վերընթաց գծով։ Առանձին դարաշրջաններում, առանձին երկրներում կարող է տեղի ունենալ գիտության զարգացման դանդաղում և նույնիսկ կանգառ։ Մատնանշելով այդ երևույթները, Ջ. Բեռնալը գրում է. «Գիտության պատմությունը տարբերվում է անհամաչափությամբ. ակտիվության առանձին բռնկումներին հաջորդում են լճացման տևական ժամանակաշրջաններ, որոնք շարունակվում են մինչև նոր բռնկումը... Ակտիվության բռնկումների միջև ընկած ժամանակաշրջաններում սկսվում է դադարի ժամանակաշրջան, երբեմն այլասերման ժամանակաշրջաններ, ինչպես եղավ Եգիպտոսում փարավոնների վերջին դինաս-

տիաների դարաշրջանում և կամ կլասիկ դարաշրջանի վերջին տարիներին, կամ XVIII դարի սկզբին» (Дж. Бернал. Наука в истории общества. М., 1956, стр. 30)։

Գիտության զարգացման արգելակմանը ենթակա են նաև նրա առանձին բաժինները, բայց ընդհանրապես գիտության առաջընթացը անկասելի է և անսահման, ինչպես և մեզ շրջապատող աշխարհի զարգացումը։ Մարդկային մտածողությունը անկախ է և այս իմաստով ընդունակ է ըմբռնելու բացարձակ ճշմարտությունը, տալու գիտելիքների համապարփակ համակարգ։ Բայց իմացության դիալեկտիկայի կարևորագույն առանձնահատկություններից մեկն այն է, որ այն իրականացվում է առանձին մարդկանց միջոցով՝ նրանց սահմանափակ անձնական հնարավորություններով ու ճանաչողական ունակություններով։ Մյուս կողմից, իմացության օբյեկտը ևս շարունակ փոփոխվում է, ծնելով մատերիայի նորանոր տեսակներ, նրանց նոր հատկություններ ու որակներ։ Մատերիան անսպառ է քանակական և որակական առումով։ Ուստի մարդկային իմացությունն իր անվերջ վերընթաց շարժման մեջ անընդհատ մոտենալու է բացարձակ գիտելիքի սահմանին, բայց երբեք չի հասնի նրան։ «Այսպիսով,— ինչպես նշում է Էնգելսը,— պարզվում է, որ մարդիկ կանգնած են հակասության առաջ. մի կողմից՝ նրանց առջև խնդիր է դրված սպառիչ կերպով ճանաչել տիեզերական սիստեմն իր ընդհանուր կապակցությամբ, իսկ մյուս կողմից՝ իրենց սեփական բնությունը, ինչպես և տիեզերական սիստեմի բնությունը նրանց հնարավորություն չի տալիս երբեք լիովին լուծելու այդ խնդիրը։ Բայց այս հակասությունը ոչ միայն այդ երկու գործոնների՝ աշխարհի և մարդու բնության մեջ է. դա ամբողջ մտավոր առաջընթացի գլխավոր լծակն է կազմում և լուծվում է շարունակաբար ու ամենայն օր՝ մարդկության առաջընթաց անվերջ զարգացման մեջ...» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, «Հայաստան» հրատ., 1967, էջ 46)։ Բացարձակ և հարաբերական ճշմարտության մասին մարքսիստական փիլիսոփայության այս հայտնի դրույթը մեթոդաբանական արժեքավոր սկզբունք է քննարկվող պրոբլեմի լուծման գործում։

Նոր դարակազմիկ գիտական հայտնագործությունների հիման վրա ապագայում կհաջորդեն մի ամբողջ շարք գիտական հեղափոխություններ։ Բայց արտադրության մեջ դրանց նյութականացումը կհանգեցնի՞ արդյոք նոր համընդհանուր գիտատեխնիկական հեղափոխության, որի արդյունքը կլիներ մեքենայական տեխնիկայի վրա հիմնված արտադրության որակապես նոր տեխնոլոգիական եղանակի ստեղծումը։ Մեզ թվում է, որ ոչ։ Ավտոմատացման մեջ մարդու աշխատանքային ֆունկցիաների առարկայացումը անմիջական արտադրական պրոցեսի ոլորտում կստանա իր ավարտուն ձևը։ Կոմպլեքսային ավտոմատացված արտադրությունը մեքենայական տեխնիկայի զարգացման բարձրագույն ձևն է։

Մեքենայական արտադրության այդ առանձնահատկությունը, անցումը նրա բարձրագույն ավարտուն ձևին՝ կոմպլեքսային ավտոմատացմանը, մեր կարծիքով, ավելորդ և պարզապես անհնարին է դարձնում մեքենայական տեխնիկայի վրա հիմնված արտադրության սկզբունքորեն նոր որևէ տեխնոլոգիական եղանակի ստեղծումը, որը, իհարկե, չի նշանակում, որ արտադրության տեխնիկական բազան կմնա առանց փոփոխությունների։ Այն շարունակելու է անընդհատ կատարելագործվել ու զարգանալ։ Տեղի կունենա անցում ավտոմատացման ավելի ու ավելի բարձր փուլերի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ու ռոբոտների նոր սերունդների։ Առավել կզարգանան նաև ԳՏՀ-ի արդեն այժմ նշմարվող ուղղությունները։ Այս ամենը հնարավորություն կընձեռի անցնելու դրա նոր փուլերին։ Դրա հետ մեկտեղ, գիտության առաջընթացի և դրա նյութականացման կապակցությամբ կառաջանան ԳՏՀ-ի մի շարք այլ ուղղություններ, որոնք հեղափոխական բնույթի փոփոխություններ կառաջացնեն արտադրական պրոցեսի առանձին ոլորտներում ու գործոններում՝ աշխատանքի գործիքների ու առարկաների մեջ, տեխնոլոգիայում, էներգետիկայում, կապի ու տրանսպորտի միջոցներում և այլուր։ Դրանք նույնպես հարկավոր է դիտել որպես նոր գիտատեխնիկական հեղափոխություններ։ Բայց



դրանք տեղի են ունենալու ավտոմատացված արտադրության շրջանակներում ու դրա բազայի վրա։

Արտադրության նույնիսկ այնպիսի նոր տեսակ, որը անխուսափելիորեն կստեղծվի ապագայում՝ տիեզերքի յուրահատուկ պայմաններում, Լուսնի վրա և մյուս մոլորակներում, իրենից կներկայացնի ավտոմատացված արտադրության տարատեսակություն։ Բայց դա նոր դարաշրջան կլինի ինչպես մարդկային իմացության զարգացման և բնության ուժերի տիրապետման գործում, այնպես էլ ողջ հասարակության կյանքում։ Կծագի մարդկային կեցության ու քաղաքակրթության տիեզերական ձև։ Մարդկության առջև կծառանան միանգամայն նոր խնդիրներ, որոնք կապված են արտերկրային պայմաններում արտադրության և մարդկանց կյանքի կազմակերպման հետ։

Հեղափոխական բնույթի փոփոխություններ են նկատվում կենսաբանական գիտությունների զարգացման, դրանց հաջողությունների օգտագործման բնագավառում՝ բույսերի ու կենդանիների ժառանգական հատկությունների նպատակամղված վերափոխման համար («գենային ինժեներիա»), գյուղատնտեսության մեջ բերքատվության և աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման համար («կանաչ հեղափոխություն»)։ Այդ կապակցությամբ երբեմն կարծիք է հայտնվում գիտատեխնիկական հեղափոխության նոր տիպի՝ կենսաբանական պրոցեսների և կենսատեխնոլոգիայի վրա հիմնված «անմեքենա արտադրության» զարգացման հնարավորության վերաբերյալ։

Մեզ թվում է, որ անմեքենա արտադրության մասին կարելի է խոսել շատ պայմանականորեն և այն էլ միայն փորձի փուլերում։ Կենսաբանության հասումների իրականացումը, արտադրության կենսաբանական և կենսաքիմիական մեթոդների կիրառումը քիչ թե շատ լայն մասշտաբներով անխուսափելիորեն կպահանջի դիմել մեքենայական տեխնիկային, հետևաբար և՝ դրանք միացնել ավտոմատացված արտադրությանը։ Համոզիչ կերպով այդ է վկայում մանրէաբանական արդյունաբերության և ժողովրդական տնտեսության զանազան բնագավառներում դրա արտադրանքի օգտագործման օրինակը։

Այսպիսով, ԳՏՀ-ի ապագան, ինչպես և դրա ներկան արտադրաուժերի, անմիջական արտադրապրոցեսի ոլորտում ամենից առաջ կապված է արտադրության նոր, համընդհանուր ավտոմատացված եղանակի ձևավորման հետ։ Դա մեքենայական տեխնիկայի զարգացման բարձրագույն աստիճանն է։ Այն հնարավորություններ է ընձեռում, ինչպես ասում են, «փակի տակ» լրիվ ավտոմատացված ֆաբրիկաների ու գործարանների անցնելու համար։ Այդպիսի ձեռնարկությունների նախատիպ կարող են ծառայել արդեն այժմ գոյություն ունեցող արտադրամասերն ու ամբողջ գործարան-ավտոմատները, էլեկտրակայանները, տիեզերական տեխնիկայի միջոցները՝ երկրի արբանյակները, տիեզերանավերը, ուղեծրային և միջմոլորակային կայանները, որոնք կառավարվում են հարյուր հազարավոր և միլիոնավոր կիլոմետրեր հեռավորությունից՝ ավտոմատ համակարգերի օգնությամբ։

Դրանով իսկ ավտոմատացման արդի միջոցներում աշխատանքային ֆունկցիաների առարկայացումը, որն սկսվել է մարդու երևան գալուց ի վեր և որը կազմում է տեխնիկական առաջընթացի գլխավոր բովանդակությունը, հասնում է իր բարձրագույն փուլին։ Մարդը վերջնականապես դուրս է գալիս անմիջական արտադրական պրոցեսից։ Մեքենաների աշխատանքը ազատվում է այն սահմանափակումներից, որոնք կապված են նրա ֆիզիկական և հոգեկան հնարավորությունների հետ, որը ճանապարհ է բացում դեպի աշխատանքի բարձրագույն արտադրողականություն։ Անմիջական աշխատանքը, ինչպես կանխատեսել էր Կ. Մարքսը, դադարում է արտադրության բազիս լինելուց (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 46, ч. II, стр. 218)։

Բայց դա չի նշանակում նսեմացնել մարդու դերը, նրան ընդհանրապես ազատել աշխատանքից, իսկ այստեղից էլ անհատի աստիճանական անկման սպառնալիքը, ինչպես այդ մասին հաճախ գրում են տարբեր հեղինակներ Արևմուտքում։ Ահա թե գիտատեխնիկական առաջընթացի լույսի ներքո ապա-

գայի ինչպիսի պատկեր է ներկայացնում ամերիկացի սոցիոլոգ, տիկին Հ. Առնդտը. «Ավտոմատացման հայտնագործությունը մի քանի տասնամյակների ընթացքում գործարանները կազատի մարդկանցից, իսկ մարդկությանը՝ ամենահին բնական պահանջմունքներից՝ աշխատանքի դժվարություններից ու ամեն տեսակի կարիքներից։ Դա կլինի աշխատանքի հոգսերից գրեթե լրիվ ազատված մարդկանց հասարակություն։ Այն չի իմանա գործունեության բարձր ու ավելի վեհ տեսակներ, հանուն որոնց հարկավոր լիներ հասնել այդպիսի ազատության։ Այդ հասարակությունում չի լինի հոգևոր և կամ քաղաքական արիստոկրատիա, որից վերստին շարունակեին զարգանալ մարդու ընդունակությունները»։ Փաստորեն ճիշտ այդպիսի հետևության էլ հանգում են իտալացի սոցիոլոգներ Է. Պաչելոն և Ջ. Պասկվալոտոն, որոնց կարծիքով, ավտոմատացումը կհանգեցնի այն բանին, որ մարդիկ դուրս կմղվեն արտադրությունից և կմոռանան աշխատել ու ընդունել պատասխանատու որոշումներ, հույսերը դնելով «մտածող մեքենաների» վրա։ «Դա,— գրում են նրանք,— առաջին քայլը կլինի գիտակցության քայքայման ճանապարհին։ Միանգամայն հնարավոր է, որ մեր զավակները ավելորդ կհամարեն զարգացնել իրենց մտածողական ունակությունները, տեսնելով, թե ինչպես են իրենց հայրերը անխոհեմ գործում որպես «մտածող մեքենաների» կցորդներ, կուրորեն հավատալով «արհեստական ինտելեկտի» հզորությանը»։

Բուրժուական աշխարհայացքի նեղությունը խանգարում է այդ հեղինակներին՝ բուն էությամբ տեսնելու առաջացող պրոբլեմը, և նրանք մարդկության առջև դնում են ակնհայտորեն կեղծ երկընտրանք։ Հենց դրանց նկատի ուներ կիբեռնետիկայի հիմնադիրներից մեկը, Վիները, երբ գրում էր, որ «մեքենաների երկրպագուների հոգեբանություն ունեցող մարդիկ հաճախ պատրանք են տածում, թե իբր բարձր ավտոմատացված աշխարհում ավելի քիչ հնարագիտություն կպահանջվի, քան մեր ժամանակ. Նրանք հույս ունեն, թե ավտոմատների աշխարհը իր վրա կվերցնի մեր մտավոր գործունեության առավել դժվարին մասը՝ ինչպես այն հերոս փիլիսոփան, որին, որպես հռոմեական ստրուկի, պարտադրել էին մտածել իր տիրոջ փոխարեն։ Դա ակնհայտ մոլորություն է» (Н. Винер. Творец и робот. М., 1966, стр. 73)։ Իրականում ավտոմատացումը առաջ է բերում մարդու և մեքենայի փոխհարաբերությունների նոր ձևեր, աշխատանքային գործունեության նոր պայմաններ։ Նրանց համար պահպանվում են ավտոմատացված համակարգերի ստեղծման, կարգավորման ու կառավարման ֆունկցիաները, շեշտակիորեն մեծանում է մտավոր աշխատանքի բաժինը, բարձրանում են պահանջները մարդու մտավոր ընդունակությունների նկատմամբ, աճում է նրա պատասխանատվությունը։ Դա պահանջում է արտադրության գիտական հիմունքներին ազատորեն տիրապետող նոր տիպի աշխատող։

Այստեղից պարզ է դառնում. անհրաժեշտ է, որ բարձր մտավոր ստեղծագործական աշխատանքը մարդկային գործունեության կարևորագույն ոլորտում դառնա հասարակության բոլոր անդամների սեփականությունը, դրանով իսկ վերացվի տարբերությունը մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև։

Կապիտալիստական կարգի պայմաններում չգտնելով այդ պրոբլեմի լուծումը, բուրժուական սոցիոլոգները փորձում են վերակենդանացնել հին տեխնոկրատական ուտոպիաները, ամենամոտ ապագայի հասարակությունը պատկերացնելով որպես մասնագետներից, ինժեներներից, գիտնականներից բաղկացած ընտրանու գլխավորած հասարակություն։ Նման հայացքները լայնորեն տարածվել են «պոստինդուստրիալ հասարակության», «տեխնոկրատական հասարակության», «գիտական հասարակության» տեսաբանների մոտ։ Սակայն նրանք խեղաթյուրում են ծագող պրոբլեմի բնույթը, ընկնելով միակողմանի տեխնիցիզմի մեջ, կապիտալիզմի «կերպարանափոխման», ԳՏՀ-ի օգնությամբ նրա արատները, դասակարգային հակամարտությունները վերացնելու պատրանքի մեջ։



Կան նաև այլ ծայրահեղություններ։ Այսպես կոչված «անտիկուլտուրայի» կոնցեպցիաների կողմնակիցները, օրինակ, արդարացիորեն հանդես գալով տեխնոկրատական վարքագծի ու աշխարհայացքի դրույթների դեմ, դրա հետ մեկտեղ սկսել են հարձակումներ գործել գիտատեխնիկական առաջընթացի վրա, այն ընդհանրապես ներկայացնելով որպես մարդկային բնությանը թըշնամի ուժ։ Առաջադրելով մարդուն տեխնիկական ռացիոնալության թելադրանքից ազատագրելու ծրագիրը, նրանք իրականում պաշտպանում են անհատի ապասոցիալականացումը, մերժում են հասարակական ամեն տեսակ սահմանափակումներն ու նորմերը, պրոպագանդում են միստիկա, անարխիական ամենաթույլատրելիություն, հաշիշամոլություն, հեշտասիրություն։

Գիտատեխնիկական հեղափոխությունը ստեղծում է սոցիալական անսահման առաջընթացի նոր հնարավորություններ ու հեռանկարներ, նյութատեխնիկական նախադրյալներ՝ նյութական և հոգևոր բարիքների համընդհանուր առատության հասնելու, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև եղած տարբերությունները վերացնելու, արտադրության գիտական հիմունքներին ազատորեն տիրապետող նոր տիպի աշխատող ձևավորելու, մարդկային գործունեության կարևորագույն ոլորտում բարձր մտավոր ստեղծագործական աշխատանքը հասարակության բոլոր անդամների սեփականությունը դարձնելու համար։ Հասկանալի է, որ ԳՏՀ-ի այս հնարավորություններն ու պահանջմունքները ևս բեկվում են հասարակական հարաբերությունների համակարգի միջով, առաջ քաշելով սոցիալական պրոբլեմների մի բարդ կոմպլեքս, որոնց հետևողական ու լրիվ լուծումը հնարավոր է միայն անդասակարգ հասարակարգի ստեղծման դեպքում։

Սոցիալիստական երկրներում արդեն այժմ ձևավորվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ապագայի արտադրական ապարատը, հաշվի առնելով գիտատեխնիկական հեղափոխության բացած հեռանկարները։ Այդ հեղափոխության հիմքը և գլխավոր ուղղությունը ավտոմատացումն է։ Միայն տասներորդ հնգամյակի տարիներին ՍՍՀՄ-ում երկու միլիոնից ավելի աշխատողների ձեռքի աշխատանքը փոխարինվել է մեքենայացված աշխատանքով, իսկ 750 հազար մարդ ազատվել է ֆիզիկական ծանր գործողություններ կատարելուց։ Տասնմեկերորդ հնգամյակում նախատեսվում է մասսայաբար արմատավորել արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումն ապահովող մեքենաների ու տեխնոլոգիական պրոցեսների բարձր արդյունավետ համակարգեր, տեխնիկապես վերազինել դրա հիմնական ճյուղերը։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան պլենումներում, կոմունիստական շինարարության արդի փուլում, երբ առաջադրված է աշխատանքի արտադրողականությունը արմատապես բարձրացնելու խնդիրը, հատկապես կարևոր նշանակություն է ստանում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, գիտության ու տեխնիկայի հասումները պրակտիկայում լայնորեն ու ժամանակին ներդնելը։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի վերջերս ընդունած «Ժողովրդական տնտեսությունում գիտատեխնիկական պրոգրեսի արագացման միջոցառումների մասին» որոշմամբ նախատեսվում է շեշտակիորեն բարելավել գիտատեխնիկական առաջընթացի դրվածքն ու կազմակերպումը երկրում, առավել կատարելագործել տնտեսական մեխանիզմը, պլանավորումը, վերացնել առկա թերությունները, քարացածությունը, աշխատանքի հնացած ձևերը։

Ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով համընդհանուր ավտոմատացված արտադրության անցնելը կպահանջի ժամանակ, վիթխարի կապիտալ ներդրումներ, գիտատեխնիկական, տնտեսական ու սոցիալական դեռևս շատ բարդ խնդիրների լուծում։

Գիտատեխնիկական հեղափոխության ու դրա հասումների հիման վրա ապագայի արտադրական ապարատի ստեղծումը, նոր տիպի աշխատողի պատրաստումը սոցիալիստական երկրներում օրգանապես զուգակցվում է կոմունիստական շինարարության այլ խնդիրների լուծման՝ հասարակական հարաբերությունների կատարելագործման, դեռևս գոյություն ունեցող սոցիալ-դա-

սակարգային տարբերությունների հաղթահարման, կոմունիստական դաստիարակության, նոր մարդու ձևավորման բազմակողմանի ծրագրի իրականացման հետ։ Աճում է բարոյական հիմունքների դերը մարդկանց փոխհարաբերությունների կարգավորման գործում և համապատասխանաբար կրճատվում է վարչաիրավական կարգավորումը։ Դա բխում է սոցիալիզմի մարդասիրական էությունից, որի իդեալում, ինչպես նշում էր Լենինը, տեղ չպետք է ունենա բռնությունը մարդու նկատմամբ։

Գիտատեխնիկական հեղափոխության հասունմներն անընդհատ նպատակամղելով սոցիալական առաջընթացի խնդիրների լուծմանը, սոցիալիզմը աննախընթաց տեմպեր է հաղորդում նոր հասարակության կյանքի բոլոր կողմերի զարգացմանը, ցուցադրելով իր առավելությունները։

Քննարկելով ԳՏՀ-ի ապագան, նոր հեղափոխությունները գիտության մեջ ու տեխնիկայում և դրանց սոցիալական հետևանքները, չի կարելի հաշվի չառնել նաև սպառնացող վտանգները, եթե բեկում չառաջանա միջազգային հարաբերություններում, եթե վերջ չդրվի իմպերիալիստական ռեակցիայի սանձազերծած սպառազինությունների մրցավազքին։ Պետք չէ առանձնահատուկ երևակայություն ունենալ՝ կանխատեսելու համար զենքի որակապես նոր տեսակների ու համակարգերի, մասսայական ոչնչացման առավել հրեշավոր ու բարբարոսական միջոցների երևան գալը, որոնք, բացի այդ, կպահանջեն վիթխարի ծախսումներ, կհանգեցնեն աշխատանքային ու նյութական հսկայական ռեսուրսների վատնման։ Արդեն մեր ժամանակում, միջուկային զենքի և մասսայական ոչնչացման այլ միջոցների առկայության պայմաններում աննախադեպ սպառնալիք է ստեղծվել ողջ մարդկության համար։

Մարդկությունը մոտեցել է մի բեկումնային սահմանագծի։ Գիտության ու տեխնիկայի հետագա ռազմականացումը համընդհանուր ամայացման ու ոչնչացման սպառնալիք է ստեղծում։ Պատերազմը այլևս չի կարող լինել արտաքին քաղաքականության միջոց, և դա պետք է դառնա միջազգային կյանքի օրենք։

Սրանք են բուն գիտատեխնիկական հեղափոխության, դրա ստեղծարար հնարավորությունների իրականացման, գիտատեխնիկական վիթխարի պոտենցիալը խաղաղ նպատակներով օգտագործելու պահանջներն ու պահանջմունքները՝ մարդկության առջև ծառացած տնտեսական ու սոցիալական խնդիրները լուծելու համար։

---

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՕՐԻՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Ի. ԱՐԱԲՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ (1982 թ.) պլենումում ընկեր Յու. Վ. Անդրոպովը հանգամանորեն վերլուծեց պետական, արտադրական և աշխատանքային կարգապահության վիճակը, կենսականորեն հրատապ խնդիր համարեց պետական առաջադրանքների կատարումը, այդ գործի ռացիոնալ կազմակերպումը, վերահսկողության և հսկողության կատարելագործումն այն հաշվով, որպեսզի ճիշտ օգտագործվեն բարոյական և նյութական խրախուսանքի միջոցները։

Ուսումնասիրությունները վկայում են, որ կոմունիստական աշխատանքի բրիգադներում, արտադրամասերում, նույնիսկ խոշոր արտադրական որոշ ձեռնարկություններում գրեթե աշխատանքային կարգապահության խախտման դեպքեր չեն լինում։ Իսկ եթե պատահում են, ապա կոլեկտիվը միջոցներ է ձեռնարկում վերացնելու դրանց պատճառները, ստանձնում է աշխատողի դաստիարակության գործը։ Այս առնչությամբ հիշատակության արժանի են Երևանի «Հայէլեկտրամեքենա» միավորումը, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը և կաբելի գործարանը, որտեղ վերջին 5—10 տարում աշխատանքից անօրինական ազատման ոչ մի դեպք տեղի չի ունեցել։ Նրանց մոտ ծագած աշխատանքային վեճերը աշխատավորական կոլեկտիվները լուծում են առանց իրավական մարմինների միջամտության։

Զարգացած սոցիալիստական հասարակարգում հակահասարակական երևույթների արմատական պատճառը վաղուց վերացված է՝ այլևս գոյություն չունի մարդու շահագործումը մարդու կողմից։ Աշխատանքային կարգապահական կանոնների խախտումները և վեճերը չեն բխում սոցիալիստական աշխատանքային իրավահարաբերություններից։ Փաստ է, սակայն, որ առանձին աշխատողների մոտ դեռևս դրսևորվում է աշխատանքային պարտականությունների և սոցիալիստական սեփականության նկատմամբ անբարեխիղճ, անազնիվ վերաբերմունք։ Դժբախտաբար, տակավին կան առանձին անբաններ, գործալիքներ ու գփողներ, որոնք իրենց շահերը բարձր են դասում հասարակության կոլեկտիվ շահերից։ Նրանք մոռացության են մատնում օրենքով նախատեսված իրենց աշխատանքային պարտականությունները, բայց չեն մոռանում իրենց իրավունքները, քիչ աշխատանքի ներդրումով կամենում են շատ եկամուտ ստանալ, առանց բարիքներ ստեղծելու՝ հասարակության բարիքները վայելել։

Հանրապետությունում կուսակցական, արհմիութենական ու հասարակական այլ կազմակերպությունների ձեռնարկած միջոցների, ինչպես նաև դատախազական հսկողության ակտիվացման ու դատարանների ջանքերի շնորհիվ 1978 թ. համեմատ աշխատանքում վերականգնելու վերաբերյալ գործերի մուտքը դատարան 1979 թ. նվազել է 17, 1980 թ.՝ 27 տոկոսով, իսկ առանց արհկոմի համաձայնության աշխատանքից ազատման դեպքերը համապատասխան տարիներին նվազել են 18,3 և 15 տոկոսով։ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումների համաձայն, հուսալի է դառնում ընդհանրապես աշխատանքային վեճերի լուծումը բուն աշխատավորական կոլեկտիվում՝ առանց դատարանի ու դատախազության միջնորդության։ Սակայն գործալիքների,

անաշխատ եկամտով ապրողների, արտադրությունը կազմալուծողների, հարբեցողների նկատմամբ լիակատար չափով պետք է օգտագործել այն իրավանորմերը, որոնք սահմանում են աշխատանքային կարգապահությունը խախտողների պատասխանատվությունը։

Մենք ունենք շատ օրենքներ, որոնք բխում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացման, պետական, աշխատանքային կարգապահության պահպանման թելադրանքից։ Այսպես, օրինակ, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1966 թ. հուլիսի 26-ի՝ «Խուլիգանության համար պատասխանատվությունն ուժեղացնելու մասին» հրամանագիրը սահմանեց, որ խուլիգանություն գործած անձանց նկատմամբ վարչական կամ քրեական պատասխանատվության ենթարկելու կամ կարգապահական-հասարակական ներգործության միջոցներ կիրառելու հետ մեկտեղ, հիմնարկ-ձեռնարկությունները, արհմիութենական տեղկոմների համաձայնությամբ, կարող են կիրառել հետևյալ միջոցները. լրիվ կամ մասամբ զրկել արտադրապարգևատրումից, հանգստյան տների ու առողջարանների արտոնյալ ուղեգրերից և հետաձգել բնակարան ստանալը։

Նյութական ներգործող նույն միջոցների կիրառումը գործալիքների և սիստեմատիկ կարգապահությունը խախտողների նկատմամբ նախատեսվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի 1979 թ. դեկտեմբերի 13-ի «Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և կադրերի հոսունությունը կրճատելու մասին» որոշմամբ, բայց դրանք չեն կարող համարվել տուժարկում, հետևաբար չի կարող համարվել նույն խախտման համար կրկնակի տուժարկում։ Նշված որոշումը ուժեղացրեց նաև առանց հարգելի պատճառի աշխատանքից ազատվողների նկատմամբ կիրառվող ներգործող միջոցները։ Դրանք ավելի խստացվեցին 1983 թ. օգոստոսին կայացված ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի «Աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման նպատակով տարվող աշխատանքի ուժեղացման մասին» որոշմամբ։ Հաշվի առնելով աշխատավորների առաջարկներն ու պահանջները, սահմանվեց, որ սեփական ցանկությամբ, առանց հարգելի պատճառների աշխատանքից ազատվելիս բանվորներն ու ծառայողները իրավունք ունեն անորոշ ժամկետով կնքված աշխատանքային պայմանագիրը լուծարել, այդ մասին ադմինիստրացիային գրավոր կերպով նախազգուշացնելով երկու ամիս առաջ (նախկին մեկ ամսվա փոխարեն), իսկ նրա անընդհատ աշխատանքային ստաժը կարող է պահպանվել, եթե նոր աշխատանքի անցնելու ընդմիջումը երեք շաբաթից չի անցնում։ Նախկինում աշխատանքային անընդհատության ստաժը չէր պահպանվում, երբ մեկ տարվա ընթացքում աշխատողն իր ցանկությամբ անհարգելի պատճառով երկու անգամ ազատվում էր աշխատանքից և զրկվում անընդհատ ստաժով աշխատողների համար սահմանված արտոնություններից։ Աշխատավորական կոլեկտիվների իրավունքների ընդլայնման մասին օրենքը յուրաքանչյուր աշխատողի վրա ակտիվ ներգործելու և կադրերի հոսունությունը կրճատելու նոր հնարավորություններ է ընձեռում։ Այսպես, եթե աշխատողը դիմել է աշխատանքից ազատվելու, բայց մինչ այդ, մինչև 3 ամիս ժամկետով փոխադրվել է նվազ աշխատավարձով աշխատանքի կամ նույն ժամկետով իջեցվել ավելի ցածր պաշտոնի, ապա սեփական ցանկությամբ աշխատանքից ազատվելու իրավունք չունի և պայմանագիրը կարող է լուծել այդ տույժը կրելուց երկու ամիս հետո միայն։ Որոշումը նախատեսում է աշխատանքային կարգապահության ամրապնդման ներգործող այլ միջոցներ հատկապես գործալիքների, հարբեցողների նկատմամբ, որոնք մանրամասն շարադրված են տեքստում և իրենց օրենսդրական ձևակերպումն ստացան ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1983 թ. օգոստոսի 12-ի հրամանագրում։

Այդ ներգործող միջոցները բխում են սոցիալիզմի սկզբունքներից և միտում են ավելի ամրապնդել աշխատանքային և ընդհանուր կարգապահությունը։ Սակայն դրանք միշտ չէ, որ կիրառվում են։ Պատճառն այն է, որ առանձին ղեկավարներ կամ օրենքը չգիտեն, կամ չեն կարողանում պատշաճ կարգով օգտվել դրանից, չեն խորանում իրավաբանական-մասնագիտական նրբություններում։



ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և ՀԱՄԿԽ-ն «Աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման ուղղությամբ տարվող աշխատանքի ուժեղացման մասին» 1983 թ. օգոստոսի որոշման մեջ նշեցին, որ կարգապահության ամրապնդման գործում տակավին թույլ է բանվորական ժողովների, ընկերական դատարանի դերը։ Որոշումը շեշտում է նաև հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների պատասխանատվությունն աշխատանքային կարգապահության վիճակի ու կադրերի հոսունության համար և նշում՝ այդ միտումով միջոցներ չձեռնարկելու դեպքում «համապատասխան ղեկավարներին զրկել աշխատանքի հիմնական արդյունքների, նաև սոցիալիստական մրցության արդյունքների համար տրվող պարգև-հավելավճարից, ենթարկել կարգապահական պատասխանատվության կամ օրենսդրությամբ սահմանված այլ կարգի պատասխանատվության»։ Այդ ղեկավարի անկարողությունը նշված որոշումը որակում է «որպես զբաղեցրած պաշտոնին նրա անհամապատասխանության ապացույց», այսինքն՝ ենթակա է աշխատանքից արձակման։ Այսօր ոչ թե ցանկություն, այլ հրամայական պահանջ է, որ ամեն մի ղեկավար, եթե ուզում է լավ կառավարել իր օբյեկտը, պետք է զինված լինի իրավական գիտելիքներով, հենվի հասարակական կազմակերպությունների վրա։

Աշխատանքային կարգապահության խախտում կատարողներին տրված հարցումներից պարզվել է, որ նրանցից և ոչ մեկը աշխատանքից ազատելը չի համարել ներգործող ազդեցիկ միջոց։ Աշխատանքային կարգապահությունը խախտող 100 հոգուց 40-ը նշել են, որ ամենից շատ վախենում են իրենց հարցը կոլեկտիվում հրապարակայնորեն քննելուց, 15-ը ամենատհաճը համարել են պարգևատրությունից զրկվելը, իսկ 17-ը՝ նվազ աշխատավարձով աշխատանքի փոխադրումը։

Վ. Ի. Լենինը ժամանակին խոսելով պատժի մասին, նշել է, որ «պատժի նախազգուշական նշանակությունը պայմանավորվում է ամենևին ոչ թե նրա դաժանությամբ, այլ նրա անկասելիությամբ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 4, էջ 520)։ Աշխատանքային իրավահարաբերություններում կարգապահության խախտման համար բանվոր-ծառայողին աշխատանքից արձակելը ըստ էության տույժի ծայրահեղ միջոցն է։ Աշխատանքային օրենսգրքի համաձայն (36-րդ հոդվածի 3-րդ կետ), ադմինիստրացիայի նախաձեռնությամբ աշխատանքային պայմանագիրը կարող է լուծարվել, եթե բանվորը կամ ծառայողն աշխատանքային պայմանագրով կամ ներքին աշխատանքային կարգապահական կանոններով ստանձնած պարտավորությունները, առանց հարգելի պատճառների սիստեմատիկ չի կատարում և եթե նրա նկատմամբ կիրառվել են կարգապահական կամ հասարակական տուժարկումներ։ Այսինքն, եթե հասարակական տուժարկումն աշխատանքի կապակցությամբ է կիրառվել, ունի իրավական բնույթ ու հետևանք։

Իրականում սույն կարևոր հանգամանքը շատ դեպքերում հիմնարկ-ձեռնարկության ղեկավարները հաշվի չեն առնում։ Պետք է ավելի հաճախակի աշխատավորական կոլեկտիվը քննի աշխատանքային կարգապահությունը խախտողների հարցը։ Արհկոմի որոշումներն աշխատողին աշխատանքից ազատելու համաձայնություն տալու մասին գանգատարկելու դեպքում կարող է քննարկվել աշխատավորական կոլեկտիվում, որն ի վիճակի է վերջնականապես լուծելու հարցը։

Կարգապահության բարձրացման հարցը քննարկելիս և բարելավման միջոցները նշելիս, հաճախ մոռացության է տրվում ընկերական դատարանի դերը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ընկերական դատարանների տուժարկումները շատ ավելի ազդեցիկ ու դաստիարակչական են, քան դիրեկտորի կիրառած տուժարկումը, որը հաճախ նույնիսկ չի մասսայականացվում և միայն գրանցվում է հրամանագրքում։ Պարզվում է, որ այն աշխատողները, որոնք անցյալում կարգապահության խախտման պատճառով տուժարկվել են ադմինիստրացիայի կողմից, մեկ տարվա ընթացքում նորից երկուս ու կես անգամ ավելի շատ տարատեսակ խախտումներ են կատարել, քան նրանք, ում հարցը քննված է եղել ընկերական դատարանում։

Երևանի քաղաքային սովետի գործկոմի առևտրի առաջնահանման կայանում, որ մեծ աշխատավորական կոլեկտիվ ունի, ադմինիստրացիայի նախաձեռնությամբ 1982 թվականին աշխատանքից արձակվել է 14 մարդ, իսկ կարգապահական տույժի ենթարկվել 103-ը, բայց նրանցից ոչ մեկի հարցը չի հանձնվել ընկերական դատարանի քննության, և ընդհանրապես ընկերական դատարանը չի գործել։ Վիճակը նույնն է նույր բրդյա գործվածքեղենի կոմբինատում, Երհացառի և տեղական արդյունաբերության ցանցում։ Այդ պատճառով աշխատանքային կարգապահության խախտումները շատ են, իսկ հասարակական ներգործությունը՝ թույլ։ Որոշ աշխատավորական կոլեկտիվներում նույնիսկ ընկերական դատարաններ չկան, թեև նրանց աշխատողների թիվը 50 հոգուց ավելի է։ Այժմ, երբ պայքար է ծավալվում աշխատանքային բարձր կարգապահության, պետական և կատարողական պարտականությունների ճըշտիվ կատարման համար, չի կարելի անտեսել իրավապահպան այս կարևոր օղակը։

Ընկերական դատարանների կանոնադրությամբ նախատեսված հասարակական ներգործության միջոցներից շատերն ունեն իրավական բնույթ։ Օրինակ, ձեռնարկության, հիմնարկության կամ կազմակերպության ղեկավարի առջև հարց հարուցելը աշխատանքային կարգապահության խախտման մեջ մեղավորին փոխադրելու ավելի ցածր վարձատրվող աշխատանքի, գործող օրենսդրությանը համապատասխան աշխատանքից արձակելու, մեղավորին տարեկան աշխատանքի արդյունքների համար լիովին կամ մասամբ դրամական պարգևատրությունից զրկելու։

Հասարակական ներգործության այդ միջոցները կիրառվում են պետական հարկադրանքի զուգակցմամբ։ Շատ կարևոր նշանակություն ունեն այս միջոցառումները, մանավանդ, երբ իրավախախտումների մեկ երրորդ մասը քննըվում է ընկերական դատարաններում։

Դիրեկցիան և արհկոմը նույնպես իրավասու են միջոցներ կիրառել գործալիքների, հարբեցողների նկատմամբ։ Կարգապահությունը խախտողների նկատմամբ աշխատավորական կոլեկտիվը կիրառելով բարոյական ներգործության զանազան միջոցներ, չպետք է մոռանա նաև հարկադրական միջոցի գործադրումը։ Լոկ բարոյական ներգործմամբ բավարարվելը կամ անպատիժ թողնելը, վտանգավոր օրինախախտում կատարողի նկատմամբ հարկադրական միջոց չկիրառելը, ներողամտությունը կարող են լրջորեն վնասել պետական կարգապահությանը, սոցիալիստական տնտեսության շահերին։ Կան փաստեր, երբ աշխատանքը գործալքող անձանց հովանավորում են հիմնարկ-ձեռնարկության որոշ ղեկավարներ, վարչության ներկայացուցիչները։

Արտաշատի դատախազը, ստանալով ահազանգ, հետագա ստուգմամբ պարզել է, որ որոշ անձինք, աշխատելով սպառողական կոոպերացիայում, շահադիտական հանցագործությունների համար եղել են դատապարտված և կարողացել են հասնել այն բանին, որ իրենց աշխատանքի ազատման հրամանը ձևակերպվի ու աշխատանքային գրքույկներում նշվի՝ «ազատվել է աշխատանքից իր ցանկության համաձայն»։ Դրանով նրանք հնարավորություն են ստացել նորից սողոսկելու առևտրի սիստեմը։ Սակայն, դատախազի կողմից այդ փաստը հայտնաբերվել է, և անօրինական հրամանը բողոքարկվել ու միջնորդագիր ներկայացվել շրջանային սովետի գործադիր կոմիտեին, որով դրըվել է պաշտոնատար մեղավոր անձի պատասխանատվության հարցը, և օրինականությունը վերականգնվել է։ Դատախազության կողմից բերվել են մի շարք բողոքներ, որոնցով միջնորդվել է վերացնել կրկնահանցագործ և սոցիալիստական սեփականությունը հափշտակող անձանց առևտրի ցանցը տեղավորելու մասին հրամանները և խնդիր է դրվել վերացնելու այդ բնագավառում օրինազանցությունները։

ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1981 թ. օգոստոսի 13-ի հրամանագրով քրեական պատասխանատվություն է նախատեսվում այն անձանց նկատմամբ, ովքեր դատավճռով զրկված են եղել որոշակի պաշտոններ վարելու կամ որոշակի գործունեությամբ զբաղվելու իրավունքից, բայց խախտել են այդ օրենքը։ Ըստ որում հանցակազմը առկա է համարվում ոչ միայն աշխատանքի ընդունվողի, այլև այն պաշտոնատար անձի նկատմամբ, որը նրան աշխատանքի է ընդունել։ Այդ նշանակում է, օրինակ, որ անցյալում սոցիալիստական սեփականությունը հափշտակած, սիստեմատիկ կերպով առևտրի կանոնները խախտած, պաշտոնական դիրքը չարաշահած անձինք չեն կարող աշխատել առևտրի ցանցում կամ զբաղվել դատավճռով արգելված գործունեությամբ։



Պետական հիմնարկ-ձեռնարկություններում լինում են դեպքեր, երբ բարվոք վիճակում չեն աշխատանքային գրքույկները, որոնք ժամանակին չեն պահանջվում ու դրանցում անհրաժեշտ գրանցումներ չեն կատարվում, կամ թե որոշ անձինք աշխատում են առանց աշխատանքային գրքույկ ներկայացնելու, որը նույնպես նպաստում է բանվորական ուժի հոսունությանը։ Որոշ հիմնարկ-ձեռնարկություններում դեռևս կանոնավոր չէ աշխատողների աշխատանքի ռեալ հաշվառումը, կամ տաբելային հաշվառումը ձևական բնույթ ունի, իսկ դա նպաստում է աշխատանքային կարգապահության խախտմանը։ Հարկ է նկատել, որ այս առումով արվում են գործնական առաջարկներ, բայց դրանք շատ դեպքերում չեն կիրառվում։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումների կենսագործումը ստեղծում է բարենպաստ պայմաններ՝ ըստ արժանվույն գնահատելու ամեն մի առաջարկի կենսագործման անհրաժեշտությունը, դրանց դրական ու բացասական կողմերը, ռեալ արդյունավետությունը։ Բոլոր իրավական տեսական դրույթների փաստարկումների ճշմարտության չափանիշը, վերջին հաշվով, պրակտիկ կյանքն է. տեսությունը տեսության համար չէ, այլ, եթե այն գիտական է, դրա ռեալ կենսագործումը, վերջին հաշվով, արտադրաուժերի զարգացմանը նպաստելն է։ Գաղտնիք չէ, որ որոշ մարդիկ աշխատաժամանակը վատնում են ոչ պաշտոնական նպատակներով։ Ցավալին այն է, որ դրան ականատես են լինում ու այդ վիճակի հետ հաշտվում առանձին տնտեսական և արհմիութենական ղեկավարներ։

Այսօր շատ աշխատավորական կոլեկտիվներ, հասարակական կազմակերպություններ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումների լույսի ներքո գործնական քայլեր են ձեռնարկել մեր օրենսդրության իրականացման մարզում։ Այսպես, օրինակ, «Հայէլեկտրամեքենա» միավորման գիտահետազոտական ինստիտուտի կուսկազմակերպությունը ադմինիստրացիայի առջև խնդիր է դրել բոլոր բաժիններում անցկացնել աշխատողների ատեստավորում և ովքեր որ սիստեմատիկորեն թերծանրաբեռնվածությամբ են աշխատում՝ կրճատել նրանց հաստիքը, լուծել նրանց այլ աշխատանքի փոխադրելու հարցը։

Պետք է վճռականորեն պայքարել, որպեսզի աշխատավարձի վճարման գլխավոր չափանիշը լինի միայն աշխատանքը, դրա քանակն ու որակը, փակելով ճանապարհն այն երևույթների դեմ, երբ վարձատրություն են ստանում «սոսկ աշխատանքի ներկայանալու համար» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 95)։ Կուսակցությունը պահանջում է նաև վճռական պայքար ծավալել պարազիտային ապրելակերպ ունեցողների դեմ։ Մեր երկրում գործազրկության վերացված լինելը պորտաբույծ կյանք վարելու իրավունք չի տալիս։

Առաջնահերթ խնդիր է չաշխատող մարդկանց, ազատազրկման վայրերից վերադարձած անձանց աշխատանքի տեղավորելու հարցը։ Այդ գործում մեծ անելիքներ ունեն շրջանային և քաղաքային ժողովրդական դեպուտատների սովետների գործադիր կոմիտեները, որոնք պարտավոր են օգնելու նշված անձանց երկու շաբաթվա ընթացքում տեղավորելու աշխատանքի։ Այստեղ իրենց դերն ունեն վերահսկող և անչափահասների գործերի հանձնաժողովները։

ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1983 թ. հունվարի 12-ի նիստում քննության առնվեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի 1982 թ. գործունեության արդյունքները և 1983 թ. համար նախատեսված միջոցառումների պլանը։ Ելույթ ունենալով քննարկվող հարցի առթիվ, ընկեր Յու. Վ. Անդրոպովը

անդրադարձավ սովետների գործունեության կատարելագործման հարցին, ուղիներ նշեց բազմազգ աշխատավորական կոլեկտիվների հետագա համախմբման ու զարգացման համար, դրանցում ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, բարձր պահանջկոտության և կարգապահության մթնոլորտի ստեղծման համար։ Յու. Վ. Անդրոպովը նշեց, որ անհրաժեշտ է «առավել ակտիվացնել դատախազության գործունեությունը օրենսդրության, պետական կարգապահության պահանջների կիրառումը հսկելու, սոցիալիստական սեփականության հափշտակումներն ի հայտ բերելու և խափանելու, պաշտոնական չարաշահումների, կաշառակերության, վատնողականության, անտնտեսվարության դեմ պայքարելու, իրավախախտումները կանխելու, սովետական քաղաքացու իրավունքների ու շահերի հուսալի պաշտպանությունն ապահովելու նպատակով»։

Այդ կապակցությամբ դատախազության մարմիններին առաջարկվել և ցուցում է տրվել, որ միջոցներ ձեռնարկվեն ավելի լրիվ օգտագործելու ՍՍՀՄ սահմանադրությամբ և օրենսդրությամբ վերապահված լիազորությունները՝ ամբողջ երկրում օրենքների ճշգրիտ ու միատեսակ կատարման բարձրագույն հսկողություն իրականացնելու նպատակով։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան պլենումների որոշումներից ելնելով, դատախազության գործունեության հիմնական նպատակը պետք է համարել սովետական քաղաքացիների աշխատանքային իրավունքների ու օրինական շահերի պաշտպանությունը՝ ներառյալ նրանց անվտանգ ու առողջ պայմաններում աշխատելու, ինչպես նաև քաղաքացիների սահմանադրական ազատությունների ապահովումը։ Անհրաժեշտ է, որ դատախազությունը պարբերաբար ստուգումներ անցկացնի և հատուկ ուշադրություն դարձնի, թե ինչպես են կյանքում կենսագործվում աշխատավորական կոլեկտիվների, նրանց դերի բարձրացման մասին օրենքը և մյուս նոր օրենսդրական ակտերը։ Չէ որ առաջին իսկ գործադրման պահին կարող են լինել թերացումներ, սխալ ըմբռնումներ ու կիրառումներ, աղավաղումներ։ Ուստի դրանք սկզբից ևեթ պետք է կանխվեն ու ամուր հիմքերի վրա դրվի օրենքների կիրառումը, ապահովվի աշխատանքային օրենսդրության ճշգրիտ կատարումը, աշխատանքային, պետական, կատարողական կարգապահությունը, փակվեն բանվորական ուժի հոսունության բոլոր ճանապարհները։ Այդ կապակցությամբ դատախազները, օգտագործելով օրենքով սահմանված լիազորություններն ու իրավախախտումների հանդեպ հականերգործող իրավական միջոցները, հարկ է, որ հանցավոր անձանց կանչեն քրեական պատասխանատվության, նախազգուշացում անեն օրենքի խախտման անթույլատրելիության մասին, հարուցեն կարգապահական վարույթ կամ վարչական իրավախախտման վարույթ, օրենքով նախատեսված դեպքերում դրանց նյութերը հանձնեն հասարակական կազմակերպություններին՝ հասարակական ներգործության միջոցներ կիրառելու հարցը լուծելու համար, միջոցներ ձեռնարկեն օրենքի խախտման հետևանքով պետությանն ու քաղաքացիներին պատճառած վնասի հատուցումն ապահովելու համար։

Մյուս կարևոր միջոցառումը պաշտոնատար անձանց և քաղաքացիների իրավագիտակցության բարձրացումն է, հատկապես նրանց, ովքեր գործ ունեն լայն հասարակայնության հետ և լուծում են աշխատավորների աշխատանքային, սոցիալական ապահովության, բնակարանային ու մյուս իրավունքները և օրինական շահերին վերաբերող հարցերը։ Կենսական պահանջ է դարձել պաշտոնատար անձանց իրավաբանական գիտելիքների ատեստավորում անցկացնելը։

Հետևողականորեն կիրառելով սոցիալիստական ապրելակերպի նորմերը, պետք է անզիջում պայքար ծավալել օրինախախտողների, համակեցության կանոնները ոտնահարողների դեմ։ Դա կուսակցության հրամայական պահանջն է, որը նոր ուժով շեշտեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան պլենումները։

## Տասնմեկերորդ հնգամյակի բնագծերում

# ՆՅՈՒԹԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՏՆՏԵՍՄԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

**Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ ներգրավված են հիրավի հսկայական ռեսուրսներ, և կուսակցությունը խնդիր է դնում խնամքով, լիակատար հատույցով օգտագործել ժողովրդի ստեղծած վիթխարի պոտենցիալը։ Առաջնորդվելով ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտրոնական կոմիտեի հաջորդ պլենումների որոշումներով, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեցին «Հումքի, վառելիքաէներգետիկ և այլ նյութական ռեսուրսների խնայողության և ռացիոնալ օգտագործման աշխատանքների ուժեղացման մասին», որտեղ նշված է, որ չնայած առկա դրական փորձին, չի նկատվում բեկում նյութական ռեսուրսների օգտագործման բարելավման գործում։ Համաշխարհային լավագույն ցուցանիշների հետ համեմատած, ազգային եկամտի միավորի համար մեզ մոտ ծախսվում են ավելի շատ հումք և նյութեր։ Մեր մեքենաների և սարքավորումների մեծ մասն ունի բարձր նյութատարություն, արտադրության և շահագործման պրոցեսում զգալի են մետաղի, վառելիքի, փայտանյութի, ցեմենտի, հումքային և մյուս նյութերի կորուստները։

Այս ամենը վկայում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում նյութական ռեսուրսների խնայողության մեծ ռեզերվների մասին, որոնց պլանաչափ օգտագործումը կնպաստի վերամշակող արդյունաբերության ճյուղերի արտադրանքի ավելացմանը։ Նյութական ռեսուրսների խնայողության ռեժիմն օրգանապես կապված է բոլոր ռեսուրսների խելացի օգտագործման, միանվագ ու ընթացիկ ծախսերի փոխհատուցման և դրանց տնտեսական արդյունավետության մեծացման հետ։

Մեր հանրապետության արդյունաբերությունն ամեն տարի սպառում է միլիարդավոր ռուբլիների հումք և նյութ։ Միայն Երևանի ձեռնարկություններում թողարկվող արտադրանքի նյութատարության մեկ տոկոսի նվազեցումը համարժեք է 20 միլիոն ռուբլու ազգային եկամտի հավելաճի։ Նյութական ծախսերի տնտեսումը և արդյունավետության բարձրացումն առանձնահատուկ նշանակություն ունեն մեքենաշինության մեջ։ Այս ճյուղում հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի և ընթացիկ ծախսերի մյուս բաժինները կազմում են արտադրանքի ինքնարժեքի մոտ երկուերրորդը։ Մեքենաշինությունն սպառում է մեծ քանակությամբ սև և գունավոր մետաղներ, ինչպես նաև ամենատարբեր նյութեր՝ ռետին, պլաստմասսա, փայտանյութ, մեկուսացուցիչ նյութեր,

լաքեր, ներկեր և այլն։ Մեքենաշինական ձեռնարկություններում մետաղի սպառման չափերի մասին է վկայում այն փաստը, որ այստեղ յուրաքանչյուր միլիոն ռուբլու արտադրանքի վրա սպառվում է մի քանի հարյուր տոննա գլանվածք։ Ուստի ռեսուրսների օգտագործման բարելավման կարևոր նախապայմաններից մեկը մեր հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում արտադրանքի նյութատարության կրճատումն է։ Այստեղ ամբողջ առանձին արտադրանքների ինքնարժեքի կազմում նյութական ծախսերը տատանվում են 30—70 տոկոսի սահմաններում (բացառությամբ կաբելի արտադրությունից, որտեղ այդ թիվը հասնում է 90 տոկոսի)։ Արտադրության այժմյան կառուցվածքի փոփոխությունը՝ նրա կազմում նվազ նյութատար արտադրանքի ծավալի մեծացմամբ և առավել նյութատար արտադրանքի ծավալի փոքրացմամբ, կտա նյութական ռեսուրսների հարաբերական տնտեսում։

Վերջին տարիներին հանրապետության մեքենաշինությունում իրականացվել են թողարկվող արտադրանքի նյութատարության նվազեցման մի շարք միջոցառումներ։ Մեքենաշինության ոչ նյութատար ենթաճյուղերի՝ սարքաշինության և ռադիոտեխնիկայի արտադրանքի աճի տեմպերը մեկուկես անգամ գերազանցեցին ճյուղի աճի միջին տեմպերին։ Մի շարք խոշոր արտադրամիավորումներ նյութական ռեսուրսների խնայողությունն ապահովեցին ի հաշիվ ընդհանուր թողարկվող արտադրանքի ծավալում պակաս նյութատար արտադրանքի արագ աճի։

ՀԿԿ XXVII համագումարն արտադրության աշխատատար ճյուղերի զարգացման կուրս է վերցրել, որը նպատակամղված է նաև նյութական ռեսուրսների խնայողության։ Մետաղի տնտեսումը կատարվում է ի հաշիվ սարքաշինական, էլեկտրոնային տեխնիկայի և այլ արտադրությունների զարգացման առավել բարձր տեմպերի, որտեղ մետաղագլանվածքի տեսակարար ծախսը նշանակալիորեն ցածր է, քան ավանդական տեսակի շատ արտադրություններում։ Անշուշտ, այս միջոցառումները բխում են հանրապետության տնտեսական զարգացման պայմաններից, սակայն արտադրանքի նյութատարության նվազեցման առավել արդյունավետ միջոցը բոլոր դեպքերում մնում է նյութական ռեսուրսների օգտագործման տեսակարար պակասեցումը։

Հանրապետության մեքենաշինարարների աշխատանքի փորձը վկայում է, որ մետաղի խնայողության ուղին դրա օգտագործման գործակցի բարձրացումն է, ծախսումների նորմայի կրճատումը, մեքենաների և սարքավորումների կառուցվածքի կատարելագործումը, նոր մետաղների և փոխարինիչների լայն ներդրումը, մշակման տեխնոլոգիայի բարելավումը և ձևվածքների արդյունավետ մեթոդների կիրառումը, մետաղների և մնացուկների հավաքում ու հանձնումը։

Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին մեքենաշինությունում սև մետաղների խնայողությունը կհասնի դրա սպառման ծավալի 18—20 տոկոսին։ Մեքենայի արտադրության նյութական ծախսերի մակարդակը, որպես կանոն, պայմանավորված է տեխնիկայի զարգացման աստիճանով, հետևաբար, պայքարը մետաղի ռացիոնալ օգտագործման համար սկսվում է գծագրական տախտակից։ Կոնստրուկտորն ընտրում է մետաղը, որոշում նախապատրաստվածքի չափերը, պրոֆիլը և տեսքը, արտադրանքի մասերի ուրվագիծը և քաշը։ Արտադրության շատ տեխնիկատնտեսական ցուցանիշներ, այդ թվում նաև խնայված մետաղի չափը պայմանավորված է այն բանով, թե որքանով է կոնստրուկտորը հաշվի առել արտադրապրոցեսի տնտեսական կողմը։

Հանրապետությունում վերջին տարիներին հսկայական աշխատանք է կատարվել նոր արտադրատեսակների յուրացման նպատակով։ «Հայքիմմեքենա» գործարանում բարոյապես մաշված կոմպրեսորները փոխարինվել են նոր կոնստրուկցիայի կոմպրեսորներով, որոնք կշռային բնութագրով գերազանցում են արտասահմանյան ֆիրմաների արտադրանքին և ունեն բարձր շահագործողական ցուցանիշներ։ Դրանք ներկայացվել են միջտնտեսական հանձնաժողովին՝ որակի բարձր կարգի գնահատման համար։



Յուրաքանչյուր արտադրատեսակի համար ձեռնարկություններում կազմում են տեխնիկական մակարդակի քարտեր, որտեղ գրանցվում են ատեստավորվող արտադրանքի տեխնիկատնտեսական ցուցանիշները։

Յուրաքանչյուր ատեստացիայի ընթացքում արտադրանքի տեխնիկատընտեսական ցուցանիշները համեմատվում են հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշների հետ, որոնց չի զիջում մեր հանրապետության մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքի զգալի մասը։ 1982 թվականին բարձրորակ արտադրանքի առավել մեծ տեսակարար կշիռ ունեին էլեկտրատեխնիկական, էլեկտրալամպերի, տեխնոլոգիական սարքավորումների, «Հայքիմմեքենա», էլեկտրամեքենաշինական, ալյումինի, կաբելի գործարանները։

Այնուամենայնիվ, շատ ձեռնարկություններ դեռևս շարունակում են թողարկել բարոյապես մաշված մեքենաներ ու սարքավորումներ։ Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանի թողարկած լայն ունիվերսալ գործիքային ֆրեզերային հաստոցներն ավելի մեծ կշիռ ունեն, քան արտասահմանյան ֆիրմաների համանման արտադրանքը։

Հանրապետության մեքենաշինական գործարանները մեծ հնարավորություններ ունեն թողարկվող արտադրանքի վրա նյութական ծախսերը կրճատելու համար։ Այդ գործին խոչընդոտում է, օրինակ, այն փաստը, որ հայրենական արդյունաբերությունը չի թողարկում էլեկտրաագրեգատների կոմպլեկտավորման համար նախատեսված շարժիչներ։ Էլեկտրամեքենաշինական գործարանն այդ նպատակով ստիպված օգտագործում է տրակտորային շարժիչներ, որի հետևանքով բարձրանում է էլեկտրաագրեգատների մետաղատարությունը։

Այժմ մետաղատարության կրճատման և տեխնիկական մակարդակի բարելավման նպատակով մշակվել է էլեկտրաագրեգատների նոր մոդել, որի ներդրմամբ միավոր արտադրանքի համար միջին հաշվով կխնայվի 500 կգ սև մետաղ, իսկ ողջ գործարանը արտադրանքի տարեկան թողարկումից ժողովրդական տնտեսությանը կտա 750 հազար ռուբլու խնայողություն։ Այդ արդյունավետ միջոցառման ներդրումը ձգձգում է «Ավտոդիզել» արտադրամիավորումը, որտեղ պետք է կազմակերպվի վերոհիշյալ շարժիչների արտադրությունը։

Էլեկտրամեքենաշինական գործարանում հին տրանսֆորմատորները նորով փոխարինելու դեպքում էլեկտրատեխնիկական պողպատի ծախսը կարելի է նվազեցնել 12 տոկոսով, տրանսֆորմատորային յուղինը՝ 20 տոկոսով։ Որպեսզի նոր արտադրատեսակների յուրացումն իրոք ապահովի նյութերի խնայողությունը, անհրաժեշտ է հրաժարվել այն սխալ պրակտիկայից, ըստ որի յուրացման ընթացքում (հաճախ 2—3 տարի) գործարանները, հաշվարկայինի համեմատությամբ, 20—30 տոկոսով բարձրացնում են ծախսերի նորմաները։ Դա փորձում են հիմնավորել նրանով, թե նոր արտադրանքի համար մետաղի ռացիոնալ օգտագործման հարցերը դեռևս չեն մշակված և արտադրական յուրացման ընթացքում կկատարվեն անհրաժեշտ կոնստրուկտորական ու տեխնոլոգիական կատարելագործումներ, և նոր մեքենայի մետաղի փաստացի ծախսը կհասցվի հաշվարկային նորմային։

Նոր արտադրատեսակներ մշակելիս կարևոր է հին կոնստրուկցիայի բոլոր այն թերությունների վերացումը, որոնք արգելակում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և նյութական ռեսուրսների խնայմանը։ Առաջադեմ սարքավորումների և տեխնոլոգիայի ներդրումը պետք է դիտել ոչ միայն որպես արտադրության ծավալի մեծացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոց, ինչպես մինչև վերջին ժամանակներս ընդունված էր, այլև իբրև նյութական ռեսուրսների տնտեսման ուղի։ Հումքի, նյութերի և սև մետաղների խնայողության վերաբերյալ կուսակցության վերոհիշյալ որոշմանը համապատասխան ՍՍՀՄ գների պետական կոմիտեն սահմանել է, որ նոր արտադրատեսակների գները հաստատելիս մետաղի նորմային ծախսը, հին բազայի հետ համեմատած, պետք է իջնի ոչ պակաս 18—20 տոկոսով։ Ուստի նոր տեխնիկա նախագծողները, կոնստրուկտորները և տեխ-

նոլոգները պարտավոր են նախատեսել նաև տեսակարար նյութատարության իջեցումը։

Մեքենաշինական ձեռնարկություններում զգալի աշխատանքներ են կատարվում առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների կիրառման նպատակով, սակայն հրատապ խնդիր է մնում նորագույն տեխնոլոգիական մեթոդների ներդրումը՝ ինչպես, օրինակ, ճնշման միջոցով մշակումը, ճշգրիտ ձուլվածքը, եռակցված-դրոշմային կոնստրուկցիաները, ձևավոր և ճկված պրոֆիլները։

Մետաղի ձուլումը ձևագոյացման տեխնոլոգիայով կրկնակի անգամ ավելի ռացիոնալ է, քան դարբնոցանախապատրաստվածքայինը և մի շարք դեպքերում ավելի ռացիոնալ, քան գլանվածքից եռակցված կոնստրուկցիաները։ Ձուլող բանվորները ևս ունեն մետաղի խնայողության ոչ քիչ հնարավորություններ՝ ի հաշիվ ձուլվածքի երկրաչափական ճշգրտության բարձրացման։ Մետաղի մեծ կորուստներ են տրվում նաև թուջե ձուլվածքի մեխանիկական մշակման ժամանակ, որի օգտագործման գործակիցը մեքենաշինական ձեռնարկություններում տատանվում է 0,7—0,8-ի սահմաններում։ Առհասարակ, ձուլման արտադրամասերում ճշգրիտ ձուլվածքի տեսակարար կշիռը շատ ցածր է։ Նույնիսկ այնպիսի խոշոր ձեռնարկությունում, ինչպիսին է էլեկտրամեքենաշինական գործարանը, ձուլման արտադրամասի հզորությունն ընդամենը 16 հազար տոննա է, ճշգրիտ ձուլվածքի բաժինը՝ 10 տոկոս։ Այդ ցուցանիշի մակարդակը պատկերացնելու համար նշենք, որ շատ նույնանման ձեռնարկություններում ճշգրիտ ձուլվածքի տեսակարար կշիռն արդեն հասնում է 20 տոկոսի։

Ճշգրիտ ձուլվածքի արտադրության ցածր մակարդակը բացատրվում է բարձր արտադրողական ժամանակակից ձուլման սարքավորումների արտադրության բազայի անբավարար զարգացմամբ, ոչ միայն մայրաքաղաքի մեքենաշինական գործարաններում, այլև Չարենցավանի «Ցենտրոլիտում»։ Երևանի ձեռնարկություններում մեքենաների ու հաստոցների արտադրության ժամանակ ձուլվածքի կշռի մոտ 20—30 տոկոսը վերածվում է տաշեղների, իսկ աշխատատար արտադրանքների (ժամացույցների, սարքերի, լամպերի) արտադրության դեպքում տաշեղ է դառնում նախապատրաստվածքի կշռի մոտ կեսը։

Ուսումնասիրությունները վկայում են, որ մետաղի տնտեսման խոշոր ռեզերվներ կան հատկապես ձուլվող արտադրանքի և նախապատրաստվածքի (կիսահումք) արտադրության ժամանակ։ Բավական է նշել, որ հանրապետության մեքենաշինության արտադրանքի շուրջ կեսի թողարկման համար ծախսված մետաղի կշռի մեջ ձուլվածքի կշիռը կազմում է 40—70 տոկոս։ Ըստ հաշվարկների, 11 խոշոր մեքենաշինական ձեռնարկություններում նախապատրաստվածքների արտադրության նոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրումը կտնտեսի մոտ 3 միլիոն ռուբլի։ Դա հաստատվում է կոնկրետ օրինակներով։ Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում նվազ թափոնով մագնիսալարի թիթեղի դրոշմվածքի ներդրումը տվել է 324 տոննա նյութերի խնայողություն։ Տնտեսական բարձր արդյունավետություն է ապահովում նյութերի ձևվածքի կատարելագործումը։ Էլեկտրամեքենաշինական գործարանում ճկված պրոֆիլների ներդրումը տաք գլանվածքայինի փոխարեն՝ 1982 թվականին ապահովեց 340 տոննա մետաղի խնայողություն։

Դեռևս ցածր է մետաղի օգտագործման գործակիցը։ Երևանի մեքենաշինական ձեռնարկությունների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ նյութերի օգտագործման գործակցի բարձրացման հիմնական աղբյուրներն են ձևվածքների, մշակված դետալների պատրաստման տեխնոլոգիայի պահպանումը, պատվիրված անվանացանկին խստորեն համապատասխան նյութերի ստացումը, նորագույն սարքավորանքների կիրառումը, հանգույցների և ռուլոնային նյութի կիրառման պակասեցման նպատակով դրոշմային արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը, կոմբինացված ձևվածքի կիրառումը։

Շատ դեպքերում ձեռնարկություններն ստանում են պատվիրած սպեցիֆիկացմանը չհամապատասխանող նյութեր։ Այսպես, 1981 թվականին էլեկտրամեքենաշինական գործարանում եղել են դեպքեր, երբ ստացել են 450 մմ լայնության ռուլոններ՝ 430 մմ-ի փոխարեն, որը հանգեցրել է 137 տոննա թերթապողպատի տարեկան գերածախսի։ Էլեկտրալամպերի գործարանում նախատեսված 0,5 մմ և 0,6 մմ-ի փոխարեն ստացվել է 0,7 մմ, 0,8 մմ և 0,9 միլիմետրանոց թերթագլանվածք։

«Հիդրոհաղորդակ», ժամացույցի, տեխնիկական սարքավորումների, «Հաստոցանորմալ» գործարաններում սև մետաղի կեսը վերածվում է թափոնի։ Ավելի ցածր է տեխնիկական սարքավորումների գործարանում տեսակավոր պողպատի օգտագործման գործակիցը (0,27)։ Էլեկտրամեքենաշինական, ավտոմոբիլային, կոմպրեսորային և ֆրեզերային գործարաններում նույնպես, որոնք սպառում են մեծ քանակությամբ մետաղ, դեռևս ցածր է սև մետաղների օգտագործման գործակիցը (0,6—0,7)։

Նյութական ռեսուրսների խնայողության կարևոր ռեզերվ է գունավոր մետաղների՝ պղնձի, նիկելի, անագի, ցինկի և մյուս թանկարժեք մետաղների տնտեսումը։ Մինչդեռ մեր մեքենաշինական գործարաններում բավարար աշխատանք չի կատարվում գունավոր մետաղների թափոնների կրճատման և մետաղների օգտագործման գործակցի բարձրացման նպատակով։

Այդ մետաղները հատկապես վատ են օգտագործվում «Հիդրոհաղորդակ» գործարանում, որտեղ լատունի գլանվածքի օգտագործման գործակիցը 0,52 է, պղնձի գլանվածքինը՝ 0,32, իսկ բրոնզի գլանվածքինը՝ 0,56։ Ժամացույցի գործարանում գունավոր մետաղների թափոնների կեսը դուրս է նետվում։ Կոմպրեսորների գործարանում ալյումինի գլանվածքի օգտագործման գործակիցը, չնայած վերջին երեք տարիների նշանակալի բարձրացմանը, 1982 թվականին կազմեց 0,51։ Անհրաժեշտ է այնպես նորմավորել գունավոր մետաղների ծախսերը, որ դրանք համապատասխանեն տեխնիկայի և տեխնոլոգիայի փաստացի մակարդակին։ Այդ գործի նկատմամբ պահանջվում է հատուկ հսկողություն։

Գունավոր մետաղների թափոնները կարող են լիովին օգտագործվել։ Երկրի շատ ձեռնարկությունների փորձը պարունակում է նաև գունավոր և սև մետաղների թափոնների օգտագործման բազմաթիվ ձևեր ու մեթոդներ։ Մետաղաթափոններն օգտագործվում են հիմնական արտադրատեսակների ժողովրդական սպառման ապրանքների, ինչպես նաև տեխնոլոգիական հարմարանքների և գործիքների արտադրության նպատակով։ Մեր հանրապետության մեքենաշինական որոշ գործարաններ ևս թափոնների օգտագործման հարուստ փորձ ունեն։ Այսպես, «Հայքիմմեքենա» արտադրամիավորումն անցյալ հնգամյակում մետաղաթափոններից պատրաստել է կոմպրեսորների 15 անուն դետալներ, որի շնորհիվ տարեկան տնտեսվել է 60 տոննա սև մետաղի գլանվածք։ Չնայած այս դրական արդյունքներին, սև և գունավոր մետաղների օգտագործման վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում մետաղի թափոնները քիչ են օգտագործվում։ Դրանք դառնում են երկրորդային հումք մետալուրգիական ձեռնարկությունների համար, որտեղ տեսակավորելիս կարելի է հանդիպել ոչ միայն տաշեղների, այլև մետաղյա ձողիկների և խողովակների մնացուկների, շերտավոր և թերթավոր կոնստրուկցիոն պողպատի կտրվածքների և այլն։ Անհրաժեշտ է հիշել, որ եթե թափոնների շատ տեսակներ մի ձեռնարկության համար պիտանի չեն, ապա մեկ այլ ձեռնարկությունում կարող են ծառայել որպես արժեքավոր նյութ։

Ժողովրդական տնտեսության մեջ մետաղի տնտեսման կարևոր ռեզերվ է քիմիական, ոչ մետաղական կայուն նյութերի (պլաստմասսաների) կիրառումը։ Ըստ հաշվարկների, հանրապետության մեքենաշինական արդյունաբերությունում կարելի է պլաստմասսաներից պատրաստել մի քանի հարյուր անուն դետալներ՝ տարեկան տնտեսելով մեծ քանակությամբ մետաղ։ Մինչդեռ հանրապետության գիտահետազոտական ինստիտուտները, կոնստրուկտորական կազմակերպությունները և գործարանային լաբորատորիաները քիչ են զբաղ-

վում ինչպես մետաղաթափոնների, այնպես էլ պլաստմասսաների հնարավոր օգտագործման հարցով: Գիտահետազոտական թեմատիկ պլաններում չեն մտցված թափոնների և պլաստմասսաների օգտագործման պրոբլեմները:

Նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը սերտորեն կապված է պլանավորման և նորմավորման սիստեմի կատարելագործման հետ: Նյութական ռեսուրսների պլանավորման հիմնական ցուցանիշը նորմաների իջեցման առաջադրանքներն են՝ ըստ արտադրանքի և նյութատեսակների ծախսերի: Այս ցուցանիշի շնորհիվ բացահայտվում է այն արտադրանքը կամ նյութատեսակը, որի ծախսերի նորմաներն անցյալ տարիների համեմատ չեն իջել կամ էլ իջել են աննշան չափով:

Հանրապետության մեքենաշինական գործարաններում ծախսերի նորմավորման և նյութական ռեսուրսների խնայողության գործում առկա են որոշակի թերություններ: Երևանի կոմպրեսորների գործարանում վերջին տարիներին սև մետաղների գլանվածքի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքները սահմանվել էին 3—4 տոկոս, փաստացի խնայվել է մի քանի անգամ ավելի շատ: 1981 թ. գլանվածքային խողովակների տնտեսման համար սահմանվել էր 2,8 տոկոս, փաստացի կատարվել է 9,21, 1980 թ. պղնձի գլանվածքինը սահմանվել է 2,5 տոկոս, փաստացի կատարվել է 0,94 տոկոս և այլն:

Կաբելի գործարանում պղնձի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքը 1981 թ. եղել է 231,8 տոննա, կատարվել է 45,5, 1982 թ.՝ առաջադրանքը եղել է 225 տոննա, կատարվել է 73,1, 1981 թ.՝ 112,8 տոննայի փոխարեն տնտեսվել է 51,7 տոննա:

Բերված թվերի համադրությունից պարզ է դառնում, որ նյութերի ծախսերի պլանավորումը հիմնավորված և ռեալ չէ: Տպավորություն է ստեղծվում, թե զգալի քանակությամբ նյութատեսակների համար նորմաների իջեցմանն ուղղված դիրեկտիվ առաջադրանքները կրում են ձևական կամ պատահական բնույթ: Այս ամենը խորանում է նրանով, որ շատ ձեռնարկությունների պլաններում ամբողջությամբ չի ընդգրկվում այն ռեսուրսների տեսակների անվանացանկը, որոնց համար մշակվում են առաջադրանքները:

Այսպիսի իրավիճակը հիմնականում բացատրվում է նրանով, որ մեքենաշինական մինիստրությունները հումքի և նյութերի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքներ սահմանելիս ելնում են պարզ հավասարեցման սկզբունքից: Պետպլանից ստանալով առաջադրանքը (հատկապես բազմանվացանկային արտադրության համար), մինիստրությունները գերադասում են ղեկավարվել հավասարաչափ բաշխման սկզբունքով, առանց հաշվի առնելու ենթակա ձեռնարկության թողարկած արտադրանքի առանձնահատկությունը: Սակայն ակնհայտ է, որ նման մոտեցումը ոչ բոլոր դեպքերում է լավագույնը, երբ խոսքը վերաբերում է արդյունավետության բարձրացմանը, իսկ դա «աչքաչափով» որոշելը համարյա անհնար է:

Այդպես է վարվել, օրինակ, ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական մինիստրությունը «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորման հետ. անցած հնգամյակի համար նրան իջեցվել է սև մետաղների գլանվածքի տնտեսման այնպիսի առաջադրանք, որը միավորումը մի քանի տարիների ընթացքում չի կատարել և չէր էլ կարող կատարել: Սրան անհրաժեշտ է ավելացնել նաև այն փաստը, որ միայն 1981 թվականին սև գլանվածքի ակտավորված խոտանը կազմել է 158 տոննա:

Նյութական ծախսերի տնտեսման պլանավորումը կատարելագործելու համար անհրաժեշտ է առաջին հերթին բարելավել սև և գունավոր մետաղների նորմավորման հարցերը: Մինիստրությունները և գերատեսչությունները նյութերի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքները մշակելիս պետք է ընդգրկեն բոլոր տեսակի նյութական ռեսուրսները, այդ նպատակով լայնորեն օգտագործելով էլեկտրոնային հաշվիչ մեքենաները և մաթեմատիկական մեթոդները: Անկասկած, հանրապետության մեքենաշինական ձեռնարկություն-



ները թողարկվող ողջ արտադրանքի համար ըստ արտադրատեսակների, բոլոր տեսակի նյութական ռեսուրսների համար ունեն հաշվարկային անհատական նորմաներ: Ամեն տարի նյութական ծախսումների նորմաները վերահաստատվում են, սակայն շատ ձեռնարկություններ, որպես կանոն, չեն մշակում մետաղաարտադրանքների օգտագործման գործարանային հաշվեկշիռներ, որոնք ընդգրկեն բոլոր ռեսուրսները՝ գլանվածքը, խողովակները, ձուլվածքը, դրոշմվածքները, հանգույցները: Այսպիսի հաշվեկշիռների կազմումը հնարավորություն է ընձեռում հիմնավորելու ձեռնարկության միավոր արտադրանքի համար կազմակերպչական և տեխնիկական միջոցառումներից ստացվող խնայողության պլանը: Այսօր առավել կարևորվում է տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, որը տալիս է նյութական ռեսուրսների մեծ խնայողություն: Մեքենաշինական ձեռնարկությունները մետաղի խոշոր սպառողներ են, ուստի անհրաժեշտ է փնտրել մետաղի խնայողաբար օգտագործման նորանոր ուղիներ:

Նյութերի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքների կատարման բաղադրիչներից մեկը կազմակերպական-տեխնիկական միջոցառումների պլանների կազմումն է: Պլանի նպատակն է բացահայտել նյութական ռեսուրսների խնայողության արտադրական ռեզերվները: Մինչդեռ մեքենաշինական ոչ բոլոր ձեռնարկություններն ունեն այդպիսի պլաններ: Որոշ միջոցառումներ էլ մի տարվա պլանից տեղափոխում են մյուսը: Ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքները և կազմտեխմիջոցառումներն այս պայմաններում լրիվ չեն արտահայտում մետաղի նախատեսվող և հնարավոր խնայողության չափերը:

Նյութերի խնայողության միջոցառումների պլանները շատ ձեռնարկություններում ձևական բնույթ են կրում: Դրանցում բացակայում են լուրջ տեխնոլոգիական միջոցառումները: 1982 թվականին կազմտեխմիջոցառումների իրականացման հետևանքով մետաղյա նյութերի խնայողությունը Երևանի ավտոգործարանում և էլեկտրալամպերի գործարանում կազմել է 18 տոննա, «Հիդրոհաղորդակ» գործարանում՝ 28, «Հաստոցանորմալում»՝ 67, իսկ կաբելի գործարանում տնտեսվել է 78 տոննա պղինձ և 36 տոննա ալյումին: Ստացված ընդհանուր արդյունքը մի քանի անգամ քիչ է սահմանված առաջադրանքից:

Հանրապետության մեքենաշինական գործարաններում 1980—82 թվականներին նյութական ծախսերի վերանայված նորմաներով արտադրվող դետալների տեսակարար կշիռը տարեկան արտադրված դետալների մեջ կազմում էր 2—5 տոկոս: Դա վկայում է, որ շատ ձեռնարկություններում նյութական ռեսուրսների, առաջին հերթին սև և գունավոր մետաղների ծախսերի նորմաները չեն վերանայվում:

Դեռևս անբավարար է նյութական ծախսերի խնայողության առաջադրանքների կապը նորմավորման աշխատանքների հետ: Բավական է նշել, որ շատ ձեռնարկություններում ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքներով ընդգրկված նյութերի տեսակարար կշիռը նյութական ծախսերի ընդհանուր ծավալում կազմում է 7—12 տոկոս: Ձեռնարկությունները նյութական ռեսուրսների խնայողության առաջադրանքները հիմնականում կատարում են նվազ նյութատար արտադրանքի տեսակարար կշռի ավելացման հաշվին: Այստեղից հետևում է, որ նյութական ռեսուրսների խնայողության առաջադրանքների կազմման կարգը կատարելագործման կարիք ունի: Դա կարելի է հաստատել Երևանի էլեկտրալամպերի գործարանի օրինակով: 1981 թվականին գործարանը տեխնոլոգիական մի շարք միջոցառումների ներդրման շնորհիվ հասավ ռեսուրսների զգալի խնայողության: Ելնելով դրանից՝ 1982 թվականին ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունը, առանց հատուկ հիմնավորվածության, գունավոր մետաղների խնայողության առավել բարձր առաջադրանք սահմանեց ձեռնարկության համար: Բնականաբար գործարանը չկարողացավ կատարել այդ առաջադրանքը:

վում ինչպես մետաղաթափոնների, այնպես էլ պլաստմասսաների հնարավոր օգտագործման հարցով։ Գիտահետազոտական թեմատիկ պլաններում չեն մտցված թափոնների և պլաստմասսաների օգտագործման պրոբլեմները։

Նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը սերտորեն կապված է պլանավորման և նորմավորման սիստեմի կատարելագործման հետ։ Նյութական ռեսուրսների պլանավորման հիմնական ցուցանիշը նորմաների իջեցման առաջադրանքներն են՝ ըստ արտադրանքի և նյութատեսակների ծախսերի։ Այս ցուցանիշի շնորհիվ բացահայտվում է այն արտադրանքը կամ նյութատեսակը, որի ծախսերի նորմաներն անցյալ տարիների համեմատ չեն իջել կամ էլ իջել են աննշան չափով։

Հանրապետության մեքենաշինական գործարաններում ծախսերի նորմավորման և նյութական ռեսուրսների խնայողության գործում առկա են որոշակի թերություններ։ Երևանի կոմպրեսորների գործարանում վերջին տարիներին սև մետաղների գլանվածքի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքները սահմանվել էին 3—4 տոկոս, փաստացի խնայվել է մի քանի անգամ ավելի շատ։ 1981 թ. գլանվածքային խողովակների տնտեսման համար սահմանվել էր 2,8 տոկոս, փաստացի կատարվել է 9,21, 1980 թ. պղնձի գլանվածքինը սահմանվել է 2,5 տոկոս, փաստացի կատարվել է 0,94 տոկոս և այլն։

Կաբելի գործարանում պղնձի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքը 1981 թ. եղել է 231,8 տոննա, կատարվել է 45,5, 1982 թ.՝ առաջադրանքը եղել է 225 տոննա, կատարվել է 73,1, 1981 թ.՝ 112,8 տոննայի փոխարեն տնտեսվել է 51,7 տոննա։

Բերված թվերի համադրությունից պարզ է դառնում, որ նյութերի ծախսերի պլանավորումը հիմնավորված և ռեալ չէ։ Տպավորություն է ստեղծվում, թե զգալի քանակությամբ նյութատեսակների համար նորմաների իջեցմանն ուղղված դիրեկտիվ առաջադրանքները կրում են ձևական կամ պատահական բնույթ։ Այս ամենը խորանում է նրանով, որ շատ ձեռնարկությունների պլաններում ամբողջությամբ չի ընդգրկվում այն ռեսուրսների տեսակների անվանացանկը, որոնց համար մշակվում են առաջադրանքները։

Այսպիսի իրավիճակը հիմնականում բացատրվում է նրանով, որ մեքենաշինական մինիստրությունները հումքի և նյութերի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքներ սահմանելիս ելնում են պարզ հավասարեցման սկզբունքից։ Պետպլանից ստանալով առաջադրանքը (հատկապես բազմանվացանկային արտադրության համար), մինիստրությունները գերադասում են ղեկավարվել հավասարաչափ բաշխման սկզբունքով, առանց հաշվի առնելու ենթակա ձեռնարկության թողարկած արտադրանքի առանձնահատկությունը։ Սակայն ակնհայտ է, որ նման մոտեցումը ոչ բոլոր դեպքերում է լավագույնը, երբ խոսքը վերաբերում է արդյունավետության բարձրացմանը, իսկ դա «աչքաչափով» որոշելը համարյա անհնար է։

Այդպես է վարվել, օրինակ, ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական մինիստրությունը «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորման հետ. անցած հնգամյակի համար նրան իջեցվել է սև մետաղների գլանվածքի տնտեսման այնպիսի առաջադրանք, որը միավորումը մի քանի տարիների ընթացքում չի կատարել և չէր էլ կարող կատարել։ Սրան անհրաժեշտ է ավելացնել նաև այն փաստը, որ միայն 1981 թվականին սև գլանվածքի ակտավորված խոտանը կազմել է 158 տոննա։

Նյութական ծախսերի տնտեսման պլանավորումը կատարելագործելու համար անհրաժեշտ է առաջին հերթին բարելավել սև և գունավոր մետաղների նորմավորման հարցերը։ Մինիստրությունները և գերատեսչությունները նյութերի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքները մշակելիս պետք է ընդգրկեն բոլոր տեսակի նյութական ռեսուրսները, այդ նպատակով լայնորեն օգտագործելով էլեկտրոնային հաշվիչ մեքենաները և մաթեմատիկական մեթոդները։ Անկասկած, հանրապետության մեքենաշինական ձեռնարկություն-



ները թողարկվող ողջ արտադրանքի համար ըստ արտադրատեսակների, բոլոր տեսակի նյութական ռեսուրսների համար ունեն հաշվարկային անհատական նորմաներ։ Ամեն տարի նյութական ծախսումների նորմաները վերահաստատվում են, սակայն շատ ձեռնարկություններ, որպես կանոն, չեն մշակում մետաղաարտադրանքների օգտագործման գործարանային հաշվեկշիռներ, որոնք ընդգրկեն բոլոր ռեսուրսները՝ գլանվածքը, խողովակները, ձուլվածքը, դրոշմվածքները, հանգույցները։ Այսպիսի հաշվեկշիռների կազմումը հնարավորություն է ընձեռում հիմնավորելու ձեռնարկության միավոր արտադրանքի համար կազմակերպչական և տեխնիկական միջոցառումներից ստացվող խնայողության պլանը։ Այսօր առավել կարևորվում է տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, որը տալիս է նյութական ռեսուրսների մեծ խնայողություն։ Մեքենաշինական ձեռնարկությունները մետաղի խոշոր սպառողներ են, ուստի անհրաժեշտ է փնտրել մետաղի խնայողաբար օգտագործման նորանոր ուղիներ։

Նյութերի ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքների կատարման բաղադրիչներից մեկը կազմակերպական-տեխնիկական միջոցառումների պլանների կազմումն է։ Պլանի նպատակն է բացահայտել նյութական ռեսուրսների խնայողության արտադրական ռեզերվները։ Մինչդեռ մեքենաշինական ոչ բոլոր ձեռնարկություններն ունեն այդպիսի պլաններ։ Որոշ միջոցառումներ էլ մի տարվա պլանից տեղափոխում են մյուսը։ Ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքները և կազմտեխմիջոցառումներն այս պայմաններում լրիվ չեն արտահայտում մետաղի նախատեսվող և հնարավոր խնայողության չափերը։

Նյութերի խնայողության միջոցառումների պլանները շատ ձեռնարկություններում ձևական բնույթ են կրում։ Դրանցում բացակայում են լուրջ տեխնոլոգիական միջոցառումները։ 1982 թվականին կազմտեխմիջոցառումների իրականացման հետևանքով մետաղյա նյութերի խնայողությունը Երևանի ավտոգործարանում և էլեկտրալամպերի գործարանում կազմել է 18 տոննա, «Հիդրոհաղորդակ» գործարանում՝ 28, «Հաստոցանորմալում»՝ 67, իսկ կաբելի գործարանում տնտեսվել է 78 տոննա պղինձ և 36 տոննա ալյումին։ Ստացված ընդհանուր արդյունքը մի քանի անգամ քիչ է սահմանված առաջադրանքից։

Հանրապետության մեքենաշինական գործարաններում 1980—82 թվականներին նյութական ծախսերի վերանայված նորմաներով արտադրվող դետալների տեսակարար կշիռը տարեկան արտադրված դետալների մեջ կազմում էր 2—5 տոկոս։ Դա վկայում է, որ շատ ձեռնարկություններում նյութական ռեսուրսների, առաջին հերթին սև և գունավոր մետաղների ծախսերի նորմաները չեն վերանայվում։

Դեռևս անբավարար է նյութական ծախսերի խնայողության առաջադրանքների կապը նորմավորման աշխատանքների հետ։ Բավական է նշել, որ շատ ձեռնարկություններում ծախսերի նորմաների միջին իջեցման առաջադրանքներով ընդգրկված նյութերի տեսակարար կշիռը նյութական ծախսերի ընդհանուր ծավալում կազմում է 7—12 տոկոս։ Ձեռնարկությունները նյութական ռեսուրսների խնայողության առաջադրանքները հիմնականում կատարում են նվազ նյութատար արտադրանքի տեսակարար կշռի ավելացման հաշվին։ Այստեղից հետևում է, որ նյութական ռեսուրսների խնայողության առաջադրանքների կազմման կարգը կատարելագործման կարիք ունի։ Դա կարելի է հաստատել Երևանի էլեկտրալամպերի գործարանի օրինակով։ 1981 թվականին գործարանը տեխնոլոգիական մի շարք միջոցառումների ներդրման շնորհիվ հասավ ռեսուրսների զգալի խնայողության։ Ելնելով դրանից՝ 1982 թվականին ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունը, առանց հատուկ հիմնավորվածության, գունավոր մետաղների խնայողության առավել բարձր առաջադրանք սահմանեց ձեռնարկության համար։ Բնականաբար գործարանը չկարողացավ կատարել այդ առաջադրանքը։

Խնայողությունը նշանակալի չափով պայմանավորված է նաև մետաղի որակով և այն բանով, թե արտադրությունը ինչ չափով է ապահովվում ըստ պատվերների նախատեսված մետաղով։

Նյութական ռեսուրսների տնտեսման բնագավառում մեծ է աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության դերը։ Այդ առումով մեր շատ կոլեկտիվներում դրական զգալի փորձ է կուտակվել։ Մինչդեռ ուսումնասիրություններից պարզվում է, որ անբավարար է ներդրվում այնպիսի արդյունավետ նորամուծությունը, ինչպես խնայողության անձնական հաշիվների մեթոդն է։ Մրցության այդ ձևն ամենից առաջ նպատակամղված է խնայողության ռեժիմի ուժեղացմանը, նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը։ Վերջին երկու տարում, հանրապետության 13 մեքենաշինական գործարաններում աշխատավորների նախաձեռնությամբ ներդրվել է խնայողության 750 միջոցառում, որն ապահովել է զգալի տնտեսում։ Նյութական ռեսուրսների տնտեսման բնագավառում աշխատավորների լայն մասսաներին ընդգրկելը զարկ է տալիս նոր նախաձեռնություններին, նրանց մոտ դաստիարակում խնայողության զգացում, տիրոջ վերաբերմունք հանրային ունեցվածքի և նյութական ծախսերի նկատմամբ։

Կուսակցությունը գտնում է, որ նյութական ռեսուրսների տնտեսման համար անհրաժեշտ է կատարելագործել ռեսուրսների պլանավորման և օգտագործման տնտեսական մեխանիզմը, այդ նպատակով վճռականորեն բարելավել նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ստեղծման ու ներդրման գործը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը հանձնարարեց մշակել կազմակերպական, տնտեսական և բարոյական միջոցների մի այնպիսի համակարգ, որը տեխնիկայի նորացման, ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար շահագրգռի թե՛ ղեկավարներին, թե՛ բանվորներին և թե, իհարկե, գիտնականներին ու կոնստրուկտորներին, անշահավետ դարձնի հին ձևով աշխատելը։

---

# ՍՏԱՆԴԱՐՏԱՑՈՒՄ ԵՎ ՈՐԱԿ

**Լ. ՖԵԴՅԱՆՈՎԻՉ**
ՀՍՍՀ պետպլանի արտադրանքի ստանդարտացման
և որակի բաժնի պետի տեղակալ

Մեր ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ զգալի փորձ է կուտակել ժողովրդի համար գերազանց որակի ապրանքներ արտադրելու ասպարեզում։

Որակի կառավարման միջգերատեսչական կոորդինացիոն խորհրդի նախաձեռնությամբ հանրապետությունում «Բարձրորակ արտադրանքի ձեռնարկություն» կոչման համար մրցությունում 1982 թ. արդյունքների հիման վրա հաղթող է ճանաչվել վեց ձեռնարկություն, որոնցից երեքը ժողովրդական սպառման ապրանքների։ Դրանք են՝ Կիրովականի Ստ. Շահումյանի անվան կարի արտադրամիավորումը, Երևանի երաժշտական գործիքների փորձարարական ֆաբրիկան և «Մասիս» արտադրամիավորումը, որոնք համախառն արտադրանքում որականիշով իրերի տեսակարար կշիռը հասցրել են 65 տոկոսի։ Որակի նկատմամբ սպառողների պահանջմունքները մշտապես աճում են, ուստի անհրաժեշտ է, որպեսզի որակի չափանիշներն էլ լինեն առավել բարձր։

«1983—1985 թթ. ժողովրդական սպառման ապրանքներով բնակչության ապահովումը բարելավելու լրացուցիչ միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ նշված է, որ կուսակցության XXVI համագումարի հաստատած սոցիալական ծրագրի հիմնական մասը սպառողական արտադրանքի արտադրության ավելացումն է, և դա պետք է դառնա բոլոր կուսակցական, սովետական, արհմիութենական մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների անհետաձգելի հոգատարության առարկան։ 1984 թվականից արդեն պարտադիր կերպով կպլանավորվի արտադրությունից հնացած արտադրատեսակների հանումը։ Պլաններում առաջին անգամ աշխատավարձի ֆոնդի յուրաքանչյուր ռուբլու դիմաց կսահմանվեն ժողովրդական սպառման ապրանքների արտադրության առաջադրանքներ։ Այս պայմաններում անհրաժեշտ է, որ նոր յուրացվող արտադրանքը դիմանա լավագույն նմուշների մրցակցությանը, գիտահետազոտական ու կոնստրուկտորական կազմակերպություններն առավել լրիվ օգտագործեն սպառման ապրանքների տեխնիկական մակարդակի բարձրացման, դրանց որակական հատկանիշների բարելավման առկա հնարավորությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումը խնդիր դրեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, բարելավել տնտեսական գործունեությունը՝ արտադրանքի թողարկման ավելացման ու որակի բարելավման համար։

Ժողովրդական տնտեսության կառավարման լծակների համակարգում կարևորվում են ստանդարտավորումը և դրա հնարավորությունների արդյունավետ ու լիարժեք օգտագործումը։ Վերջին տարիներին ստանդարտավորումը ձևավորվել է որպես ինքնուրույն ոլորտ և դարձել ժողովրդական տնտեսության կառավարման կարևոր օղակը։ Ստանդարտավորման պետական համակարգը գործում է «Երկրում ստանդարտավորման աշխատանքների բարելավման մա-

Չնայած որակի բարձր կարգ ունեցող արտադրանքի ընդհանուր աճին (6,2 տոկոս), հանրապետության 28 ձեռնարկություններում, անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, նվազել է այդ արտադրանքի ծավալը։ Դրանցից են՝ Կիրովականի քիմիական մանրաթելերի գործարանը, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը, ալյումինի գործարանը, Իջևանի գորգի, Երևանի մետաքսի կոմբինատները, «Ավանգարդ» և Կիրովականի տրիկոտաժի արտադրամիավորումները։ Արդյունաբերական և գյուղական շինարարության մինիստրությունների, Երքաղսովետի մի շարք ձեռնարկություններ, Լենինականի հղկող հաստոցների, «Հաստոցանորմալ» և այլ գործարաններ շարունակում են թողարկել որակի երկրորդ կատեգորիայի և չատեստավորված արտադրանք։

Արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի դանդաղ բարձրացման հիմնական պատճառը մինիստրությունների ու գերատեսչությունների թույլ պահանջկոտությունն է մշակվող նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերի նկատմամբ, որոնցում սահմանվում են արտադրանքի որակին առաջադրվող հիմնական պահանջները։

Սակայն ստանդարտների գիտատեխնիկական բարձր մակարդակը դեռևս ինքնին չի երաշխավորում թողարկվող արտադրանքի բարձր որակը։ Առանձնահատուկ հրատապություն ու սրություն է ստանում ստանդարտների և տեխնիկական պայմանների պահպանման համար պետական ու արտադրական կարգապահության ամրապնդման խնդիրը։ Այդ կապակցությամբ նախ անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել, որպեսզի փաստաթղթերում ապահովվեն բարձր պահանջները, ապա նաև կանխվեն այն դեպքերը, երբ մինիստրություններն ու գերատեսչություններն անհիմն կերպով շեղումներ են թույլատրում ստանդարտներից և տեխնիկական պայմաններից, երկարացնում են նորմատիվային տեխնիկական նոր փաստաթղթերի գործողության մեջ դրվելու ժամկետները և հների գործադրումը։ Այդ նպատակով հանրապետության պետպլանը հատուկ որոշմամբ պարտավորեցրել է մինիստրություններին ու գերատեսչություններին՝ վերանայելու նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերը։ Այդ աշխատանքը հանրապետությունում իրականացնում են գիտահետազոտական, նախագծակոնստրուկտորական կազմակերպություններն ու ձեռնարկությունները՝ ըստ հանձնարարված անվանակարգերի։ Հանրապետական յուրաքանչյուր ստանդարտի (РСТ) և տեխնիկական պայմանի (ТУ) համար նախատեսվում է կազմել համապատասխան ստուգման ակտ՝ հիմնավորելով գործող փաստաթղթերի փոխարեն նորերի մշակումը, դրանց մեջ փոփոխություններ մտցնելու, գործողության ժամկետը երկարացնելու կամ դադարեցնելու վերաբերյալ տեխնիկատնտեսական առաջարկությունները։ Ընդ որում փաստաթղթերի ստուգման և վերանայման ժամանակ անհրաժեշտ է խստորեն առաջնորդվել փորձարկումների արդյունքներով։

Արդեն իրականացված է մեծ ծավալի աշխատանք, որի շնորհիվ ժողովրդական սպառման ապրանքների ավելի քան 700 հանրապետական ստանդարտների, տեխնիկական պայմանների և տեխնիկական նկարագրերի գործողության ժամկետները վերանայված են, երկարաձգված կամ դադարեցված։

Հանրապետական ստանդարտացման պլանի համաձայն, որն ամեն տարի հաստատում է ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը, նախատեսվում է РСТ և ТУ-ների վերանայում ոչ ուշ, քան հինգ տարին մեկ։ Այսպես, 1984 թվականին վերանայվելու են շուրջ 1.000 անուն նորմատիվային տեխնիկական փաստաթղթեր։

Ինչպես նշվում է գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ, այդ պրոցեսի կարևոր ուղղություններից մեկը նոր արտադրանքի մշակման և յուրացման ժամկետների կրճատումն է։ Յուրացման ժամկետները պայմանավորված են ոչ միայն տեխնիկական փաստաթղթերի մշակման, փորձանմուշների պատրաստման և փորձարկումների տևողությամբ, այլև այդ աշխատանքներն ուղեկցող գործողություններով՝ կապված մշակված փաստաթղթերի համաձայնեցման, էքսպերտիզայի հաստատման և գրանցման հետ։



Այդ գործողությունների հետ կապված ժամանակի կրճատման նպատակով ՍՍՀՄ Պետստանդարտը 1982 թ. ընթացքում նոր նմուշները արտադրության համար երաշխավորելու կարգը պարզեցնելու և բարելավելու զգալի աշխատանք կատարեց։ Այդ առթիվ վերանայվել են մի շարք պետական ստանդարտներ, որոնց հիման վրա հանրապետությունում գործողության մեջ են դրվել հանրապետական նոր ստանդարտներ, որոնք նախատեսում են նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերի համաձայնեցման, տեխնիկական առաջադրանքների հաստատման, փորձաքննության անցկացման, նմուշների փորձարկման և ընդունման, էտալոնների հաստատման, մասսայական արտադրանքի ստուգիչ փորձարկումների կարգը։ Նոր արտադրատեսակները մասսայական արտադրության հանձնարարելու կարգը պարզեցնելու նպատակով թույլատրված է տեխնիկական առաջադրանքներ չսահմանել այն իրերի համար, որոնց հիմնական հատկանիշները որոշվում են գեղագիտական և յուրահատուկ ցուցանիշներով։ Պետական և հանրապետական ստանդարտների վերանայմամբ զգալիորեն պարզեցված է փաստաթղթերի համաձայնեցման կարգը, նկատի ունենալով, որ այդ հարցերին պետք է ունենալ տարբեր մոտեցում՝ ըստ արտադրանքի տեսակի։

Այսպես, РСТ—2.7—77 հանրապետական նոր ստանդարտը սահմանում է իրերի կոնկրետ տեսակների տեխնիկական նկարագրի մշակման, համաձայնեցման և հաստատման կարգը։ Նկարագրություններում, որպես կանոն, պահանջվում է ձևակերպել այն ցուցանիշները, որոնք փոփոխվում են շուկայի իրավիճակի ազդեցությամբ։ Ուստի այդ տեխնիկական նկարագրերը պետք է համաձայնեցնել միայն հանրապետության առևտրի մինիստրության հետ։ Այսպիսի կարգը ձեռնարկությանը հնարավորություն է ընձեռում նոր իրերի արտադրությունը յուրացնելու և տեսականին թարմացնելու առավել սեղմ ժամկետներում։

Այդ նույն նպատակով պետպլանը մշակել և գործադրել է ճյուղային գեղարվեստական-տեխնիկական խորհուրդների աշխատանքի նոր կարգը։ Հանրապետությունում ստեղծվել է ինը խորհուրդ, որոնցից յուրաքանչյուրի իրավասության է հանձնված իրերի որոշակի անվանացուցակ։ Որպես կանոն, այդ խորհուրդները քննարկում են տեխնիկական նկարագրերի հիման վրա պատրաստված իրերը։ Մինչդեռ հաճախ անհնար է տեխնիկական նկարագրերի մշակումն ու գործադրումն այն պատճառով, որ առաջատար մինիստրություններն ու գերատեսչությունները, որոնք կոչված են իրականացնելու միասնական տեխնիկական քաղաքականությունը, մինչև այժմ չեն ապահովել համապատասխան ստանդարտների և ընդհանուր տեխնիկական պայմանների մշակումը, որի հետևանքով ձգձգվում են նոր իրերի արտադրական յուրացման ժամկետները։ Եվ քիչ չեն դեպքերը, երբ նոր արտադրատեսակների յուրացման նպատակով ծախսվող ժամանակը գերազանցում է սահմանված նորմաները։ Հաճախ խախտվում է նաև արդեն հաստատված և գրանցված նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերը և գների նախագծերը գնակազմող մարմիններին ներկայացնելու կարգը։

Ստանդարտացումը ժողովրդական սպառման ապրանքների բարձր որակի ապահովման հիմքն է։ Ստանդարտների, դրանց գիտատեխնիկական բարձր ցուցանիշների և պահանջների անթերի կենսագործումը արդյունավետության և որակի պրոբլեմի, ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտրոնական կոմիտեի պլենումների առաջադրած խնդիրների լուծման արդյունավետ ուղիներից մեկն է։

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ԿԱԴՐԵՐԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿԵՆՔ ԲԱՐՁՐ ՊԱՀԱՆՋԿՈՏՈՒԹՅԱՆ ՈԳՈՎ

**Մ. ՄԿՐՏՉՅԱՆ**
ՀԿԿ Արթիկի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԵՋ կարևոր տեղ են գրավում կադրերի հետ տարվող աշխատանքը, նրանց ընտրությունը, տեղաբաշխումը և դաստիարակությունը։ Կադրային քաղաքականությունը հզոր լծակ է, որի միջոցով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ողջ ընթացքի վրա։ Մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ այն բանից հետո, երբ մշակվել է քաղաքական գիծը, որոշվել են հասունացած խնդիրների լուծման նյութական հնարավորությունները, կադրերի հետ տարվող աշխատանքը դառնում է գլխավորը կուսակցական և պետական ղեկավարման մեջ։

Կոմունիստական շինարարության արդի փուլի առանձնահատկություններից (մասշտաբայնությունն ու բարդությունը) ելնելով՝ կուսակցությունը լուրջ պահանջներ է առաջադրում կադրերին և, առաջին հերթին, ղեկավար կադրերին։ Այսօր ամեն մի ղեկավար, անկախ նրա զբաղեցրած պաշտոնից, պետք է դրսևորի առավել մեծ հաստատակամություն և համառություն կոնկրետ արդյունքի հասնելու համար, համարձակորեն ստանձնի կյանքի կողմից առաջ քաշվող պրոբլեմների լուծման ողջ պատասխանատվությունը։ Այդ մասին շատ համոզիչ ասվեց ՍՄԿԿ XXVI համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ. «Արդի պայմաններում մեծապես աճում է կարգապահության նշանակությունը, անձնական պատասխանատվության նշանակությունը, հատկապես՝ տնտեսական, սովետական և կուսակցական ղեկավարների պատասխանատվությունը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 80)։

ՍՄԿԿ-ի տնտեսական ստրատեգիայի նպատակն է 80-ական թվականներին ավարտել էկոնոմիկայի փոխադրումը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա, արագ թափով բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը։ Կուսակցության նախատեսած տնտեսական ու սոցիալական ծրագրի հաջող իրագործման կարևորագույն նախապայմանը կադրերի և, մասնավորապես, տնտեսական կադրերի հետ կուսկազմակերպությունների սիստեմատիկ, խորացված աշխատանքն է։ «...Հարկավոր է ճիշտ տեղաբաշխել կադրերը, որպեսզի վճռական տեղամասերում կանգնած լինեն քաղաքականապես հասուն, իրազեկ, նախաձեռնող, կազմակերպչական ունակություններով և նորի զգացումով օժտված մարդիկ, առանց որի մեր ժամանակներում չի կարելի հաջողությամբ ղեկավարել ժամանակակից արտադրությունը»,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումում։

Գաղտնիք չէ, որ ամեն ինչ սկսվում է համապատասխան պաշտոնի համար աշխատողի ընտրությունից։ Վերջին տարիներին ՀԿԿ Արթիկի շրջկոմը, նրա բյուրոն առավել մեծ ուշադրություն են նվիրում կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցերին։ Դրա շնորհիվ զգալիորեն բարելավվել է շրջկոմի անվանացուցակի կադրերի որակական կազմը։ Բավական է ասել, որ ներկայումս նրանց 54 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, 53 տոկոսը ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի մասնագետներ են, 76 տոկոսը՝ կոմունիստներ, շուրջ 20 տոկոսը՝ կանայք։

Այսօր հիմնական խնդիրն այն է, որպեսզի ամեն մի ղեկավար առավել մեծ հետևողականությամբ կատարելագործի իր աշխատանքի ոճը, ցույց տա գործարարության, պատասխանատվության անձնական օրինակ, իր գործունեության մեջ առավել համարձակորեն ներդնի նորը և առաջավորը։ ՍՄԿԿ XXVI համագումարում շեշտվեց, որ «խոսքը աշխատանքի այնպիսի ոճ մշակելու մասին է, որի մեջ կատարողականությունը, կարգապահությունը օրգանապես զուգակցվեն համարձակ նախաձեռնության և ձեռներեցության հետ» (նույն տեղը, էջ 82—83)։

Կադրային քաղաքականության բնագավառում կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների համար գործողության կոնկրետ ծրագիր են ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1983 թ.) պլենումի որոշումը, պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանի առաջադրած խնդիրները։ Կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վերաբերյալ ՀԿԿ Լենինականի քաղկոմի հաշվետվության քննարկման կապակցությամբ ընկեր Դեմիրճյանը պլենումի մասնակիցների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ «Ղեկավար աշխատողի բնորոշ գիծը պետք է լինի նրա անձնական կարգապահությունը, կատարողական ճշտապահությունն ու բարոյական անաղարտությունը, իր գործունեության արդյունքները քննադատաբար գնահատելու կարողությունը»։ Հաշվի առնելով այս պահանջները, մենք մշտապես ձգտում ենք, որպեսզի իրական գործը, դրա նկատմամբ գիտակցական վերաբերմունքը դառնան այն հիմնական չափանիշը, որով ստուգվեն կադրերը, որոշվի նրանց քաղաքական և պրոֆեսիոնալ հասունությունը։ Այս առումով մեր կադրերի ճնշող մեծամասնությունը հաջող քննություն է բռնել, նրանց, ամենից առաջ, բնորոշ են գաղափարական խոր համոզվածությունը, գործիմացությունը, ամեն մի իրադրությունում ծառացած խնդիրների լուծման և ծագած դժվարությունների հաղթահարման ճանապարհին արդյունավետ միջոցներ գտնելու ունակությունը, վստահված տեղամասերի գործերի վիճակի և վերջնարդյունքի համար անձնական բարձր պատասխանատվությունը։ Այդ են հաստատում Հոռոմի, Լուսակերտի, Փանիկի, Մեղրաշենի, Գետափի, Հայրենյացի, Անուշավանի, Տուֆաշենի տնտեսությունների, Մանթաշի արդկոմբինատի, վակուումային էլեկտրավառարանների և «Ապակեմեքենա» գործարանների, կապի հանգույցի և բազմաթիվ այլ աշխատավորական կոլեկտիվների վերջին տարիների կայուն արդյունքները։

Փանիկը, օրինակ, այժմ մեր առաջավոր տնտեսություններից է։ Երեք տասնամյակ է, ինչ նրա ղեկը գտնվում է կոմունիստ Ալեքսան Օրդանյանի ձեռքում։ Այդ տարիները իսկական քննաշրջան են եղել ոչ միայն կոլտնտեսության մարդկանց, այլև նրա նախագահի համար։ Երբեմնի հետամնաց տնտեսությունը հաստատուն տեղ է գրավել առաջավորների շարքում և վստահ շարունակում է վերելքի ուղին, իսկ նրա նախագահն իրեն դրսևորել է որպես սկզբունքային կոմունիստ և բանիմաց ղեկավար, մեծ հեղինակություն ձեռք բերել աշխատավորների շրջանում։ Նրա բնորոշ հատկանիշներն են՝ գործնականությունը, հետևողականությունը, ճշտապահությունն ու արդարամտությունը, պահանջկոտությունը նախ՝ իր, ապա՝ ենթակաների նկատմամբ։ Այդ ամե-

նը նպաստել է գործերի լավացմանը։ Վերջին տարիներին կոլտնտեսությունը հացահատիկի և շաքարի ճակնդեղի կայուն և բարձր բերք է ստանում, բարենպաստ տարիներին, անջրդի պայմաններում՝ հեկտարից մինչև 50 ցենտներ հացահատիկ, ջրովի պայմաններում՝ 400 ցենտներից ավելի ճակնդեղ։ Այս տարի թեև կլիմայական պայմաններն անբարենպաստ էին (կարկուտը մեծ վնաս պատճառեց ցանքադաշտերին), այնուամենայնիվ, ամեն մի հեկտարից ապահովվեց 27 ցենտներ հացահատիկի, 350 ցենտներ շաքարի ճակնդեղի բերք։

Եթե դաշտավարությունում գործերը միշտ էլ բարեհաջող են եղել, ապա անասնապահության բնագավառի ցուցանիշները չեն բավարարել ո՛չ կուսշրջկոմին և ո՛չ էլ տնտեսության ղեկավարներին։ Եվ, երբ 1980 թ. շրջկոմի պլենումում քննարկում էինք անասնապահության արդյունավետության հետագա բարձրացման հարցը, ու կշտամբանքի լուրջ խոսքեր ասվեցին նաև Փանիկի ղեկավարների հասցեին՝ արտադրության ռեզերվները անբավարար օգտագործելու կապակցությամբ, վերջիններս, մասնավորապես կոլտնտեսության նախագահ Ա. Օրդանյանը, համապատասխան հետևություն արեցին քննադատությունից և աստիճանաբար շտկեցին գործերի վիճակը։ Տնտեսության ղեկավարությունը և մասնագետները բացահայտեցին ներքին ռեզերվները և գործուն միջոցներ ձեռնարկեցին դրանք արդյունավետ օգտագործելու համար։ Բարելավվեցին ցեղաբուծական աշխատանքը, կերարտադրության գործը, բարձրացվեց միջին օղակի կադրերի պատասխանատվությունը, որոշ փոփոխություններ կատարվեցին նրանց կազմում։ Եվ ահա արդյունքները. վերջին տարիներին սեփական կերի արտադրության ծավալը, տասներորդ հնգամյակի միջին տարեկան ցուցանիշի համեմատությամբ, մեծացավ 50 տոկոսով։ Եթե մի ժամանակ տնտեսությունն այլ տեղերից էր տոհմային մատղաշներ ձեռք բերում, ապա այժմ ինքն է կազմակերպում բարձրարժեք երինջների աճեցման գործը։ Աճեց և մթերատվությունը. երեք-չորս տարի առաջ այստեղ մեկ կովի կաթնատվությունը չէր անցնում 1.500 կգ-ից, մինչդեռ 1982 թ. կոլտնտեսությունը հատեց 2.100 կգ-ի բնագիծը, իսկ այս տարի կստանա 2.200 կգ։ Մթերվող անասունների միջին կենդանի քաշը 270-ից հասցվեց 330 կգ-ի, նաև որակական ցուցանիշներն են լավացել. պետությանը վաճառված կաթի 93 տոկոսը առաջին տեսակի է։

Բնականաբար, աճում են տնտեսության դրամական եկամուտները և հնարավոր է լինում լուծել նաև սոցիալական շատ հարցեր։ Նախագահի անմիջական նախաձեռնությամբ տնտեսության միջոցներով գյուղում կառուցվում է հիվանդանոց, բարեկարգվել են գյուղի փողոցները։ Շուտով մուտք կգործի նաև բնական գազը։ Այժմ Փանիկն ունի իր հանրախանութն ու գրախանութը, կենցաղային տաղավարը և բնակչության սպասարկման այլ օբյեկտներ։ Արտադրության մարդիկ լավ վարձատրվում են, ապրում ունևոր և կուլտուրական կյանքով, ժամանակակից կենցաղով։ Զարմանալի չէ, որ վերջին տասնամյակում գյուղում չի արձանագրվել հակահասարակական երևույթի ոչ մի փաստ, տնտեսությունում տիրում է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, ապահովվում է կուսկազմակերպության և կոլտնտեսության վարչության համատեղ, արդյունավետ աշխատանքը, կադրերի միտքը մշտապես որոնումների մեջ է, արագորեն արմատավորվում են ուսանելին և լավը։ Եվ այդ ամենին տոն է տալիս կոլտնտեսության նախագահ Ա. Օրդանյանը՝ Հայրենական մեծ պատերազմի մասնակիցն ու մարտական շքանշանների և մեդալների ասպետը, որի խաղաղ տարիների աշխատանքը գնահատվել է Լենինի շքանշանով ու պատվոգրերով։

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները կադրերի դաստիարակության, հանձնարարված գործի համար նրանց պատասխանատվության բարձրացման բազմազան ձևեր ու մեթոդներ են կիրառում։ Վերջին ժամանակներս մենք մեծ կարևորություն ենք տալիս նրանց հետ տարվող անհատական



աշխատանքի ուժեղացմանը և, մասնավորապես, շրջկոմի քարտուղարների, բյուրոյի անդամների, շրջկոմի ապարատի պատասխանատու աշխատողների կողմից առանձին ղեկավար կադրերի հետ անհատական, երբեմն էլ խմբային զրույցների անցկացմանը։ Ընդ որում դրանք չեն կազմակերպվում հենց այնպես, հանպատրաստից։ Շրջկոմի բաժինները նախօրոք ուսումնասիրում են այս կամ այն ղեկավարի աշխատանքի ոճն ու մեթոդները, կոլեկտիվում տիրող իրավիճակը, թերությունների ու թերացումների հիմնական պատճառները և այլն։ Միայն վերջին մեկ տարում նման զրույցներին մասնակցել է շրջկոմի անվանացուցակում ներգրավված ավելի քան 250 մարդ։

Մենք սեփական փորձով համոզվել ենք կադրերի հետ տարվող աշխատանքի նման մեթոդի առավելության մեջ, քանի որ այն օգնում է ոչ միայն նրանց ճիշտ դաստիարակությանն ու աճին, այլև ժամանակին բացահայտելու և շտկելու հնարավոր սխալները, կանխելու շեղումները։ Հայտնի բան է, որ անսխալական մարդ չկա, իսկ աշխատանքից ազատելը ամենահեշտ միջոցն է։ Սակայն մենք ձգտում ենք, որպեսզի նախ՝ կադրերը որքան հնարավոր է քիչ թերություններ ու թերացումներ ունենան, և երկրորդ՝ նրանց ժամանակին կանգնեցնել ճիշտ ուղու վրա։ Մեր զրույցներն էլ հետապնդում են մեկ կարևոր նպատակ՝ ժամանակին տեսնել ղեկավարի և կոլեկտիվի աշխատանքում եղած թերությունները, օգնել, հնարավորություն տալ մարդուն՝ վերացնելու դրանք, շտկելու նկատվող սխալները։ Մենք այդպես վարվեցինք, օրինակ, «Արթիկտուֆ» արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր Ց. Ցուզբաշյանի հետ։ Տարիներ շարունակ այդ ձեռնարկությունում ձախողվում էր պետական պլանների կատարումը։ Ստեղծված աննորմալ վիճակի համար կարելի էր դիմել կազմակերպական ծայրահեղ միջոցի։ Ի՞նչ կտար դա, մանավանդ որ պլանների թերակատարումն ուներ ոչ միայն սուբյեկտիվ, այլև օբյեկտիվ պատճառներ։ Ուստի մենք վարվեցինք այլ կերպ. հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրության հետ մշակեցինք ձեռնարկության տեխնիկական վերազինմանը և արտադրության կուսակցական ղեկավարման բարելավմանն ուղղված միջոցառումներ։ Դրանց համապատասխան տեղադրվեցին քար կտրող ու մշակող ժամանակակից բարձրարտադրողական մեքենասարքավորումներ, կարգավորվեց նյութատեխնիկական մատակարարումը, կատարվեցին միջին օղակի կադրերի որոշ փոփոխություններ, ուժեղացվեցին արտադրության կուսակցական ղեկավարությունը և աշխատողների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։ Եվ չնայած որ դեռևս լուրջ անելիքներ կան գործերի վիճակը արմատապես շտկելու համար, այնուամենայնիվ, առաջխաղացումը շոշափելի է. վերջին տարիների ընթացքում այս տարի առաջին անգամ ձեռնարկությունը կատարեց պետական պլանները (10 ամսվա արդյունքներով), և կան բոլոր նախադրյալները հնգամյակի առանցքային տարին հաջողությամբ փակելու համար։ Նկատելի է ևս մեկ կարևոր հանգամանք. ձեռնարկության ղեկավարությունը, ինչպես նաև միջին օղակի կադրերը դրսևորում են պահանջկոտություն, կազմակերպվածություն, կարևորում են աշխատանքային և տեխնոլոգիական, պետական ու կատարողական կարգապահության ամրապնդման անհրաժեշտությունը։ Ուժեղացել է նաև կուսակցական վերահսկողությունը արտադրական օղակների գործերի և նրանց ղեկավարների գործունեության նկատմամբ։

Շրջկոմի և մի շարք սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ արմատավորվել է ղեկավար աշխատողների, սովետական, տնտեսական մարմինների հաշվետվությունները պարբերաբար քննարկելու պրակտիկան։ Անցած երկուսուկես տարում միայն շրջկոմի բյուրոյի նիստերում լսվել են ավելի քան 40 տնտեսական ղեկավարների և կուսկազմակերպությունների հաշվետվություններ։ Իհարկե, մենք առաջնայինը չենք համարում հաշվետվությունների սոսկ քանակական ավելացումը։ Որպես կանոն, դրան դիմում ենք միայն այն ժամանակ, երբ անհրաժեշտություն է զգացվում։ Ընդ որում հաշ-

վետվությունների քննարկումը ոչ թե, այսպես կոչված, «պատժիչ» նպատակ է հետապնդում, այլ այն ամենից առաջ ուղղված է թերությունների ժամանակին բացահայտմանը, դրանց վերացման վրա կադրերի ուշադրության հրավիրմանը և, ի վերջո, կադրերի ճիշտ դաստիարակությանը։

Մենք համոզվել ենք, որ կադրերի գործունեության նկատմամբ հսկողությունը ցանկալի արդյունք չի տա, եթե պահանջկոտությունը չզուգակցվի կոնկրետ օգնության, աջակցության, բոլոր աստիճանների ղեկավարների նախաձեռնության և ինքնուրույնության զարգացման հետ։ Ահա թե ինչու շրջկոմն իր պրակտիկ աշխատանքում ձգտում է, որպեսզի կադրերի գործունեությունը վերլուծելիս ոչ միայն բացահայտի թերությունների, բացթողումների պատճառները, այլև օգնի նրանց՝ տեսնելու գործերի իրավիճակի բարելավման կոնկրետ ուղիները։ Այսպես, «Ապակեմեքենա» գործարանը տարիներ շարունակ չէր կատարում պլանային առաջադրանքները, ձեռնարկությունում թուլացել էր աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, անուշադրության էր մատնվել կոլեկտիվի անդամների աշխատանքային, գաղափարաքաղաքական դաստիարակության գործը, բարձր էր աշխատուժի հոսունության տոկոսը։ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում այդ ձեռնարկության ղեկավարությունը քննադատվեց որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանք չթողարկելու համար։ Ստեղծված վիճակը չէր կարող չանհանգստացնել կուսշրջկոմին։ Համագումարից անմիջապես հետո շրջկոմի բյուրոն քննարկեց «Կոլեկտիվի անդամների աշխատանքային, գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի վիճակի և դրա բարելավման նպատակով «Ապակեմեքենա» գործարանի կուսկազմակերպության և դիրեկցիայի գործունեության մասին» հարցը։ Հարցի նախապատրաստության ընթացքը և բյուրոյի նիստում դրա քննարկումը ցույց տվեցին, որ ստեղծված վիճակն ամենից առաջ կադրերի և, մասնավորապես, միջին օղակի ղեկավար կադրերի ոչ ճիշտ ընտրության, տեղաբաշխման և, որ ամենագլխավորն է, նրանց նկատմամբ թույլ պահանջկոտության հետևանք է։ Այստեղ հոգ չէր տարվում բանվորների որակավորման բարձրացման, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի ու մեթոդների ներդրման, աշխատանքային ու կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին։ Իսկ նման վիճակը բոլորովին չէր մտահոգում ձեռնարկության կուսկազմակերպությանն ու ադմինիստրացիային։ Եվ շրջկոմի բյուրոն հիմնականում այս իսկ հարցերի լուծման վրա հրավիրեց նրանց ուշադրությունը։ Առաջին հերթին որոշեցինք ամրապնդել կուսկազմակերպությունը, այդ նպատակով կուսբյուրոյի քարտուղար երաշխավորեցինք երիտասարդ ինժեներ Ս. Մանուկյանին, որն աճել է այդ ձեռնարկությունում։ Ապա բյուրոյին հանձնարարեցինք շրջկոմի որոշումը բանվորների ակտիվ մասնակցությամբ քննարկել արտադրամասային կուսկազմակերպություններում, կուսխմբերում, կուսակցական ընդհանուր ժողովում և մշակել գործնական միջոցառումներ։ Բյուրոն դիրեկցիայի գործուն աջակցությամբ կարողացավ արմատական փոփոխություններ մտցնել կոլեկտիվի անդամների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքում, բոլոր օղակներում հաստատել բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, աստիճանաբար իրականացնել մշակված միջոցառումները։ Հարկ եղավ նաև երիտասարդ, գործունյա կադրերով ամրապնդել արտադրության առանձին տեղամասերը, ուժեղացնել հսկողությունը նրանց գործունեության նկատմամբ, բարձրացնել առհասարակ բոլոր կադրերի անձնական պատասխանատվությունը վստահված տեղամասերի ոչ միայն գործերի վիճակի, այլև մարդկանց դաստիարակության համար։ Ապա վերանայվեցին ստանձնած սոցպարտավորությունները, բարելավվեց սոցմրցության ծավալման և բանվորների որակավորման գործը, ներդրվեցին աշխատանքի կազմակերպման նոր, առաջավոր ձևեր ու մեթոդներ։ Այսօր արդեն 26 բրիգադներ (բանվորների ընդհանուր թվի 56 տոկոսը) աշխատում են կոլեկտիվ կապալի մեթոդով։ Նրանք թողարկում են ամբողջ արտադրանքի 61 տոկոսը։



Զգալի աշխատանք կատարվեց կոլեկտիվի սոցիալական զարգացման ծրագրի իրականացման նպատակով։ Վերջին երկու տարում շահագործման հանձնվեց 4.700 քմ մակերեսով բնակելի տարածություն, ընդլայնվեց և հիմնական նորոգման ենթարկվեց բանվորական ճաշարանը, ստեղծվեց ջերմատնային օժանդակ տնտեսություն։ Էապես աշխուժացել են գեղարվեստական ինքնագործունեությունը, ֆիզկուլտուրան և սպորտը։ Լուրջ հաջողություններ կան ձեռնարկության տեխնիկական վերազինման, մեքենասարքավորումների արդյունավետ օգտագործման գործում։

Տեխնիկատնտեսական, կազմակերպչական, գաղափարաքաղաքական և դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային միջոցառումների մշակումն ու դրանց հետևողական իրականացումը բարերար ազդեցություն թողեցին գործերի ընդհանուր վիճակի վրա. ամրապնդվեց աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, գրեթե նվազագույնի հասավ բանվորական ուժի հոսունությունը (տարեկան 15—17 մարդ, 1980 թ. 120—130-ի դիմաց)։ Գործարանն այսօր հաստատակամորեն բռնել է վերելքի ուղին, դուրս եկել շրջանի առաջավոր ձեռնարկությունների շարքը։

Կուսշրջկոմը կադրերի հետ տարվող աշխատանքում մշտապես ձգտում է համբերատար կերպով օգնել նրանց՝ բարելավելու վստահված տեղամասերի գործերի վիճակը։ Սակայն դա ամենևին չի նշանակում, թե մենք հաշտվողական, լիբերալ դիրք ենք գրավում այնպիսի աշխատողների և, մասնավորապես, ղեկավար կադրերի նկատմամբ, ովքեր հետևություններ չեն անում տրված դիտողություններից, չեն արդարացնում ցուցաբերված վստահությունը, ձախողում են իրենց գլխավորած տեղամասերի գործերը, չեն տիրապետում և չեն էլ ձգտում տիրապետել կառավարման ժամանակակից մեթոդներին, մարդկանց հետ աշխատելու արվեստին, չարաշահում են պաշտոնական դիրքը, կոպտորեն խախտում կուսակցական և պետական կարգապահությունը, կուսակցական էթիկան։ Կադրերի նկատմամբ հարգալից, հոգատար վերաբերմունքը ոչ մի ընդհանուր բան չունի նրանց թերացումներին, ձախողումներին, սխալներին համակերպվելու հետ։ Սխալների, ձախողումների, վստահությունը չարդարացնելու, պաշտոնական դիրքը չարաշահելու համար վերջին երեք տարում շրջկոմի անվանացուցակի մեջ մտնող 33 մարդ ազատվել է զբաղեցրած պաշտոններից, 5-ը վտարվել ՍՄԿԿ շարքերից, 53-ը՝ ենթարկվել կուսակցական խիստ պատասխանատվության։

Ցավոք, այսօր էլ մեզանում դեռևս քիչ չեն անպատասխանատվություն ու անսկզբունքայնություն դրսևորող, ոչ ճիշտ վարքագիծ ունեցող և կոպիտ սխալներ կատարող կադրերը։ Այսպես, ուսումնասիրությունը ցույց տվեց, որ գյուղատնտեսության աշխատողների արհմիության շրջկոմում տեղ են գտել աղաղակող թերություններ, պաշտոնական դիրքի կոպիտ չարաշահման ու կեղծիքների բազմաթիվ փաստեր։ Շրջկոմի նախագահ Մ. Կուրղինյանը, կորցնելով պատասխանատվության ամեն մի զգացում, գյուղատնտեսության աշխատողների անվան տակ կեղծ բնութագրերով արտասահմանյան ուղևորության էր ուղարկել այդ բնագավառի հետ ոչ մի առնչություն չունեցող անարժան անձանց։ Նման կեղծիքների ճանապարհով արտասահմանյան ուղևորությունից և սանատորական բուժումից օգտվել էին նաև նրա ընտանիքի անդամները։ Ընդ որում Մ. Կուրղինյանն այդ մեքենայությունների մեջ էր ներքաշել նաև առանձին տնտեսությունների, սկզբնական կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների ղեկավարների, որոնք համաձայնել և վավերացրել էին նրա պատրաստած կեղծ բնութագրերը։ Կուսշրջկոմի բյուրոն քննարկեց ուսումնասիրության արդյունքները և կատարած կեղծիքների համար Մ. Կուրղինյանին վտարեց ՍՄԿԿ շարքերից։ Նա ազատված է զբաղեցրած պաշտոնից։ Շրջկոմի բյուրոն կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց նաև այդ մեքենայություններին մասնակցած մի շարք տնտեսությունների ղեկավարների, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների ու արհմիության տեղկոմների նախագահների։

Շրջկոմի բյուրոն ընդունեց շատ խիստ, բայց և արդարացի որոշում, որը, մեր կարծիքով, դաստիարակչական լուրջ ազդեցություն կունենա բոլոր նրանց համար, ովքեր տառապում են անպատժելիության երևակայությամբ, խախտում են կուսակցական կարգապահությունը, չարաշահում պաշտոնական դիրքը։

Վերլուծելով առանձին աշխատողների բարոյական անկման պատճառները, մտածում ես, թե կարելի՞ էր իմանալ՝ ե՞րբ և ի՞նչ տեղում մարդը խախտեց թույլատրելիի սահմանը։ Եվ միշտ համոզվում ես, որ անթույլատրելի գործողություններին դիմելու ցանկությունն ամենից առաջ երևան է գալիս այն ժամանակ և այնտեղ, երբ ղեկավարի «թուլությունների» նկատմամբ լիբերալ մոտեցումը խոր արմատներ է ձգում, երբ նա դուրս է մնում հսկողությունից, սկզբնական կուսկազմակերպության տեսադաշտից։ Մինչդեռ սիստեմատիկ հսկողությունն ու կատարման հստակ ստուգումը կադրերի հաջող գործունեության և ճիշտ դաստիարակության կարևոր նախապայմանն են։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ մարդկանց և կատարման փաստացի ստուգումը համարվում է ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը։ Ըստ էության, պահանջկոտությունը հենց լավ մշակված հսկողությունն է և կատարման խելամիտ ստուգումը։

Ինչ խոսք, կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները քիչ բան չեն անում հսկողության և կատարման ստուգման հետագա ուժեղացման համար։ Բավական է նշել, որ վերջին տարիներին շրջկոմի բյուրոյում քննարկված գրեթե ամեն մի հինգերորդ հարցը վերաբերում է նախկին որոշումների կատարման ստուգմանը։

Սակայն կուսակցական աշխատանքի այդ կարևորագույն բնագավառի հետագա կատարելագործման ասպարեզում շրջկոմը, նրա բյուրոն, սկզբնական կուսկազմակերպությունները, սովետական, տնտեսական, վերահսկողության մարմինների ղեկավարները դեռևս շատ անելիքներ ունեն։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ հսկողությունը լինի սիստեմատիկ և օպերատիվ, որպեսզի ամեն մի աշխատող համոզված լինի, որ առաջադրանքի կատարումը պետք է անպայման ստուգվի, ոչ մի հանձնարարություն չի մոռացվի և դրա համար պատասխան կպահանջվի։ Առանձին սկզբնական կուսկազմակերպություններ (Վարդաքարի, Նոր Կյանքի կոլտնտեսությունների, Սարալանջի, Պեմզաշենի, Լեռնակերտի սովխոզների, Փ. Մանթաշի միջտնտեսային ձեռնարկության, «Գյուղտեխպետկոմի» շրջանային միավորման և այլն) պետք է առավել հետևողականությամբ իրականացնեն ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության կանոնադրական իրավունքը։

Կադրերին բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելու աշխատանքում երբեք չպետք է մոռանալ, որ այդ հատկանիշը մարդու մոտ չի ձևավորվում միանգամից և առհավետ, որ որոշակի պայմաններում այն կարող է նաև թուլանալ կամ նույնիսկ անհետանալ։ Իսկ այդ հատկանիշի ամրապնդման հուսալի միջոց են սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Դրանց մշտական զարգացման նկատմամբ հոգատարությամբ է ներթափանցված կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների մեծ մասի գործունեությունը։ Քննադատությունը վերջին ժամանակներս դարձել է առավել առարկայական, կոնկրետ և հիմնականում նպատակամղված է գործերի վիճակի բարելավմանը, մարդկանց ճիշտ դաստիարակությանը։ Շրջկոմի գործունեության մեջ լայնորեն կիրառվում է ժողովներում, պլենումներում արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների ամփոփման, քննարկման և դրանց կատարման ընթացքի մասին առանձին ղեկավարների հաշվետվությունների քննարկման պրակտիկան։

Այսպես, 1982 թ. դեկտեմբերին շրջկոմի պլենումը գործարար մթնոլորտում քննարկեց շրջսովետի գործկոմի գյուղվարչության հաշվետվությունը կուսշրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում, սկզբնական կուսկազմա-



կերպությունների և կոլտնտեսությունների հաշվետու-ընտրական ժողովներում վարչության հասցեին արված քննադատական դիտողություններին ու առաջարկություններին ընթացք տալու, դրանց կենսագործման նպատակով կատարած աշխատանքի մասին։ Այդ քննարկումից հետո քննադատական շատ դիտողություններ ու առաջարկություններ իրագործվեցին, կարգավորվեց դրանց ընթացք տալու գործը։

Ելնելով կադրերի ճիշտ դաստիարակության շահերից, շրջկոմը ձգտում է այսուհետ ևս ըստ ամենայնի զարգացնել առողջ, սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Ընդ որում, մենք ելնում ենք այն իրողությունից, որ ղեկավար աշխատողն ամենից առաջ ինքը պետք է օրինակ ծառայի ենթականերին։ Չէ՞ որ աշխատավորների շրջանում ղեկավարի բարձր հեղինակությունն ամենից առաջ պայմանավորված է այն բանով, թե նա որքանով է անձնական լավ օրինակ ծառայում, քննադատորեն գնահատում իր աշխատանքի արդյունքները, հանդես բերում նախաձեռնություն, իր և ուրիշների նկատմամբ՝ բարձր պահանջկոտություն, մարդկանց հոգսերի և կարիքների նկատմամբ՝ հոգատար, զգայուն վերաբերմունք։ Իսկ ղեկավարի այդպիսի հատկանիշները սոցիալ-տնտեսական և դաստիարակչական խնդիրների լուծման կարևորագույն գործոն են, միշտ էլ ոգևորում են ենթականերին, նրանց մոտ վստահություն ծնում գործի ընդհանուր հաջողության հանդեպ, հնարավորություն տալիս կոլեկտիվում ստեղծելու համերաշխ աշխատանքի մթնոլորտ։ Այդ ամենն էլ հենց կազմում է բարձր քաղաքական հասունության, գործի խոր իմացության բազայի վրա հիմնված կուսակցական լենինյան ոճը։ Սակայն այդ ոճը բոլոր կադրերի մոտ արմատավորելու համար անհրաժեշտ է, որպեսզի այն ամենից առաջ ներդրվի կուսշրջկոմի, նրա բյուրոյի, ապարատի աշխատանքում։

Կուսշրջկոմը, ղեկավարվելով լենինյան այն հայտնի պատգամով, որ եթե մենք կարգապահություն ենք ուզում սովորեցնել բանվորներին, գյուղացիներին, ապա առաջինը մենք պետք է սկսենք մեզանից, լուրջ, հետևողական աշխատանք է տանում շրջկոմի ապարատի գործունեության հետագա բարելավման, նրա ամեն մի անդամի պատասխանատվության բարձրացման նպատակով։ Վերջին տարիներին նկատելիորեն կատարելագործվել են շրջկոմի, նրա բյուրոյի աշխատանքի ոճն ու մեթոդները, բարձրացել է աշխատանքի արդյունավետությունը։ Կրճատվել է անցկացվող միջոցառումների, բյուրոյում քննարկվող հարցերի քանակը։ Այդ ամենը հնարավորություն ընձեռեց շրջկոմի ապարատի աշխատողներին՝ ավելի շատ լինելու տեղերում, ուժեղացնելու կապը մասսաների հետ, առավել խորությամբ զբաղվելու ընդունված որոշումների կատարման կազմակերպման և ստուգման հարցերով։

Շրջկոմի բյուրոյի գործունեության մեջ ամուր կերպով հաստատվել է մտքերի ազատ ու անկաշկանդ փոխանակման, փոխադարձ հարգանքի ու սկզբունքային պահանջկոտության մթնոլորտ։ Բյուրոն առանց երկմտելու շրջանի աշխատավորությանը, կոմունիստներին տեղյակ է պահում մեր բոլոր կարևորագույն գործերի, ծագած դժվարությունների և եղած թերությունների մասին։ Պարբերաբար շրջկոմի պլենումներում հաղորդում է տրվում շրջկոմի բյուրոյի գործունեության վերաբերյալ։

Կադրերի ընտրության, տեղաբաշխման, դաստիարակության գործի բարելավումը և, մասնավորապես, նրանց նկատմամբ հարգալից, ուշադիր վերաբերմունքի և օբյեկտիվ խստապահանջության ճիշտ զուգակցումը բարերար ազդեցություն են թողել շրջանային կուսկազմակերպության առջև ծառացած տնտեսական և սոցիալ-քաղաքական խնդիրների հաջող լուծման, աշխատավորական կոլեկտիվներում իսկական ստեղծագործական իրադրության ստեղծման, բարոյահոգեբանական մթնոլորտի առողջացման և, ի վերջո, կադրերի բուն գործունեության վրա։ Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները տասնմեկերորդ հնգամյակի անցած ժամանակաշրջանում ար-

տապլանային կարգով երկրին տվել են ավելի քան 4,5 միլիոն ռուբլու արտադրանք։ Գյուղատնտեսության աշխատողները ոչ միայն կատարել ու գերակատարել են գյուղատնտեսական գրեթե բոլոր մթերքների արտադրության և վաճառքի անցած երկու տարիների պլանները, այլև նկատելի աճ են ապահովել տասներորդ հնգամյակի համեմատությամբ։ Ընդ որում աճը ապահովվել է հիմնականում ինտենսիվ գործոնների՝ դաշտերի բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման ճանապարհով։ Հաջողություններն առկա են նաև այս տարի։

Էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացումը, կադրային աշխատանքի բարելավումը, նրանց ներկայացվող պահանջկոտությունը նպաստել են այն բանին, որ զգալիորեն կրճատվել է պլանները չկատարող ձեռնարկությունների, կազմակերպությունների, տնտեսությունների թիվը։

Սակայն, քննադատաբար գնահատելով կատարված աշխատանքը, մենք պարզորոշ տեսնում ենք և էական թերությունները։ Լենինականի տեքստիլ կոմբինատի Արթիկի մասնաճյուղը, Արևշատի, Վարդաքարի, Հովտաշենի, Լեռնակերտի, Պեմզաշենի, Սարալանջի տնտեսությունները չեն կատարում պլանային առաջադրանքները։ Մի շարք ձեռնարկություններում մեծ է ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը, ցածր է տեխնիկական զինվածության աստիճանը, դանդաղ է բարելավվում թողարկվող արտադրանքի որակը, վատ են օգտագործվում արտադրական հզորությունները, նյութական ու աշխատանքային ռեսուրսները։ Բարդություններ կան բնակավայրերի և կոլեկտիվների սոցիալական զարգացման ծրագրերի կատարման գործում։ Հիշյալ տնտեսություններում խելացիորեն չեն օգտագործվում դաշտերի բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման ռեզերվներն ու հնարավորությունները, մեծ է ցուցանիշների խայտաբղետությունը գրեթե միևնույն պայմաններում գտնվող տնտեսությունների միջև։ Այսպես, եթե Լուսակերտի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ս. Մեսրոպյան) շաքարի ճակնդեղի ցանքատարածության ամեն մի հեկտարից ստանում է 400 ցենտներ բերք, ապա նրա հետ կողք-կողքի, կլիմայական միևնույն պայմաններում գտնվող Հովտաշենի կոլտնտեսությունը (նախագահ՝ Ս. Հովհաննիսյան)՝ ընդամենը 200 ցենտներ։ Կամ՝ Պեմզաշենի սովխոզում (դիրեկտոր՝ Ռ. Խաչատրյան) կովերի միջին կաթնատվությունը չի անցնում 1.500 կգ-ից, մինչդեռ հարևան Տուֆակերտի սովխոզում (դիրեկտոր՝ Ն. Մխիթարյան) այն կազմում է 2.200 կգ։

Ցածր արդյունքները բացատրել, այսպես կոչված, «օբյեկտիվ» պատճառներով, նյութատեխնիկական անբավարար մատակարարումով, բնության քմահաճույքներով, ինչպես արվում է առանձին տնտեսական ղեկավարների կողմից, ինչ խոսք, ճիշտ չէր լինի։ Այստեղ կա և այլ, մեր հաստատ համոզմամբ՝ սուբյեկտիվ պատճառ. կադրերի սխալ ընտրությունը, նրանց անբավարար աշխատանքը։

ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. ապրիլյան պլենումում արտասանած իր ճառում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Ցավոք, մեզանում դեռ քիչ չեն այն ղեկավարները, որոնք չեն բարձրանում սեփական բազմապիսի ֆունկցիաների ու պարտականությունների լայնահայաց ըմբռնման մակարդակին և անբավարար ու պասսիվ են իրականացնում կուսակցական հանձնարարությունները։ Իսկ դա տեղի է ունենում, որովհետև երբեմն արտադրության ու կառավարման որոշ տեղամասեր ղեկավարելու համար առաջ են քաշվում քաղաքականապես անպատրաստ, անիրազեկ մարդիկ, որոնք չունեն ադմինիստրատորի ու կազմակերպչի, աշխատավորական կոլեկտիվի ղեկավարի անհրաժեշտ հատկանիշներ։ Միշտ չէ, որ նախանձախնդիր մոտեցում է ցուցաբերվում կադրերի ընտրության հանդեպ, երբեմն հապճեպություն և անպահանջկոտություն է դրսևորվում այդ գործում» (Լենինյան ուղիով, № 5, էջ 33)։



Ցավոք, նման սխալներից զերծ չէ և մեր շրջանային կուսկազմակերպությունը։ 1982 թ. փետրվարին կուսշրջկոմի երաշխավորությամբ Վարդաքարի կոլտնտեսության նախագահ ընտրվեց գյուղվարչության մասնագետ Վ. Խաչատրյանը։ Սակայն կարճ ժամանակ անց պարզվեց, որ մենք սխալվել ենք նրան երաշխավորելու հարցում, հանդես բերել ավելորդ շտապողականություն։ Նա չկարողացավ արդարացնել իր նկատմամբ ցուցաբերված վստահությունը, ընդունակ չեղավ տնտեսության մասնագետների, աշխատավորության ուժերը համախմբելու և նպատակամղելու առաջադրված խնդիրների լուծմանը։ Այդ ամենի հետևանքով ավելի վատացավ կոլտնտեսության ֆինանսատնտեսական վիճակը, կոլեկտիվում թուլացավ աշխատանքային կարգապահությունը, ստեղծվեց անառողջ բարոյահոգեբանական մթնոլորտ։ Մեկ տարի անց Վ. Խաչատրյանն ազատվեց զբաղեցրած պաշտոնից։

Ցավոք, նման օրինակները դեռևս եզակի չեն։ Ինչ խոսք, շրջկոմը լավ է տեսնում կադրերի ընտրության, տեղաբաշխման գործում եղած թերությունները և իր պրակտիկ աշխատանքում ձգտում է շտկել դրանք, կանխել հետագա նման վրիպումները։ Հենց կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործի հետագա բարելավման անհրաժեշտությունը հուշեց շրջկոմի բյուրոյին՝ անցյալ տարվա հունվարին այդ հարցը մտցնելու շրջկոմի հերթական պլենումի քննարկմանը։ Պլենումը սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության դիրքերից վերլուծեց կադրային քաղաքականության վիճակը, ընդհանրացրեց կատարված դրական աշխատանքը, միաժամանակ վեր հանեց եղած թերությունները, բացթողումները, նշեց դրանց կարգավորման ուղիները։

Կատարելագործելով էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման ոճն ու մեթոդները, բարձրացնելով հանձնարարված գործի համար կադրերի անձնական պատասխանատվությունը, ճիշտ զուգակցելով նրանց նկատմամբ վստահությունն ու պահանջկոտությունը՝ կուսշրջկոմն ու սկզբնական կազմակերպությունները ձգտում են հաջողությամբ լուծել շրջանի առջև ծառացած տնտեսական ու սոցիալ-կուլտուրական խնդիրները, արժանի ավանդ ներդնել հանրապետության ընդհանուր առաջընթացի գործում։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆ

ԱՎԵԼԻ ՔԱՆ ՆՐԵՔ ՏԱՍՆԱՄՅԱԿԻ պատմություն ունի «Քաջարանշին» համաշինարարական տրեստը։ Նրա կոլեկտիվի ջանքերով և ձեռքերով են կառուցվել ու կերտվել Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի մասնաշենքերը, մշակութային, առողջապահական, կենցաղային սպասարկման մի շարք համալիրներ, հարյուրավոր բնակելի շենքեր, ճանապարհներ, կամուրջներ։ Այդ տարիներին տրեստը յոթ անգամ նվաճել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, քանիցս անգամ՝ միութենական տարբեր մրցանակներ ու դրոշներ, երկու անգամ արժանացել է ՍՍՀՄ ԺՏՆՑ պատվոգրին, մեկ անգամ՝ հոբելյանական պատվոնշանի։ Այս պարգևների և ընդհանրապես կոլեկտիվի աշխատանքային բարձր բնագծերի նվաճման գործում իրենց ծանրակշիռ ավանդն են ներդրել կոմունիստները, որոնց թիվը հասնում է շուրջ 270-ի։

Ինչպես ամեն մի կուսկազմակերպության, այնպես էլ «Քաջարանշին» տրեստի արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների առջև ծառացած կենսական ու հրատապ խնդիրներն ամենից առաջ քննարկվում ու վերլուծվում են տվյալ կուսակցական ժողովում։ Իհարկե, կազմակերպության մարտունակությունը չի որոշվում սոսկ ժողովների հաճախականությամբ և քննարկված հարցերի քանակով։ Կուսակցական ժողովին կամ առհասարակ կազմակերպության գործունեությանը ճշգրիտ գնահատական տալու համար բավական չեն միայն զեկուցումները և նույնիսկ լավ զեկուցումները, գործարար ելույթները, գործնական որոշումները։ Կուսկազմակերպության մարտունակությունն ամենից առաջ պայմանավորված է ընդունված որոշումների անթերի իրականացմամբ, այդ գործում՝ կոմունիստների ցուցաբերած ակտիվությամբ։ «Ժողովներն ու կոնֆերանսները,— ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի՝ կուսակցական կազմակերպություններում հաշվետվությունների ու ընտրությունների անցկացման վերաբերյալ որոշման մեջ,— պետք է ցույց տան պրակտիկայի և առաջացող պրոբլեմների կոլեկտիվ իմաստավորման օրինակ, կոմունիստների սկզբունքային փոխադարձ խստապահանջության, թերությունների ու բացթողումների համար խիստ հաշիվ պահանջելու օրինակ»։

«Քաջարանշին» տրեստի արտադրամասային շատ կուսկազմակերպություններում կուսակցական ժողովներն ընթացան բարձր կազմակերպվածությամբ, հարցերի գործարար, սկզբունքային քննարկման, կարծիքների ազատ փոխանակման մթնոլորտում։ Առաջներում արտադրամասային սկզբնական որոշ կազմակերպություններում (օրինակ №№ 65 և 66 շինվարչություններում) հանդիպում էին այսպիսի երևույթի. կոմունիստը մոտենում էր հայտարարությունների տախտակին ու կարդում հերթական ժողովի օրակարգը՝ «Եռամսյակի պլանների կատարման ընթացքը և մեր խնդիրները»... Կարդում էր ու դժգոհում՝ «Դարձյալ նույն հարցը»։

Արդյոք կարևոր հարց չէ՞։ Ձեռնպահ մնանք կտրական պատասխանից։ Վատն այն էր, որ այդ տեղամասերում նման հարցերը դարձել էին սովորական, ինչպես ասում են՝ հերթապահ։



Իսկ ո՞վ էր ամեն անգամ նման օրակարգ հրամցնում ժողովականներին։ Չէ՛ որ դա միայն քարտուղարի լուծելու հարց չէ։ Քարտուղարը պետք է խորհրդակցի բյուրոյի անդամների, բոլոր կոմունիստների հետ, նոր միայն որոշի օրակարգը։ Այլ կերպ ասած՝ օրակարգի հարցերի ընտրությունը, որն ինքնըստինքյան ստեղծագործական աշխատանք է, այստեղ կրում էր ձևական, շաբլոն բնույթ։ Եվ ժողովում կոմունիստի ակտիվությունն էլ, որը ձևակերպվում է շատ գործոններից, սկսվում է օրակարգի հարցերի ընտրությունից։ Պատկերավոր ասած՝ օրակարգը ժողովի ստեղծագործական զսպանակն է և պետք է օրգանապես շաղկապված լինի կոնկրետ իրադրության, կազմակերպության առջև ծառացած հրատապ խնդիրների հետ։ Այժմ տրեստի արտադրամասային սկզբնական շատ կազմակերպություններում քարտուղարները հաճախ են կոմունիստներին դիմում հետևյալ հարցով. «Ինչպիսի՞ հարցեր կուզեիք մտցնել օրակարգի մեջ և քննարկել»։ Եվ ստանում են բազմաթիվ հետաքրքրական առաջարկություններ։ Օրինակ, մի անգամ երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի սկզբնական կուսկազմակերպությունն այսպիսի երկտող ստացավ. «Ինչո՞ւ բարոյական դաստիարակության հարցերը մեզ մոտ երբեք քննարկման առարկա չեն դառնում։ Մի՞թե դրանք արդիական չեն»։ Իսկ կոմունիստներից մեկը գրել էր. «Մեզանում մարդիկ կան, որոնք ապրում են ոչ ազնիվ միջոցներով։ Դա պարզ երևում է նույնիսկ հեռվից։ Ինչո՞ւ կազմակերպությունը նրանց չի հարցնում. «Ի՞նչ միջոցներով եք ապրում...»։ Այս հարցերի քննարկումը, անշուշտ, դաստիարակչական նշանակություն ունեցավ։

Ավելի հետաքրքրական է ավտոբազայի հետ առնչվող պատմությունը։ Կուսկազմակերպությունը մի խումբ կոմունիստներից այսպիսի նամակ ստացավ. «Մեր կազմակերպությունում ընդունված է միայն պլանների կատարման հետ կապված հարցեր քննարկել։ Իսկ կուլտուր-կենցաղային, մարդկանց ապրելակերպի, աշխատանքային պայմանների հետ կապված հարցերը աչքաթող են արված։ Ժամանակը չէ՞ այս մասին մտածել...»։ Շուտով ստեղծվեց հատուկ հանձնաժողով, որն այդ հարցը նախապատրաստեց և ներկայացրեց կուսակցական ժողովի քննարկմանը։ Կոնկրետ առաջարկներով ելույթներ ունեցան գրեթե բոլոր կոմունիստները։ Ժողովից հետո բոլոր լծակները գործի դրվեցին, և արդյունքը գերազանցեց ամեն մի սպասելիք։ Ավտոբազայում, ուր աշխատում են հարյուրավոր բանվորներ, կառուցվեցին կուլտուր-կենցաղային մի շարք օբյեկտներ՝ ճաշարան, բաղնիք, հանդերձարան, բարեկարգվեցին հրապարակն ու բազայի շրջապատը։ Այդ բարեփոխումները մեծապես նպաստեցին բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների տրամադրության լավացմանը, որն ինքնըստինքյան խթանեց աշխատանքի կուլտուրայի և առհասարակ արտադրողականության բարձրացմանը։

Կուսակցական ժողովների հրավիրումն ու անցկացումը կոմունիստների դաստիարակության լավ դպրոց են դարձել նաև №№ 65 և 66 շինվարչությունների կուսկազմակերպություններում։ Այստեղ կոմունիստներին դաստիարակում են կազմակերպության, նրա հոգսերի նկատմամբ սրտացավության ոգով։ Կազմակերպությունների քարտուղարներն իրենց հերթին ժողովների միջոցով կուսակցական հոգատարություն են դրսևորում յուրաքանչյուր կոմունիստի ակտիվության բարձրացման նկատմամբ։ Այդ և տրեստի մի քանի ուրիշ արտադրամասային սկզբնական կուսկազմակերպություններում ժողովների մակարդակի չափանիշ է համարվում այն, թե տվյալ ժողովը որքանով է գործնական խոսակցությունների տեղիք տվել, կոմունիստների հիշողության մեջ հետք թողել է՞, արդյոք, թե՞ ոչ։ Եթե այո՛, ուրեմն իր դերը կատարել է, իսկ եթե այն անցնում է պասսիվ պայմաններում ու մնում աննկատ, քարտուղարներն ու բյուրոների անդամները անհանգստության կոչնակ են հնչեցնում. «Ինչո՞ւ կոմունիստները ելույթներ չունեցան», «Արդյոք վա՞տ էր զեկուցումը», «Քննադատության համար բարեբեր մթնոլորտ չկա՞ր», «Գուցե պատճառն այն է, որ նախորդ ժողովներում կոմունիստների ելույթները ղեկավարության ուշադրությանը չե՞ն արժանացել» և այլն, և այլն։ Այս հարցերի պատասխանները բոլոր տեղամասերում միանման չեն։ Անցյալներում, օրինակ, նորոգման արտադրամասի և № 3 ՀԷԿ-ի բնակելի շենքերի շինարարության սկզբնական կուս-

կազմակերպություններում ժողովներ էին հրավիրվում առանց օրակարգի մասին կոմունիստներին նախապես տեղյակ պահելու։ Զեկուցողներն էլ երբեմն ուղարկվում էին կուսկոմիտեից։ Հիմնականում ելույթ էին ունենում նրանք, ում քարտուղարները նախօրոք «պատրաստում էին»։ Պարզ է, որ նման ժողովները կոմունիստներին չեն մղի ակտիվության։ Եվ, ասես, հենց այսպիսի կազմակերպությունների մասին էին ՍՄԿԿ Կենտկոմի վերոհիշյալ որոշման հետևյալ տողերը. «Չեն կարող հանդուրժվել այնպիսի փաստեր, երբ ժողովներն անցնում են ըստ նախապատրաստված սցենարի, առանց շահագրգիռ, անկեղծ քննարկման, երբ մասնակիցների ելույթները վաղօրոք խմբագրվում են, իսկ նախաձեռնությունն ու քննադատությունը՝ խլացվում»։

Մի անգամ կուսկոմիտեն այսպիսի երկտող ստացավ. «Կուսակցության կանոնադրությամբ ժողովի նախագահը պետք է ընտրվի, իսկ մեզ մոտ «նշանակվում է»։

Մանրուք չէ, անշուշտ, դրանով խախտվում է կուսակցական դեմոկրատիան, կոմունիստները զրկվում են իրենց իրավունքի իրագործումից։ Ահազանգը միանգամայն իրավացի էր և պատշաճ ուշադրության արժանացավ։ Կուսկոմիտեն պարզեց, որ արտադրամասային որոշ կազմակերպություններում գումարվում են, այսպես կոչված, պատրաստի «նոտաներով» ժողովներ, նախապես որոշվում է, թե ով պետք է ելույթ ունենա, ով ընտրվի նախագահությունում։ Զեկուցողն էլ, չնայած ճիշտ էր խոսում, բայց ոչ ոքի չէր կպչում։ Իսկ վերջում նախագահողը դիմում էր ժողովականներին՝ «Հարցերը ներկայացնել գրավոր»։ Ոչ ոք գրավոր հարց չէր ներկայացնում, որովհետև եկել էին շինտեղամասերից և գրպաններում մատիտ ու թուղթ էլ չունեին։ Ինչ վերաբերում է «հաստիքավոր» ելույթ ունեցողներին, նրանք էլ խոսում էին ոգևորված, բայց խուսափում էին կոնկրետությունից։ Նման ժողովներում ընդունված որոշումներն էլ ընդհանուր բնույթ էին կրում՝ «մոբիլիզացնել», «ուժեղացնել», «լայնորեն ծավալել»... Պարզ է, որ նման ժողովները միայն ժամանակ են խլում։

Վերջին ամիսներին տրեստի արտադրամասային շատ կուսկազմակերպություններ արմատապես վերակառուցել են իրենց աշխատանքը։ Վիճակը հիմնովին փոխվել է նաև Նորոգման արտադրամասում և № 3 ՀէԿ-ի բնակելի շենքերի շինարարությունում։ Հիմա այստեղ կուսակցական ժողովներից 5—6 օր առաջ բոլորը տեղյակ են պահվում օրակարգի մասին, կոմունիստները համարձակորեն հանդես են գալիս առաջարկություններով, հայտնում իրենց կարծիքը։

Կուսկազմակերպության ղեկավարությամբ «Քաջարանշին» տրեստում տարիների ու տասնամյակների ընթացքում աճել են շինարարի մասնագիտությունը խորապես իմացող, աշխատանքի նկատմամբ կոմունիստական, կյանքի նկատմամբ ակտիվ վերաբերմունք ցուցաբերող կադրեր։ Դրանց շարքում առաջին հերթին պետք է նշել հանրապետությունում ճանաչված բրիգադավարներ Գառնիկ Գևորգյանին, Սպարտակ Դանիելյանին, Սուրեն Մանուչարյանին, Վարշամ Ազարյանին և Սողոմոն Առաքելյանին։ Տրեստի լավ գործերի այդ պիոներները Հայաստանում առաջինն ստեղծեցին կոմպլեքսային բազմապրոֆեսիա կապալային բրիգադներ, որոնք շինարարական օբյեկտը տնօրինում են կառուցման սկզբից մինչև վերջ, ինչպես իրենք են ասում՝ հիմքը փորելուց մինչև բանալին տիրոջը հանձնելը իրենց գործն են համարում։ Այժմ տրեստում այս առաջավոր մեթոդով աշխատում են 28 բրիգադներ. ու թեև դրանց կազմում ընդգրկված է ձեռնարկության բանվորական կազմի 50 տոկոսը, նրանք կատարում են ամբողջ շինմոնտաժային աշխատանքների 63 տոկոսը։ Բրիգադների ստեղծման շնորհիվ վերջին երկու տարում շինմոնտաժային աշխատանքների ծավալի աճը կազմել է 35 տոկոս, կատարելագործվել են արտադրական շատ պրոցեսներ, ուժեղացվել է հսկողությունը ծախսվող նյութերի նկատմամբ, բարձրացել է աշխատանքային ու արտադրական կարգապահությունը։ Ձեռնարկության հոգսերով ապրող, նրա ճակատագրի համար ցավող կոմունիստների թիվը մեծ է «Քաջարանշին» տրեստի կուսկազմակերպությունում։ Նրանցից շատերը գիտակցում են, որ առաջին հերթին իրենք



են պատասխանատու կազմակերպության մարտունակության, ձեռնարկությունը առաջավորների շարքերում պահելու համար։ Ծանոթանում ենք նրանցից մեկի՝ կոմունիստ բրիգադավար Սողոմոն Առաքելյանի, կուսժողովներից մեկում ունեցած ելույթի հետ։ «...Տարեցտարի մեծ թվով շինարարներ ու մոնտաժողներ բարձրացնում են իրենց տեխնիկական վարպետությունը, դառնում որակյալ մասնագետներ, տիրապետում ժամանակակից տեխնիկական միջոցներին։ Մեր շինարարական շատ տեղամասերում լայն տարածում է ստացել երկաթբետոնե կոնստրուկցիաների ինդուստրիալ մոնտաժումը։ Եվ, ընդհանրապես, անընդհատ բարձրանում է շինարարության տեխնիկական զինվածության մակարդակը, արմատական բարեփոխություններ են կատարվում շինմոնտաժային տեխնոլոգիայում։ Շատ օբյեկտներ կառուցվում են կապալային բրիգադների ուժերով, բայց, ահա, ծրագիրը չի կատարվում, կառույցներից շատերը ժամանակին չեն գործարկվում։ Որո՞նք են դրանց պատճառները։ Իհարկե, այդ ամենի վրա ազդում են շինանյութերի ոչ ռիթմիկ մատակարարումները, աշխատանքի կազմակերպման բնագավառում եղած թերությունները, օբյեկտիվ և սուբյեկտիվ շատ գործոններ։ Սակայն մեղքի մեծ բաժին ունեն նաև պատվիրատու կազմակերպությունները։ Պատվիրատու կազմակերպության պարտականությունները բազմազան են ու բազմաթիվ. այն նախագծային կազմակերպություններին պատվիրում է տեխնիկական փաստաթղթեր, պլանային կազմակերպություններից պահանջում է զինել օբյեկտը, պայմանագրեր է կնքում սարքավորումների ստացման վերաբերյալ և, վերջապես, ֆինանսավորում է օբյեկտը։ Այլ կերպ ասած՝ շինարարության բոլոր հանգուցային հարցերի լուծումը պատվիրատու կազմակերպության ձեռքում է։ Ընդ որում, այն պետք է անպայման ելնի ֆինանսական, աշխատանքային, նյութատեխնիկական ռեալ հնարավորություններից։ Հենց այդ տարրական պայմանն է, որ հաճախ խախտում են մեր մի շարք պատվիրատու կազմակերպություններ։ Մեր բոլոր խոշոր օբյեկտները կառուցվում են երկու, երեք, երբեմն էլ՝ չորս տարում։ Շահագործման հանձնելու տարվա նախօրյակին օբյեկտի կառուցողական աշխատանքների 70—75 տոկոսը պետք է ավարտված լինի։ Հետևապես, ֆինանսական, նյութատեխնիկական մատակարարման պլանները պետք է լիովին համապատասխանեցվեն տեխնոլոգիական այդ գրաֆիկին։ Մեզ մոտ երբեմն կառուցման տարիներին իրականացվում է աշխատանքների 40—50 տոկոսը։ Իսկ երբեմն՝ է՛լ ավելի քիչ, և շահագործման տարում պահանջում են ավարտել մնացածը։ Այստեղից էլ առաջանում են թերություննե՜ր, թերություննե՜ր, թերություննե՜ր...»։

Ահա թե ինչ մաշտաբով և ինչպիսի մաշտաբայնությամբ է հարցը բարձրացնում կոմունիստ բրիգադավարը։ Արտադրության համար նման կենսական հարցեր տրեստի կոմունիստները հաճախ են բարձրացնում կուսակցական ժողովներում և ոչ միայն ժողովներում։ Այդպիսի կոմունիստներից են Արտյոմ Ավագյանը (ավտոբազա), Վանյա Գրիգորյանը (երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարան), Միշա և Ռուբեն Կարապետյանները, Լիպարիտ Մովսիսյանը, Վարշամ Ղազարյանը (№№ 65 և 66 շինվարչություններ) և այլն։

Սխալ կլիներ ասել, թե տրեստի սկզբնական կուսկազմակերպություններում պատկերն իդեալական է, կոմունիստներն ամենուր հանդես են բերում պատշաճ ակտիվություն, և հարցերը լուծվում են հեշտ ու հանգիստ։ Անցյալ տարի տրեստի կուսկոմիտեն սոցիոլոգիական հետազոտություններ կատարեց կոմունիստների ակտիվության աճին խանգարող պատճառները բացահայտելու և դրանց դեմ գործուն միջոցներ ձեռնարկելու համար։ Մշակվեց և կոմունիստներին տրվեց հատուկ հարցաթերթիկ։ Այն պարունակում էր մի շարք հետաքրքրական հարցեր, որոնց թվում՝ «Տարվա ընթացքում քանի՞ անգամ և ի՞նչ հարցերի շուրջն ես ելույթ ունեցել կոլեկտիվի և կուսակցական ժողովներում», «Եթե ելույթ չես ունեցել, նշիր պատճառները», «Որո՞նք են քեզ հուզող հարցերը, որոնց շուրջը դու կցանկանայիր մտքեր փոխանակել քո աշխատանքային ընկերների, ղեկավարների, կուսկազմակերպության անդամների հետ», «Ինչպե՞ս ես վերաբերվում կուսակցական և, առհասարակ, կոլեկտիվի կյան-

քի նկատմամբ պասսիվ դիրք բռնած կոմունիստների նկատմամբ», «Ովքե՞ր և ի՞նչ ձևով են օգնել քեզ ակտիվությունդ բարձրացնելու գործում» և այլն։ Սոցիոլոգիական այդ հետազոտությունները բացահայտեցին ներքին օղակներում կոմունիստների պասսիվության շատ փաստեր և դրանց պատճառները։ Որոշ կոմունիստների պասսիվության պատճառն այն է, որ տարիներով հանձնարարություններ չեն ստանում, իսկ դրա փոխարեն առանձին մարդիկ, կարելի է ասել, հանձնարարություններով «գերբեռնվում են». նույն մարդն ընտրվում է զանազան հանձնաժողովների անդամ, ժողովրդական վերահսկիչ, պրոպագանդիստ և այլն։

Պասսիվություն ծնող պատճառներից մեկն էլ հետևյալն է. կոմունիստը հաճախ հանձնարարություն է ստանում ու չի կատարում։ Ոչ ոք չի ստուգում ու նրանից ոչինչ չի պահանջվում։ Մինչդեռ հայտնի է, որ պատասխանատվության զգացումը յուրաքանչյուրի մոտ դաստիարակվում է նրան տրված պարտականությունների կատարման նկատմամբ վերահսկողություն սահմանելով։ Դրանում նոր բան հայտնաբերել պետք չէ։

Պատահում են նաև այսպիսի դեպքեր. մեկը ո՛չ արտադրության մեջ, ո՛չ էլ հասարակական կյանքում ակտիվություն հանդես չի բերում, բայց ժողովներում քննադատում է, երբեմն էլ՝ «գրում»։ Կոմունիստների իսկական ակտիվությունը դրսևորվում է աշխատանքում, արտադրական, ներկուսակցական, գաղափարական հարցերի լուծման ժամանակ, այդ հարցերի նկատմամբ նրանց ունեցած վերաբերմունքով։ Ահա այսպիսի օրինակ, արտադրամասը պլանը չի կատարում, ո՞վ է ամենից շատ դրա համար ցավում, հուզվում, մտատանջվում։ Հասկանալի է՝ արտադրամասի պետը, գլխավոր ինժեները, կուսկազմակերպության քարտուղարը... Կոլեկտիվի անդամների մի մասը, այդ թվում նաև որոշ կոմունիստներ արտադրական պլանների թերակատարմանն արձագանքում են իրենց պաշտոնական պարտականությունների սահմաններում. որքան այդ պարտականությունները քիչ են, այնքան կոմունիստի ռեակցիան թույլ է. պատկերավոր ասած՝ պատասխանատվության զգացումը վերևից ներքև մարող միտում ունի, իսկ վերջում դրանից երբեմն ոչինչ չի մնում։

Իհարկե, դրանք ավելի շուտ շեղումներ են ընդհանուր օրենքից։ «Քաջարանշին» տրեստի կոմունիստներին բնորոշ են ակտիվ կենսադիրքորոշումը, գործի հանդեպ սրտացավությունը, կոլեկտիվի պատիվը բարձր պահելու ձգտումը։

Խոսքի ու գործի ներդաշնակության, իսկական ակտիվության օրինակ է տալիս ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության անդամ, Հոկտեմբերյան հեղափոխության և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների ասպետ, բրիգադավար Գառնիկ Գևորգյանը։ Նա միշտ այն տեղամասում է, որն ամենադժվարն է տվյալ ժամանակահատվածում։ Երկու տարի առաջ Գեղիի ջրամբարի շինարարությունը ետ էր մնում, Գևորգյանը ցանկություն հայտնեց ստանձնել այն. շատ ջանքեր ու եռանդ ներդրվեց բրիգադի անդամների հետ միասին, մինչև այդ կառույցը մտավ գրաֆիկի մեջ։

Երբ հրապարակվեց պարենային ծրագիրը, անվանի բրիգադավարը դարձյալ կամովին ստանձնեց Լեռնաձորի և Գեղիի պետական տնտեսությունների համար արագ կարգով գոմեր կառուցելու պատվերը։ Եվ այսպես՝ տասնյակ տարիներ։ Վերջին հինգ տարիներին նրա բրիգադը նախատեսված մեկ միլիոն 711 հազարի փոխարեն կատարել է երկու միլիոն 76 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք։ Նշենք նաև, որ այդ աշխատանքը բրիգադը կատարել է 18 բանվորով, նախատեսված 25-ի փոխարեն։

«Քաջարանշին» տրեստի գրեթե բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում հաճախ է խոսվում այն մասին, որ կոմունիստը ամեն ինչի համար պատասխանատու է, որ նա չի կարող ապրել «դա իմ գործը չէ» սկզբունքով։ Հաճախ էլ այդ կապակցությամբ ընդունվում են ոչ քիչ թվով լավ որոշումներ, բայց իրական կյանքում անտարբերությանը վերջ չի տրվում։ Ինչի՞ց է դա. այս հարցի շուրջ պետք է լրջորեն խորհել։ Մի ժողովում կոմունիստ բրիգադավար Գառնիկ Գևորգյանն իր ելույթում այսպես է ասել. «Եթե ես կարողանայի, մարդկանց փոխհարաբերություններից առաջին հերթին արմատախիլ կանեի անտարբերությունը և անտեղի ներողամտությունը։ Դրանք ցեցի պես կրծում են ամեն ինչ...»։



Կոմունիստների և բոլոր աշխատողների ակտիվության բարձրացման կարևոր գործոն է աշխատանքի պրակտիկայից ձևամոլության, ձևականության, շաբլոնի արմատախիլ անելը։ Տրեստի սկզբնական կուսկազմակերպություններում առաջներում շատ էր խոսվում, օրինակ, սոցիալիստական մրցության կազմակերպման գործում ձևական մոտեցման մասին, բայց ձևամոլությունը դարձյալ պահպանվում էր։ Վերցնենք, թեկուզ, սոցիալիստական պարտավորությունները։ Հայտնի է, որ յուրաքանչյուր բանվոր, ելնելով ընդհանուր պլանից և դրա կատարման գործում իր ներդրումից, ինքն է որոշում իր լրացուցիչ բնագիծը, այսինքն՝ ստանձնում պլանը գերազանցող պարտավորություն։ Թըվում է, թե այդ պարտավորություններն ամփոփելիս պետք է ցուցաբերել հատուկ ուշադրություն, այլապես կարելի է շատերի նախաձեռնության վրա ջուր լցնել։ Բայց տրեստի մի քանի տեղամասերում (մեխանիկական արտադրամաս, գրասենյակ, Բարաբաթումի սարալանջ) սոցիալիստական մրցության արդյունքների ամփոփումը կրում էր ձևական բնույթ այն իմաստով, որ մարդը հաճախ մնում էր ստվերում։

Վերջերս տրեստի կուսկոմիտեն և տեղկոմը որոշակի աշխուժություն են մտցրել սոցիալիստական մրցության կազմակերպման, դրա արդյունքների ամփոփման բնագավառում։ Դրանում մեծ դեր խաղացին տրեստի «Աշխատանքի վաստակավոր վետերան» կոչման սահմանումն ու շնորհումը, մրցության հաղթողներին դրամական պարգևներ, պատվոգրեր, շնորհակալագրեր տալու կարգի կատարելագործումը։ Հաղթող բրիգադներին, աշխղեկություններին, վարչություններին, արտադրամասերին խրախուսելու արարողությունն այժմ կատարվում է հանդիսավոր պայմաններում, իսկ աշխատանքի վետերաններին տրվում է հատուկ դիպլոմ։

Առաջավորներին պատշաճ ձևով խրախուսելը ոչ միայն նպաստում է ամբողջ կոլեկտիվում բարոյահոգեբանական կլիմայի բարելավմանը, նրա անդամների կարգապահության ամրապնդմանը, այլև նպաստում է ամբողջ կոլեկտիվի ակտիվացմանը։ Վերցնենք, օրինակ, այսպիսի հարց. շինարարությունում մեծ դեր են խաղում վարպետներն ու բրիգադավարները, նրանք և՛ կազմակերպիչներ են, և՛ դաստիարակներ ու եղանակ են ստեղծում արտադրությունում։ Պատահական չէ, որ տրեստի կուսկոմիտեն և արհկոմը հաճախ են համընդհանուր քննարկման դնում առաջավոր բրիգադավարների ու վարպետների փորձը։ Վերջին երեք տարում ուսումնասիրվել և տարածվել է երեք բրիգադավարի և չորս վարպետի փորձ։ Նման ձեռնարկումները նպաստում են կոլեկտիվի անդամների, հատկապես երիտասարդների դաստիարակությանը։

Հակառակ դրան, գործին շատ բանով էր վնասում թերությունների, անկարգապահության նկատմամբ լիբերալ մոտեցումը։ Ասվածը հաստատելու համար բերենք այսպիսի օրինակ. որոշ մարդկանց մոտ գրեթե սովորություն էր դարձել շինարարական օբյեկտներից ամեն օր մի, թող որ աննշան, բան տանելը։

— Արժե՞ մի տախտակի համար աղմուկ սարքել,— ասում էին ոմանք։

Այժմ նման տրամադրությունները հաղթահարվում են։ Պետք է մարդուն դաստիարակել, և դա պետք է անի կոլեկտիվը։

Կոմունիստների ակտիվության բարձրացման հարցերը գործարար մթնոլորտում քննարկվեցին նաև վերջերս տեղի ունեցած արտադրամասային կուսկազմակերպությունների և տրեստի կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում։ Նորընտիր կուսկոմիտեն միջոցառումների ընդարձակ պլան մշակեց կուսակցական կյանքի այդ կարևոր բնագավառում տրեստի կոմունիստների ձեռք բերած լավագույն ավանդույթները պահպանելու և զարգացնելու համար։

«Քաջարանշին» տրեստի կոմունիստների խոսքն ու աշխատանքային պրակտիկան մեկ անգամ ևս հաստատում են, որ կուսակցական աշխատանքի հաջողության գրավականը կոմունիստների ակտիվությունն է, և որ այն ինքն իրեն չի գալիս, այլ ձեռք է բերվում համառ ջանքերի գնով։

## Ժամանակ և մարդիկ

# ՈՐՈՏԱՆԸ ԿՕԳՆԻ ՍԵՎԱՆԻՆ

ՃԱՆԱՊԱՐՀԸ ՆՐԱՍԽԻ ՀՈՎՏԻՑ թեքվեց դեպի Ուրցի լեռները, դեպի Վայոց լեռնաշխարհը։ Օրն արևոտ էր։ Արձակ դաշտերում ու ձորահովիտներում արթնանում էր հողը, և սարերից իջնող մեղմ քամին խնկարկում էր հողի բույրը։

Ուղևորները բարձր տրամադրության մեջ էին, գնում էին Ջերմուկ առողջարան բուժվելու, հանգստանալու։ Զրույցի թեման դա էր. կատակում էին, զվարճախոսում։ Իմ ուղևորության նպատակը ուրիշ է. գնում եմ Որոտան—Արփա թունելի շինարարություն։ Ակնարկ պիտի գրեմ։ Ես այս լեռնաշխարհի մասին շատ եմ գրել, ինձ այստեղ ճանաչում են, ոմանք՝ մամուլում տպագրված ակնարկներից։ Ինձ միշտ հրապուրել է Վայոց լեռնաշխարհը, բայց ես ավելի շատ գայթակղվեցի Արփա—Սևան թունելի շինարարությամբ։

... 1962 թվականին, երբ նոր էր սկսվել հսկա կառույցը, եղա Կեչուտի տեղամասում։ Ձմեռ էր՝ Վայոց լեռնաշխարհի խստաշունչ ձմեռներից մեկը։ Նոր էր ձևավորվել թունելի մուտքը, և նեղգիծ ռելսերի ծայրերը կանգ էին առել թունելի մոտ, որ հետո պետք է ձգվեին տասնյակ կիլոմետրեր։ Չնայած ծանր պայմաններին, խանդավառությունն այնքան մեծ էր, որ կարծում էին, թե մի քանի տարում կավարտվի շինարարությունը, և Արփայի ջրերը շուտով կձուլվեն Սևանին։ Սակայն մարդու և բնության անհեղ գոտեմարտը տևեց տասնութ տարի։

Իր կառուցման բարդությամբ այդ ջրատարը եզակի է Միության մեջ՝ թերևս աշխարհում։ Բացի հորիզոնական թունելախորշերից, փորվեցին չորս հորաններ, որոնցից ամենակարճը, որ գտնվում էր Կարմրաշենում, 192 մետր էր, իսկ ամենախորը՝ Մարտունու «Ազիզներ» կոչվող տեղանքինը՝ 663 մետր։ Կատակ բան չէ. բեռնված վագոնիկները բարձրացնում էին, բեռնաթափում և նորից իջեցնում թունելախորշ։ Բայց դա կատակի նման հեշտ էր թվում այն դժվարությունների հանդեպ, որոնց դեմ առան թունելագործները ութերորդ և իններորդ թունելախորշերի միջև՝ 700 մետրանոց հատվածում։ Պայթեցումից հետո, երբ պատռվեց կարծր ապառների զանգվածը, հրաբխային խարամի հետ թունելախորշը լցվեց նաև գազերով։ Երկրաբանական անասելի բարդությունները նկատելիորեն դանդաղեցրին հորատանցումը։ Գոտեմարտը պահանջում էր հատուկ զգուշավորություն, հորատանցման նոր մեթոդներ։ Ի վերջո, հաղթահարվեցին դժվարությունները։ Հզոր է սովետական մարդու կամքը։

Եվ 1980 թվականի սեպտեմբերի տասնյոթին իջեցվեց ջրարգելակը, Հայաստանի քարտեզի վրա ծնունդ առավ մի նոր լիճ՝ Կեչուտի ջրամբարը՝ 23 միլիոն խորանարդ մետր ջրատարողությամբ, 120 հեկտար մակերեսով։ Իսկ 1981 թվականի մարտի 21-ը կմնա մեր պատմության մեջ՝ իբրև հայ ժողովրդի ցնծալի օրերից մեկը։ Այդ օրը Արփան գրկախառնվեց Սևանին։ Դա Սևանի փրկության հույսն էր։ Շատերն այն կարծիքին էին, թե դրանով լուծվելու է Սևանի ջրերի մակարդակը պահպանելու պրոբլեմը։ Սակայն շատ մեծ էր Սևանի ծարավը։ Արփայի ջրերը քիչ էին այն հագեցնելու համար։

Նախնական վիճակում, այսինքն՝ մինչև Սևանգէսի կառուցումը, Սևանը պարունակում էր 58,5 միլիարդ խորանարդ մետր ջուր։ Սևանգէսի կառուցումից հետո լիճը կորցրեց 24 միլիարդ խորանարդը։ Իսկ Արփան տարեկան պետք է տա 270 միլիոն խորանարդ մետր։ Կհագեն՞ա Սևանի ծարավը, երբ ամեն տարի նրանից դուրս է գալիս 300 միլիոն խորանարդ մետր ջուր։

Պետությունը շատ էր մտահոգում այդ հարցը, և ձեռնարկվել է մի նոր հայրենանվեր գործ. նոր թունել է փորվում, որ Կեչուտի ջրամբար բերվի Որոտանը։ Արդեն սկսվել է շինարարությունը։ Եվ այդ մեծ գործի հեռանկարի հետաքրքրությունն է ինձ կրկին տանում Վայոց ձոր, Արփայի ձախափնյա այն հատվածը, ուր արդեն ձգվել են թունելախորշի նեղգիծ ռելսերը դեպի Որոտան։

Իսկ եթե Որոտանը գա, Արփա—Սևան ջրատարը կարո՞ղ է ընդունել նրան. նեղ չե՞ն լինի պատերն ու կամարի բարձրությունը... Փոքր չի՞ լինի Կեչուտի ջրամբարը, ջրապատնեշը կդիմանա՞...

Մասնագետներն, անշուշտ, մանրակրկիտ հաշվարկներ են կատարել։ 23 մետրանոց ջրապատնեշի կառուցումն ավարտելուց հետո վերին մակերեսից բազմաթիվ անցքեր են բացել, ցեմենտի շաղախ սրսկել պատնեշի գրունտային հատակից մինչև մակերես՝ պատերի առավելագույն հուսալիությունն ապահովելու համար։

Թունելի շինարարությամբ հետաքրքրվել եմ մշտապես. եղել եմ բոլոր թունելախորշերում, իջել բոլոր հորաններով և ականատես եղել, թե ինչպես է իրականացվել այդ հեքիաթային հրաշքը։

Արփա—Սևան թունելի երկարությունը 48 հազար 370 մետր է։ Տասնմեկ թունելախորշից հանվել է ավելի քան մեկ միլիոն խորանարդ մետր ապար, կատարվել է 300 հազար խորանարդ մետր բետոնային աշխատանք, ծախսվել է ավելի քան 100 հազար տոննա բարձրորակ ցեմենտ։ Ամենապարզ միավորով արտահայտված՝ մեկ գծային մետրից հանվել է 20 խորանարդ մետր ապար։ Այն հատվածները, որտեղ թույլ է եղել գրունտը, և որտեղ լեռնային մեծ ճնշում կա, երեսապատումը կատարվել է երկաթ-բետոնով, որտեղ ճնշումը փոքր է, և գրունտը հուսալի՝ միայն բետոնապատվել է։ Իններորդ թունելախորշում լեռնային ճնշումը հասնում էր 400 տոննայի՝ մեկ քառակուսի մետրի վրա։ Այդ հատվածներում երեսապատումը կատարվել է ավելի բարդ կառուցվածքով՝ երկաթ-բետոնյա բլոկներով։ Որոշ հատվածներում արտաքինից դրվել են չուգունի սալիկներ՝ ներսից 50 սմ հաստությամբ երկաթ-բետոնի շերտով։ Առաջին թունելին, որ սկսվում է Կեչուտից ձգվում է 18 կմ 650 մետր, յուրաքանչյուր կիլոմետրի վրա տրվել է 57 սմ թեքություն, իսկ երկրորդ թունելին, որ սկսվում է Եղեգիսի կիրճից՝ 85 սմ թեքություն։ Ջրի արագությունը 2—2,5 մ/վրկ է, թունելի մուտքի մակերեսը՝ 18 քմ։

Սկզբնական հաշվարկներով թունելի շինարարությանը հատկացվել էր 50 միլիոն ռուբլի։ Երկրաբանական դժվարությունները հարկադրեցին վերանայել այդ գումարը։ Արփա—Սևան թունելի շինարարության վրա ծախսվեց 125 միլիոն ռուբլի։

Ոչ միայն նախասովետական Հայաստանը, այլև արդի շատ պետություններ այդպիսի կապիտալ ներդրում չէին կարող պատկերացնել։ Հիացմունք է պատճառում հերոսական, վիթխարի այն աշխատանքը, որ կատարել են թունելագործները երկրաբանական աներևակայելի դժվարությունների պայմաններում։

Որոտան-Արփա ջրատարի կառուցումն արդեն այդքան բարդ չէ։ Թունելը պետք է ձգվի Բազարչայից մինչև Կեչուտ՝ 21 կիլոմետր։ Ջուրը թունել կմտնի Սպանդարյանի ջրամբարից։ Բայց մինչև այդ երանելի օրը որքա՞ն ջրեր պետք է հոսեն։

Այս թունելն էլ է անցնելու բարձր սարերի տակով, բայց այստեղ թեքությունն անհամեմատ մեծ է՝ յուրաքանչյուր կիլոմետրի վրա 170 սմ։ Հորատանցումը կկատարվի 16 թունելախորշերում։ Գրունտային ապարը դուրս կբերվի հինգ հորաններից, իսկ երկու հատվածում՝ կողային փորվածքով։ Հորաններից ամենացածրը 40 մետր է, ամենաբարձրը՝ 350։

Պլանավորված է այս ջրատարն ավարտել 1986 թվականին։ Այդ աշխատանքի համար նախատեսված է 62 միլիոն ռուբլի։

...Ահա և Որոտան-Արփա ջրատարի բանավանը։ Իջնում եմ ավտոբուսից և ոտքով բարձրանում դեպի բանավան։ Դիմացից մի մեքենա է գալիս։ Ինձ հավասարվելով՝ կանգ է առնում։

— Ո՞ւր եք գնում,— մտերմիկ հարցնում է վարորդը։

Չեմ զարմանում նրա հետաքրքրասիրության վրա։ Այս կողմերի մարդկանց մոտ ուժեղ է մեր ժողովրդի ավանդական հյուրասիրության զգացումը։ Անծանոթ մարդ տեսնելիս ամեն մեկն աշխատում է որևէ բանով օգտակար լինել հյուրին։ Եվ վարորդը հավանաբար ուզում է առաջարկել իր ծառայությունը։ Գուցե ես անտեղի՞ եմ գնում բանավան, ինչու՞ ավելորդ տեղը բարձրանամ։

— Գնում եմ թունելի շինարարություն...

— Արիստակեսյանն այնտեղ չէ, ես էլ էի եկել նրա մոտ իմ պետի հանձնարարությամբ։

— Ու՞ր է հապա։ «Եթե առողջարանային քաղաքում է,— մտածում եմ,— կսպասեմ, մինչև գա»։

— Չէ, գնացել է Բազարչայ։ Եվ ուշ կգա. երևի գիշերվա մեկին, երկուսին. ճանապարհը վատ է... Այդպես ասացին բանվորները։

Ինչ արած՝ մինչև ժամը 1-ը դեռ տասը ժամ կա. ես այդքան ժամանակում կարող եմ Ջերմուկ գնալ... Ու դեռ մտածում եմ անելիքիս մասին, վարորդը ժպտում է... ժպտում ծանոթ մարդու իրավունքով, մտերմաբար։

— Ի՞նչ է, շա՞տ է տեսքս ծիծաղելի,— հարցնում եմ նրան։

— Հա՛, մոտավորապես այնպես եք, ինչպես այն ժամանակ, երբ Կարմրաշենի հորանի տակ՝ թունելում հանգավ մեքենայի շարժիչը։

Նայում եմ. Արփա-Սևան ջրատարի շինարարության կուսկազմակերպության նախկին քարտուղար Վիլսոն Առաքելյանի վարորդն է՝ Գառնիկ Հարությունյանը, որի հետ շատ եմ ճամփորդել թունելի շինարարության ժամանակ։

# ՀՄՈՒՏ ՕԴԱԳՆԱՑԸ

**Վերջերս մամուլում հրապարակվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը՝ քաղաքացիական ավիացիայի մի խումբ աշխատողների սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում շնորհելու մասին: Արտադրական ակնառու նվաճումների, պլանների ու սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարման, ավիացիոն նոր տեխնիկայի յուրացման և ցուցաբերած աշխատանքային արիության համար այդ բարձր կոչմանն է արժանացել նաև քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության օդաչուաշտուրմանական բաժնի պետ, հմուտ օդագնաց Էդիկ Միսակի Բախշինյանը:**

...ԷԴԻԿ ԲԱԽՇԻՆՅԱՆԻ հետ նստել ենք մայրաքաղաքի Հր. Քոչարի փողոցը երիզող բազմահարկերից մեկի հարմարավետ բնակարանում: Պատշգամբից երկնքի կապույտ ֆոնի վրա հրաշալի մի համայնապատկեր է սփռվել հայացքիդ առջև. երկգագաթ Արարատը՝ ծածկված հավերժական ձյունով, Արարատյան դաշտը՝ կանաչ խնդությամբ:

Օդաչուի կինը՝ Իսակովի անվան № 132 միջնակարգ դպրոցի ուսուցչուհի Իրինա Մամիջոնյանը, մեզ բուրավետ թեյ է հյուրասիրում, իսկ նրանց դուստրերը՝ Երևանի մանկավարժական ինստիտուտի առաջին կուրսի ուսանողուհի Էդիտան և դպրոցական, ժպտաուսանողուհի Էդիտան և դպրոցական, ժպտադեմ Իզաբելլան, դաշնամուր են նվագում ու երգում: Ամեն ինչ այստեղ ճաշակով է կահավորված և մեզ ջերմ զրույցի է տրամադրում: Ինձ հետաքրքրում է հարուստ գրադարանը, ուր հայ գրողների, սովետական ու արտասահմանյան դասականների գրքեր են: Ասել է, թե Էդիկը և նրա ընտանիքի անդամները գիրք սիրող մարդիկ են: Իրականում այդպես էլ կա: Քանի՜-քանի գրքեր են ընթերցել նրանք: Եվ մեր զրույցի թեման էլ գրքերն են ու առօրեական խնդիրները: Հարցնում եմ.

— Ո՞րն է քո հոբբին:

Էդիկը մեղմ ժպտում է.

— Իմ հոբբին իմ ընտանիքն է, իմ երեխաները, շատ եմ կապված ընտանիքիս հետ, դուստրերս էլ՝ մի-մի աշխարհ են ինձ համար:

Զրույցը թեքում եմ մասնագիտության շուրջ:

— Օդաչուի աշխատանքը,— ասում է Էդիկը,— ինչ խոսք, շատ բարդ է, դժվար և պատասխանատու: Մեր մասնագիտությունը մասնագիտություն է առանց սխալվելու իրավունքի: Իսկ դա նշանակում է, որ ամեն մի ավիատորից պահանջվում են ոչ միայն խոր գիտելիքներ, բարձր վարպետություն, այլև մշտական զգոնություն, բարձր պատասխանատվություն հանձնարարված գործի հանդեպ: Ի դեպ, մեր բոլոր հաջողությունների





բանալին բարձր կարգապահության մեջ է, և մենք պարտավոր ենք առաջիկայում ևս աշխատել «Առանց սխալվելու իրավունքի» նշանաբանով:

...Ավելի քան քառորդ դար է, ինչ Էդիկ Բախշինյանը աշխատանքային կենսագրությունը հյուսում է քաղաքացիական ավիացիայի հայկական վարչության կոլեկտիվում: Առաջավոր և հմուտ օդագնացներից է: Այդ տարիներին նա կատարել է ավելի քան 16 հազար ժամ անվթար թռիչք՝ օդում մնալով շուրջ երկու տարի: Հայտնի բան է. օդաչուն վաստակած անուն է ձեռք բերում թռիչքային ժամերի քանակով, սակայն Բախշինյանի համար թռիչքներն ինքնանպատակ չեն եղել: Նա ոչ միայն ինքն է թռչում, այլև մշտապես սովորեցնում է իր երիտասարդ սաներին՝ վաստակելով հմուտ մանկավարժի տիտղոս, մի բան, որ նրան հնարավորություն է ընձեռում հմտորեն զուգակցել անձնակազմի ճիշտ ուսուցումն ու դաստիարակությունը: ՅԱԿ—12, ԱՆ—2, ԻԼ—18, ԱՆ—24, ՏՈՒ—134, ՏՈՒ—154... ահա այն ինքնաթիռները, որոնցով Էդիկ Բախշինյանը կտրել-անցել է երկնագույն ուղիները, վայրէջք կատարել տարբեր քաղաքներում:

...Էդիկ Բախշինյանի հետ առաջին անգամ հանդիպել եմ 1959-ի վերջերին, երբ հայկական ավիացիոն վարչությունը նոր էր սկսել տուրբոպտուտակավոր «ԻԼ—18» ինքնաթիռների շահագործումը: Այն ժամանակ ես ևս օդագնացների ընտանիքի անդամ էի: Դժվար օրեր էին: Հարկադրված էինք վարչության բոլոր աշխատողների հետ միասին անգամ շաբաթ և կիրակի օրերին դուրս գալ շաբաթօրյակի և կարգի բերել այժմյան «Զվարթնոց» օդանավակայանի վերգետնյա ինժեներական տնտեսությունը, շինարարներին օգնել՝ կառուցելու բետոնապատ նոր թռիչքուղիներ, յուրացնելու և շահագործելու ռեակտիվ բարդ շարժիչներով բոլորովին նորատիպ ինքնաթիռներ:

Այդ պատասխանատու գործում դեռ այն ժամանակ իր համեստ վաստակն ուներ էսկադրիլիայի կոմերիտական կազմակերպության քարտուղար, Երևանի քաղաքային սովետի դեպուտատ Էդիկ Բախշինյանը:

Նա ավիացիա եկավ այն սովորական ուղիով, որով շատ շատերն են գալիս: Դեռևս միջնակարգ դպրոցում Էդիկը հաճախ էր ավիացիայի մասին գրքեր կարդում, ինքնաթիռի մոդելներ պատրաստում, զբաղվում սպորտով: Չէ՞ որ օդաչուն պետք է ունենա ուժեղ կամք, հաստատուն գիտելիքներ, լինի անվախ ու համարձակ: Իսկ երբ միջնակարգի հասունության վկայական ստացավ, ընտրությունը վաղուց էր կատարված: Որոշված էր՝ օդաչու:

Էդիկ Բախշինյանը 1955-ին դարձավ քաղաքացիական օդային նավատորմի Կրասնոկուտսկի օդաչուական ուսումնարանի ունկնդիր: Երկու տարի անց նա աշխատանքի նըշանակվեց հայրենի քաղաքում՝ Երևանում: Համեստ ու խելացի Էդիկին սիրեցին ու համակրանքով շրջապատեցին Երևանի նեռկայիս «Էրեբունի» հարավային օդանավակայանի կոլեկտիվի անդամները, սիրեցին աշխատասիրության, վերին աստիճանի բարեխղճության ու համարձակության համար, օգնեցին նրան՝ լիովին տիրապետելու օդաչուի դժվարին մասնագիտությունը:

Շուտով Էդիկ Բախշինյանն սկսեց ինքնուրույն վարել «ՅԱԿ—12» չորս տեղանոց փոքրիկ ինքնաթիռը: Տեղական ավիաուղիներով փոստ կամ բեռներ էր տեղափոխում, իսկ հետո նաև՝ ուղևորներ: Անցավ որոշ ժամանակ, և նա հաջողությամբ յուրացրեց ԱՆ—2 տասներկու տեղանոց ինքնաթիռը վարելու արվեստը: Երիտասարդ օդաչուն էսկադրիլիայի իր ընկերների հետ թռիչքային առաջադրանքներ էր կատարում: Օդից օգնում բամբակենու, կոլտնտեսային այգիների մշակմանը, ուղևորներ և փոստ տեղափոխում Հայաստանի լեռնային շրջաններն ու քաղաքները: Այս բոլորի հետ միասին Էդիկն ակտիվորեն մասնակցում էր կոլեկտիվի հասարակական աշխատանքներին. նա սկզբում խմբագրում էր կոմերիտական կազմակերպության «Մարտական թերթիկը», հետևում, որպեսզի այն լույս տեսնի ժամանակին, շատ թղթակիցներ ունենա, շատ ընթերցողներ գրավի: Հետագայում գլխավորեց օդանավակայանի էսկադրիլիայի կոմերիտական կազմակերպությունը:

Սովորական, առօրյա աշխատանք, առանց հերոսապատումի: Սովորական, բայց խաղաղ աշխատանքի բերկրանքն էլ անչափ մեծ է: Մի՞թե շնորհակալ գործ չէ, ասենք, համայնական դաշտերի անխոնջ մշակներին օգնելը: Իհարկե, շնորհակալ է: Եվ ամեն անգամ օդաչուի հոգին անսահման ջերմությամբ էր լցվում, երբ կոլտնտեսականները երախտագիտությամբ սեղմում էին նրա աջը: «Ձեռքդ միշտ զորավոր լինի»,— բարեմաղթում էին նրանք:

1961-ի աշնանն էր: Խաղաղ կիրակի մի օր: Երևանի հարավային օդանավակայանում սովորականի նման վայրէջք էին կատարում կամ վեր բարձրանում մարդատար երկթևանի ինքնաթիռները, սպասման հրապարակում խռնվել էին ուղևորները, ամենուրեք աշխույժ եռուզեռ էր:

րովը, Հովհաննես Խաչատրյանը, հրահանգիչ-օդաչուներ Վալերի Ժարինովը, Աշոտ Գասպարյանը և շատ ուրիշներ, ամեն անգամ օդ բարձրանալով, երախտագիտությամբ են հիշում իրենց սիրելի ուսուցիչ Էդիկ Բախշինյանին, նրա բարի խոսքերն ու խորհուրդները:

Գործունյա, եռանդով լեցուն, հմուտ օդագնացին լավ են ճանաչում ոչ միայն հանրապետությունում, այլև մեր անծայրածիր հայրենիքի բազմաթիվ օդանավակայաններում: Ճանաչում, սիրում ու հարգում են: Որտեղ էլ, որ վայրէջք կատարի նրա վարած կամ ընտուգման նպատակով թռիչքի դուրս եկած ՏՈՒ—154 արծաթափայլ ինքնաթիռը, լինի Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Տաշքենդում, Նովոսիբիրսկում, Ալմա-Աթայում, թե Իրկուտսկում, նրան դիմավորում են որպես իր պատվավոր գործի հմուտ մասնագետի և շնորհաշատ մարդու: Եվ նա մշտապես կատարելագործում է իր մասնագիտական հըմտությունը, հարստացնում գիտելիքները: Վերջերս Էդիկ Բախշինյանը գերազանցության դիպլոմով ավարտեց Լենինգրադի քաղաքացիական ավիացիայի ակադեմիան:

Էդիկ Բախշինյանն այժմ ղեկավարում է քաղաքացիական ավիացիայի հայկական ավիացիոն վարչության օդաչուաշտուրմանական բաժինը: Որպես նախկին օդաչուի և Հայաստանի ավիացիոն վարչության պետի քաղաքական-դաստիարակչական աշխատանքի գծով՝ նախկին տեղակալի, պետք է ասեմ, որ գլխավորապես այդ բաժնի հստակ աշխատանքով են պայմանավորված օդանավերի կանոնավոր ու անվտանգ երթևեկությունը, ավիացիոն նոր ժամանակակից տեխնիկայի արագ յուրացումն ու կիրառումը: Եվ Էդիկը բանիմացորեն է ղեկավարում իրեն վստահված տեղամասի գործերը, իր ավանդը ներդնում վարչության ընդհանուր հաջողություններում:

---

Հիրավի, վերջին տարիներին նոր վերելք է ապրել հայկական ավիացիոն վարչության կոլեկտիվը: Լուծվել և լուծվում են մի շարք սոցիալ-տնտեսական կարևոր խնդիրներ: Հետըզհետե ամրապնդվում է վարչության նյութատեխնիկական բազան, թռիչքային և ինժեներատեխնիկական անձնակազմը համալըրվում է երիտասարդ բանիմաց կադրերով: Այս բոլոր հույժ կարևոր գործերում իր արժանի ավանդն ունի նաև հայ օդագնացների քաջարի հրամանատար, առաջին կարգի օդաչու Էդիկ Բախշինյանը:

Էդիկ Բախշինյանը նաև ակտիվ հասարակական աշխատող է. բազմիցս ընտրվել է քաղաքային սովետի դեպուտատ, կուսակցության Լենինյան և Շահումյանի շրջանային կոմիտեների կազմում, մեկ նստաշրջան եղել է Երևան քաղաքի Շահումյանի շրջանի № 80 ընտրական օկրուգի Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ և այլն:

Էդիկ Բախշինյանն այսօր մեծ ակնածանքով է խոսում իր ավագ աշխատանքային օդաչու ընկերների՝ Մնացական Պարակշինի, Գուրգեն Բաղդասարովի, Հարություն Պարոնյանի, Վլադիմիր Սողոմոնյանի, Մամիկոն Խանզրաթյանի, Հովհաննես Արուցյանի, Շավարշ Սարգսյանի, Արկադի Կլյուչնիկովի, Նիկիտա Ասիկյանի մասին: Նա հպարտությամբ է նշում, որ ինքը շատ հատկություններ ընդօրինակել է նրանցից: Ապրել և աշխատել: Բախշինյանի համար այդ նշանակում է այրվել աշխատանքով, իր սրտի ջերմությունն ու կորովը հաղորդել գործընկերներին, մարդկանց:

Ահա այսպիսին է հայ օդագնացների առաջին սոցիալիստական աշխատանքի հերոսը: Ու թվարկածը բնավ էլ նրա բեղմնավոր ու անձնուրաց գործունեության լրիվ ցանկը չէ...

**Զ. ՊՈՂՈՍՅԱՆ**

**Պատմության գիտությունների թեկնածու, ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ**

# ՊԱՐՏՔԻ ՈՒ ԽՂՃԻ ԹԵԼԱԴՐԱՆՔՈՎ

ՀԱՃԵԼԻ Է ԳՐԵԼ կադրային բանվոր, կոմունիստ Մարգար Կարապետի Գալֆայանի մասին, մի մարդու, որն արժանի ճանաչում է գտել սխրալից աշխատանքի ու հասարակական-քաղաքական բեղմնավոր գործունեության համար: Եվ որքան ինձ հայտնի է, մի քանի տարի առաջ նա անցել էր վաստակած հանգըստի և հայրենանվեր ծառայությունների համար ստանում է հանրապետական նըշանակություն ունեցող անհատական կենսաթոշակ: Պետք էր հանդիպել նրան, զրուցել... Սակայն աշխատանքի վետերանին գտա ոչ թե տանը, այլ վերստին հարազատ գործարանում, ուր իր գործընկերների հետ նա շարունակում էր ստեղծել նյութական արժեքներ:

Ի՞նչն էր ստիպել այդ վաստակաշատ տարեց մարդուն, որ ավելի քան կես դար անընդմեջ եղել է նյութական արտադրության ոլորտում և տարել ծանր հիվանդություն, շարունակել աշխատանքը: Գուցե նյութական ոչ բավարար ապահովվածությո՞ւնը: Ո՛չ, լինի: Ունի լավ տուն ու տեղ, աշխատում են նրա երեք որդիները, որոնցից մեկն իր ընտանիքով ապրում է ծնողների մոտ:



— Չէ՛, քանի մարդ ոտքի վրա է, իրավունք չունի թևերը ծալած նստելու,— պատասխանելով իմ հարցին, ասաց վարպետ Մարգարը,— եթե անգամ նա տարիքն առել է ու մի քիչ էլ տկար է, պետք է ուժերի ներածին չափ շարունակի աշխատել կամ հասարակական որևէ գործ անի, օգտակար լինի մարդկանց իր հարուստ կենսափորձով: Այն բանը, որ դու դեռ պետք ես հասարակությանը, քեզ ուժ ու կորով է տալիս: Վերցնենք ինձ: Երեսունյոթ տարի աշխատելով նույն արտադրական ձեռնարկությունում, հարազատացել ու հազար թելերով կապվել եմ նրա կոլեկտիվի հետ: Հեշտ բան չէր ինձ համար բաժանվել գործարանից ու ընկերներից, որոնց հետ և՛ ուրախացել, և՛ տխրել եմ... Ահա թե ինչու կենսաթոշակի անցնելուց հետո որոշեցի աշխատել բանվորական կրճատ օրով: Աշխատանքը երջանկությո՛ւն է, կյանքի, առօրյայի հետ կապվելու, պիտանիության զգացումը պահպանելու երաշխիք:

Դա ստեղծարար աշխատանքի կարևորության խոր ըմբռնումն էր, բանվոր մարդու հավատամքը: Այդպես կարող էր մըտածել ու ասել միայն նա, ով ապրել է ստեղծագործական բուռն կյանքով, ճաշակել աշխատանքի վսեմացնող հմայքը և ապրել ու գործել հասարակական պարտքի ու խղճի խոր գիտակցությամբ:

Թերթում եմ Մարգար Գալֆայանի կյանքի ու գործունեության տարեգրության էջերը: Ծանր է եղել մանկությունը, ինքնահաստատման ճանապարհին նա կրել է զրկանքներ, հաղթահարել բազում դժվարություններ: Թուրք ենիչերիների յաթաղանից փրկվելու համար արհեստավոր

Գալֆայանի ընտանիքը ևս 1915 թվականին թողնում է հայրենի Վանը և բռնում գաղթի ճամփան: Սկզբում հանգրվանում է Երևանում. տան գլխավորից զրկվելուց հետո ընտանիքը տեղափոխվում է Թիֆլիս, ապա՝ Արմավիր: Պետք էր ապրել, գոյատևել: Երեք մանուկները՝ Մարգարն ու երկու եղբայրները, կավե կուլաներով ջուր էին ծախում Երևանի փողոցներում, արևածաղկի սերմ ու ծխախոտի գլանակներ՝ Թիֆլիսում, իսկ հետո ամբողջ ընտանիքով տանը գուլպա էին գործում տնայնագործական արտելի պատվերով:

Գալֆայանների ընտանիքն աստիճանաբար ոտքի է կանգնում, եղբայրներն իրենց տեղն են գտնում կյանքում: Մարգարը 16 տարեկան էր, երբ ոտք դրեց արտադրություն: Արմավիրում աշխատում էր տրիկոտաժի արտելում, իսկ 1930 թվականին, երբ ընտանիքով վերադարձան Երևան, արհեստագործական արտելում մեխանիկ էր նա: Կառուցվում էր Քանաքեռի հիդրոէլեկտրակայանը, ուր և աշխատանքի է անցնում մեքենաների ու սարքավորումների վերանորոգման արհեստանոցում: Այստեղ Մարգարը հմտանում է հատկապես էլեկտրաշարժիչների էլեկտրալարերի փաթեթավորման մեջ: Հենց Քանաքեռգէսն էլ բախտորոշեց նրա հետագա գործունեությունը, բանվորական հիմնական մասնագիտությունը: Հետագայում, նախքան պատերազմը, նա էլեկտրիկ-մեխանիկ էր Երևանի քաղսովետի մեխանիկական արհեստանոցում: Վրա հասավ մեծ արհավիրքը: Ֆաշիստական ոոհմակների դեմ սրբազան կռվի ելավ նաև բանվոր Մարգարը՝ հանուն հոկտեմբերով փրկված իր ընտանիքի, հանուն սովետական ողջ ժողովրդի պատվի ու ազատության: 409-րդ հայկական հրաձգային դիվիզիայի կազմում զինվորը մարտական առաջին մկրտությունն ստացավ Թերեքի ափերին, ապա կռվեց Կուբանի և Ուկրաինայի տափաստաններում, պատերազմն ավարտեց Պրագայի տակ: Եթե մինչ պատերազմը Մարգար Գալֆայանը մտորում էր, թե ինքը պատրա՞ստ է արդյոք զինվորագրվելու լենինյան գաղափարներին, կոմունիստական կուսակցությանը, ապա խորապես հավատալով իր երկրի ապագային, նրա հաղթանակին, ռազմի դաշտում, 1942 թվականի ահեղ օրերին, երբ թշնամին արդեն գտնվում էր Կովկասի նախալեռներում, նա դարձավ կուսակցության նվիրված անդամը: Դա պարտավորեցնում էր մարտիկ-կոմունիստին միշտ լինել առաջին գծում, մարտնչել քաջաբար: Պատերազմը դաժան փորձություն էր, փայփայած դավանանքի ու ոգու անսասան քննություն. վարպետ Մարգարը պատվով դուրս եկավ այդ քննությունից:

Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից հետո զինվորը տուն վերադարձավ, կոփված ու առնականացած դաժան մարտերում, իմաստնացած: Նա աշխատանքի անցավ Երևանի գյուղատնտեսական գործիքների գործարանում, որի բազայի վրա մի քանի տարի անց կազմավորվեց ներկայիս էլեկտրատեխնիկական ժամանակակից գործարանը: Այն ժամանակ ձեռնարկությունը թողարկում էր գութաններ, բահեր, քլունգներ, խորքային պոմպեր, ամանեղեն, այն ամենը, ինչ անհրաժեշտ էր գյուղին ու բնակչությանը: Սկսել էր միկրոգէսերի արտադրությունը, որը շուտով դարձավ գործարանի հիմնական արտադրատեսակը:

Միկրոգէսերի արտադրության տեղամասում Մարգարը էլեկտրիկ էր, էլեկտրական լարեր փաթաթող վարպետ: Միկրոգէսի հիմնական հանգույցը՝ գեներատորը, գործարանն ստանում էր Տամբովից: Սակայն միշտ չէր, որ ձեռնարկությունը ժամանակին ու պահանջված քանակությամբ էր գեներատորներ ստանում, որի պատճառով լինում էին պարապուրդներ: Միտք հղացավ այն պատրաստել տեղում: Բայց ինչպե՞ս: Չկային տեխնիկական փաստաթղթեր, տեխնոլոգիական անհրաժեշտ սարքավորումներ, մասնագիտական կադրեր...

Պետք էր գործել: Գեներատորի (այն էլ նոր տիպի) իր նախագիծն առաջարկեց Մոսկվայի էլեկտրատեխնիկական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակից, ինժեներ-էլեկտրիկ Ս. Տամանցևը: Տեղում պատրաստվեցին որոշ սարքեր: Գործարանը ձեռնամուխ եղավ սեփական ուժերով առաջին գեներատորի ստեղծմանը, որի անմիջական մասնակիցները դարձան ձեռնարկության այն ժամանակվա դիրեկտոր Լ. Հովհաննիսյանը, գլխավոր էներգետիկ Ս. Խազոյանը և տեղական արդյունաբերության մինիստրության գլխավոր էներգետիկ Ա. Ռեգենտովը: Բայց գեներատորի պատրաստման հիմնական ծանրությունն ընկած էր արդեն ճանաչում գտած վարպետ Մարգար Գալֆայանի վրա, որն ուներ ո՛չ միայն ոսկե ձեռքեր, այլև բնատուր պրպտող միտք: Ամիսներ շարունակ, զօր ու գիշեր քրտնաջան ու



հոգեմաշ աշխատանք, հարկ եղավ արտադրական պրոցեսում առանձին շտկումներ, նորամուծություններ կատարել նախագծում:

Եվ մեկ տարի անց՝ 1948 թվականին, պատրաստ էր մեքենայի առաջին նմուշը: Սկսվեց գեներատորների սերիական թողարկումը. դրանով իսկ փաստորեն հիմք դրվեց հանրապետությունում էլեկտրաշարժիչների արտադրությանը: Բայց դա միայն գործի սկիզբն էր: Շուտով պարզվեց, որ մեքենան ունի որոշ անսարքություններ, խոցելի տեղեր: Կրկին լարված աշխատանք, նորանոր պրպտումներ... Կատարելագործվեցին մեքենայի առանձին հանգույցներ, որին ակտիվ մասնակցեց վարպետ Մարգարը:

Էլեկտրատեխնիկական գործարանում նոր՝ ՍԳ—25 տիպի մեխանիկական ուղղիչով եռաֆազ սինխրոն գեներատորի ստեղծման ու արդյունաբերական յուրացման համար 1951 թվականին վերոհիշյալ մասնագետների հետ մեկտեղ Մարգար Գալֆայանը ևս արժանացավ ՍՍՀՄ պետական մրցանակի և դափնեկրի կոչման:

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանը բուռն վերելք էր ապրում, ներդրվում էին ժամանակակից տեխնիկա ու առաջնակարգ տեխնոլոգիա, թողարկվում նոր տիպի ու նշանակության էլեկտրաշարժիչներ: Արտադրության ընդլայնման ու գիտատեխնիկական առաջընթացին համընթաց ակնբախ էին տեղաշարժերը կադրային բանվորների հանրակրթական գիտելիքների ու մասնագիտությունների խորացման, տեխնիկական որակավորման ոլորտում: Այստեղ ստեղծվել էր մի հրաշալի աշխատավորական կոլեկտիվ՝ տեխնիկապես հասուն ու փորձառու բանվորական կադրեր, բարձրորակ ինժեներատեխնիկական անձնակազմ: Ահա թե ինչու էլեկտրատեխնիկական գործարանը 1969 թվականից դարձավ նոր կազմավորված «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորման գլխամասային ձեռնարկությունը:

Ահա այդ կոլեկտիվի անդամը եղել և մնում է նորարար բանվոր վարպետ Մարգարը. նա իր արժանի լուման է ներդրել ձեռնարկության հաստումներում: Նա իր գործի վարպետն է բառիս բուն իմաստով. չի ավարտել ո՛չ տեխնիկում, ո՛չ ինստիտուտ, կրթության պակասը լրացրել է ինքնուրույն: Եվ դարձել է տեխնիկապես գրագետ ու արտադրության համակողմանի գիտակ, իր գործի բարձրորակ մասնագետ:

Էլեկտրաշարժիչի սիրտը ստատորն է, որի վրա փաթաթում են տարբեր տրամաչափերի էլեկտրալարեր: Դա պատասխանատու պրոցես է: Այն սկսվում է փաթույթների պատրաստումից և ավարտվում դրանց տեղադրմամբ: Պահանջվում են ո՛չ միայն ուշիմություն ու բարեխղճություն, այլ, որ կարևորն է՝ մեծ հմտություն, վարպետություն: Մոտ տասնհինգ տարի նա ղեկավարել է փաթեթավորողների բրիգադան, որի նշանաբանն է եղել՝ տալ միայն բարձրորակ փաթույթ: Այդ ընպատակով վարպետն իր սաներին հաղորդակից է դարձնում իր աշխատանքային փորձին, գիտելիքներին, բացատրում խոտանի առաջացման պատճառները, օգնում դրանց վերացմանը:

Մարգարը նորի, առաջավորի մարտիկ է, նորարար: Նրա պրպտող, անհանգիստ միտքն ուղղված է եղել արտադրության և արտադրանքի տեխնիկական կատարելագործմանը: Անցած տարիներին ընդունվել և արտադրության մեջ ներդրվել են նրա մի քանի տասնյակ ռացիոնալիզատորական առաջարկություններ, մտահղացումներ, որոնք ձեռնարկությանը տվել են հարյուր հազարավոր ռուբլիների տնտեսական օգուտ: Բացի այդ, վաստակավոր ռացիոնալիզատորն ունի նաև հեղինակային վկայականներ: Նա քայլել է սոցիալիստական մրցության ավանգարդում, եղել ստախանովական, առաջիններից մեկը, որ արձագանքել է կոմունիստական աշխատանքի շարժմանը, համակել իր սաներին աշխատասիրությամբ, բարեխղճությամբ, հորդորել ապրել ու գործել պարտքի ու խղճի թելադրանքով:

Մարտական պարգևներին ավելացան նորերը: Անձնվեր աշխատանքի համար նա պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով, մեդալներով, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրով, բազմաթիվ այլ պատվոգրերով ու շնորհակալագրերով: Բայց մեր ասածը Մարգար Գալֆայանի մասին թերի կլիներ, եթե չասեինք, որ նա եղել է հասարակական-քաղաքական ակտիվ գործիչ, եղել ու մնում է սկզբունքային ու անաչառ կոմունիստ: Նախանձելի եռանդի տեր մարդը ժամանակ է գտնում մասնակցելու ձեռնարկության կուսակցական-հասարակական կյանքին, միշտ պատասխանատվության զգացումով է կատարել

հանձնարարված գործը: Բավական է նըշել, որ երկար տարիներ, տասնհինգ տարի շարունակ նա ընտրվել է գործարանի կուսբյուրոյի անդամ և արտադրամասի կուսկազմակերպության քարտուղար, մի քանի անգամ՝ Երևանի կուսքաղկոմի ու շրջկոմի անդամ: Մոտ տասը տարի անընդմեջ եղել է ձեռնարկության արհմիութենական կոմիտեի կազմում, գլխավորել վերջինիս մի քանի հանձնաժողովներ, ակտիվ մասնակցել ժողովրդական դրուժինայի ու ռացիոնալիզատորական խորհրդի աշխատանքներին: Ավելին, ութ անգամ (1953—1971 թթ.) ընտրվել է Երևանի քաղսովետի դեպուտատ, ապա և գործկոմի անդամ: Ժողովրդի պատվիրակը պատվով ու արժանապատվությամբ է կատարել իր ընտրողների պատվիրանները, արդարացրել նրանց վստահությունը:

Վարպետ Մարգարին իրավամբ համարում են երիտասարդների բարեկամն ու խորհրդատուն, նրանց վարպետ-դաստիարակը: «Գալֆայանի դպրոցով» անցել են բազմաթիվ երիտասարդներ, որոնցից շատերը դարձել են բարձրորակ բանվորներ, արտադրության հրամանատարներ, ինժեներներ: Այդ դպրոցի քուրայով են անցել նաև վարպետի երեք որդիները՝ Հենրիկը, Միհրդատը և Աշոտը. հոր ձեռքի տակ հմտացել են նրանք բանվորական մասնագիտության մեջ, հետագայում նըրանցից երկուսը սովորել ու ավարտել են պոլիտեխնիկական ինստիտուտը, դարձել ինժեներներ, իսկ երրորդը, ավարտելով տեխնիկումը, որպես տեխնիկ-վարպետ շարունակում է հոր մասնագիտությունը արտադրամիավորման գիտահետազոտական ինստիտուտի մասնաճյուղում:

Մեծ է անձնական օրինակի ուժը: Ինքը, լինելով վերին աստիճանի բարեխիղճ ու կարգապահ մարդ, օժտված կուսակցական համոզվածությամբ ու բարոյական վեհ հատկանիշներով, չէր կարող բարերար ներգործություն չունենալ շրջապատի և, ամենից առաջ, երիտասարդների վրա, որոնք հարստանալով ավագների կենսափորձով, զարգացնում ու կատարելագործում են այն:

Այսպիսին է եղել ու մնում է բազմավաստակ Մարգար Գալֆայանը: Ճիշտ է, նա այսօր չորս ժամ է աշխատում, բայց անհրաժեշտության դեպքում հարկ եղածին չափ մնում է գործարանում, օգնում մարդկանց խորհրդով, գործով, աշխատում է երիտասարդական ավյունով, մասնակցում կոլեկտիվի հասարակական կյանքին:

Վետերանը միշտ շարքում է:

**Վ. ՍԱՐԳՍՅԱՆ**



# ԱՆՄՈՌԱՑ Է ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՍԽՐԱՆՔԸ

«ՀԱՅԱՍՏԱՆ» հրատարակչությունը ընթերցողին է հանձնել **Պատերազմի օրերի կուսկազմակերպիչները** գիրքը: Այն թարգմանված է ռուսերենից և գրեթե գեղարվեստորեն արտացոլում է Հայրենական պատերազմի տարիներին մարտադաշտում զորամասերի ու ստորաբաժանումների կուսակցական կազմակերպիչների ծավալած քաղաքական-մասսայական արգասավոր աշխատանքը և նրանց դրսևորած անձնական սխրագործությունները:

Մեծ հայրենականի առաջին իսկ օրվանից կոմունիստական կուսակցությունը սովետական ժողովրդին կենաց ու մահու կռվի հանեց մեր երկիրը ներխուժած ֆաշիստական հորդաների դեմ: Կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ուղեցույց ունենալով երկրի պաշտպանության վերաբերյալ Վ. Ի. Լենինի ցուցումները, կազմակերպչական ու քաղաքական վիթխարի աշխատանք ծավալեց սովետական ժողովուրդների մարտական սերտ համագործակցությունն ապահովելու համար: Գործող բանակում կուսակցական-քաղաքական աշխատանքի ներգործունությունն ուժեղացնելու նպատակով պատերազմի առաջին վեց ամսվա ընթացքում ՍՍՀՄ զինված ուժերն ուղարկվեցին ավելի քան 100 հազար կոմունիստներ: Նրանք կռվի դաշտում անձնական քաջագործության օրինակ էին ցույց տալիս, համախըմբում ու սխրանքների ոգեշնչում ռազմիկներին:

Կուսակցության աչքթայինները էին գնդերի, գումարտակների, վաշտերի կուսկազմակերպիչները: Նրանք՝ Լենինի ամենահաղթ դրոշին, սոցիալիստական հայրենիքին անհունորեն նվիրված այդ կոմունիստները, սերտորեն կապված էին մարտիկների հետ, ամենակարճ դադարի պահին էլ հանգիստ չունեին, անցնում էին ջոկից ջոկ, զրուցում զինվորների հետ, կոչում մարտական սխրանքների:

...Սա էր մղվել հակառակորդի հերթական գրոհը,— նշված է գրքում,— ավերված տան նկուղում հավաքվել են մարտիկները: Նրանք նույնիսկ ուժ չունեն ծխախոտ փաթաթելու: Միայն կուսկազմակերպիչն է, որ փամփուշտի արկղի վրա կռացած՝ ինչ-որ բան է գրում: Եվ շուտով նրա պատրաստած «Մարտական թերթիկը» ձեռքից ձեռք է անցնում... հոգնածությունը աստիճանաբար վերանում է: Մարդիկ սկսում են կատակներ անել, զրուցել անցյալի ու ներկայի մասին:

Գրքում տպավորիչ է կերտված Սովետական Միության հերոս Գեորգի Դանիլովիչ Բուդաևի դյուցազնական կերպարը: Մինչև պատերազմը նա Հյուսիսային Օսեթիայում, հայրենի Կոստա-Խետագուրովո գյուղում ուսուցիչ էր: Մեծ հայրենականի առաջին օրերին Գ. Բուդաևը մեկնեց բանակ, կարճ ժամանակ անց նշանակվեց հրաձգային գումարտակի կուսակցական կազմակերպիչ: Համառ պաշտպանական մարտերից հետո զորամասն անցավ հարձակման՝ թշնամուն հետապնդելով մինչև Դնեպրի ափերը:

Դնեպրի աջ ափին մարտական դեպքերն այնպես են ընթանում, որ հակառակորդի գումարտակի դեմ գրոհը գլխավորում է կուսկազմակերպիչ Գ. Բուդաևը և ետ մղում ֆաշիստներին: Հիտլերականները մեծ ուժեր են նետում գումարտակի դեմ, փորձում նրան խեղդել Դնեպրում: Բայց դա նրանց չի հաջողվում: 1943 թվականի նոյեմբերի 4-ի լույս 5-ի գիշերը Գ. Բուդաևը գումարտակը գրոհի է տանում թշնամու վրա և ոչնչացնում բազմաթիվ ֆաշիստների: Դյուցազնի մահով զոհվում է նաև ինքը...

Նիկոլաև քաղաքի ազատագրման համար մղված ճակատամարտի նախօրյակին հրավիրվում է ծովային հետևակի առանձին գումարտակի կուսակցական ժողով: Ելույթ է ունենում գումարտակի կուսկազմակերպիչ Ալեքսեյ Գոլովլյովը: Նա իր միտքն ավարտում է հետևյալ խոսքերով.

— Վիթխարի ու միասնական է մեր հայրենիքը, անհաղթ՝ նրա ժողովուրդների հզոր ընտանիքը: Թեկուզ տարբեր են մեր մարտիկների տարիքները, տարբեր են մայրենի լեզուները, սովորույթները, խառնվածքները,

միևնույն է, մենք անբաժան ենք: Ընդհանուր է մեր սերը հարազատ երկրի ու կուսակցության նկատմամբ, ընդհանուր է ատելությունը արյունարբու ֆաշիզմի նկատմամբ...

Ցեղի ունեցած երկօրյա արյունալի կռվում քաջարի դեսանտայինները ոչնչացրին 800 հիտլերականների, մեծ վնաս պատճառեցին հակառակորդի մարտական տեխնիկային, դրանով իսկ ակտիվորեն մասնակցեցին քաղաքի ազատագրմանը:

Կոմունիստ Միհրան Բոստանջյանը հայրենիքի վրա կախված վտանգի առաջին իսկ օրերին համալրում է Կարմիր բանակի շարքերը, զենքը ձեռքին մարտնչում օտար նվաճողների դեմ, ցույց տալիս արիության ու խիզախության լավագույն օրինակ, դրանով իսկ ստորաբաժանումում վայելում մեծ հեղինակություն: Սկզբում Մ. Բոստանջյանը նշանակվում է վաշտի կուսկազմակերպիչ, ապա 333-րդ կարմրադրոշ Սինելնիկովյան հրաձգային դիվիզիայի 1118-րդ հրաձգային գնդի առաջին գումարտակի կուսկազմակերպիչ:

Դնեպրի գրոհանցման ժամանակ Բոստանջյանի գլխավորությամբ ռազմիկները հենց նավակներից սկսեցին կրակ տեղալ գետի մյուս ափին դիրքեր գրաված ֆաշիստների վրա: Իսկ երբ իջան նավակներից, նա, ուռա՜ գոչելով, ավտոմատի կրակահերթերով սլացավ դեպի թշնամու դիրքերը: Մարտիկները հետևեցին կուսկազմակերպչի օրինակին: Հաղթահարելով թշնամու գետափի պաշտպանության առաջին գոտին՝ արիասիրտ ռազմիկները գրոհը շարունակեցին հակառակորդի մարտակարգերի խորքը: Կատաղած հիտլերականները, լարելով վերջին ճիգերը, դիմեցին հակագրոհի: Կուսկազմակերպչի գլխավորությամբ ձախ թևում մարտնչող ռազմիկները ետ մղեցին ֆաշիստների երեք հակագրոհները՝ զգալի կորուստներ պատճառելով նրանց: Բոստանջյանն անձամբ ոչնչացրեց ութ ֆաշիստ, այնուհետև, սրընթաց առաջ նետվելով՝ նռնակներով ոչընչացրեց թշնամու երկու հաստոցավոր գնդացիր, մեկ զրահապատ ավտոմեքենա...

Դնեպրի գրոհանցման ժամանակ ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում դրսևորած արիության ու քաջության համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թվականի փետրվարի 22-ի հրամանագրով Միհրան Միհրանի Բոստանջյանին շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Սովետական մարդկանց գաղափարական ամուր կոփվածքի, հայրենիքի նկատմամբ անսահման սիրո արտահայտության լավագույն վկայություններ են գրքում մեջբերված մեր ժամանակի նշանավոր գրող Մ Շոլոխովի խոսքերը: ...Թշնամու դեմ մղված դաժան ու արյունահեղ մարտերում կուսակցության կողմից դաստիարակված և կոփված սովետական մարդիկ գործնականում հաստատեցին 1919 թվականին Լենինի ասած մարգարեական խոսքերն այն մասին, որ երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որը մարտնչում է իր սովետական իշխանության համար, պաշտպանում վիթխարի զոհաբերություններով ձեռք բերած իր ազատությունը, իր զավակների երջանիկ ապագան...

Մեծ հայրենականի հրաբորբ օրերի գործող բանակի կուսկազմակերպիչների սխրանքներին նվիրված այս գիրքը արժեքավոր ներդրում է աշխատավորների, հատկապես երիտասարդության գաղափարական, ռազմահայրենասիրական դաստիարակության գործում:

**Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
**Պաշտոնաթող փոխգնդապետ,**
**ՀՍՍՀ վաստակավոր ժուռնալիստ**

# 1983 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## ԿԱՐԼ ՄԱՐՔՍԻ ԾՆՆԴՅԱՆ 165—ԱՄՅԱԿԻ ԵՎ ՄԱՀՎԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ







## ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ



## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 18.11.83 թ.։ Ստորագրված է տպագրության 9.12.83 թ.։ ՎՖ 06130։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 15432։ Պատվեր՝ 3010։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2։*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.